ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

5

ՄԱՅԻՍ

ԵՐԵՎԱՆ 1963

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ— «Լենինը և պարտիան»: *Պետքաղհրատ, Մ. 256 էջ։*

*Ժողովածուն բացվում է «Մի էջ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի պատմությունից» հոդվածով։ Այդ, ըստ էության Լենինի առաջին կենսագրությունն է և միակ աշխատությունը նրա կյանքի ու գործունեության մասին՝ իր կողմից իսկ վերանայված, խմբագրված ու լրացված։*

*Գիրքը բաղկացած է 4 թեմատիկ բաժիններից— «Լենինի կերպարը», «Լենինը կոմունիստական պարտիայի ստեղծող և առաջնորդ», «Լենինը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության ղեկավար ու կազմակերպիչ», «Լենինը պարտիական պրոպագանդայի, ագիտացիայի և մամուլի մասին»։*

ՄԻՐՈՍԼԱՎ ԻՎԱՆՈՎ— «Լենինը Պրագայում»: *Պետքաղհրատ, Մ. 168 էջ։*

*Չեխ երիտասարդ գրականագետի գիրքը հետաքրքրական է ո՛չ միայն իր թեմայով, բովանդակությամբ, այլև ձևով։ Այն մի ինքնատիպ ռեպորտաժ է, ուր անցյալը ձուլվում է առօրյային, պատմական ճշմարտացի փաստերը զուգորդվում են հեղինակի կանխագուշակություններով։*

*Հեղինակին հաջողվել է շատ նոր նյութեր գտնել 1900—1901 թվականներին և 1912 թվականին ՌՍԴԲՊ Պրագայի կոնֆերանսի օրերին Վ. Ի. Լենինի՝ Չեխոսլովակիայի մայրաքաղաքում գտնվելու վերաբերյալ։*

*Գիրքը գրված է մեծ տաղանդով ու ներշնչանքով։*

ՅՈՒԶԵՖ ՍԵՐԱԴՍԿԻ — «Լենինի լեհական տարիները»: *Պետքաղհրատ, Մ. 64 էջ։*

*Պրոֆեսոր Յու. Սերադսկու գիրքը նվիրված է Վ. Ի. Լենինի լեհական էմիգրացիայի տարիների (1912—1914, Կրակովում և Պորոնինոյում) կյանքին և գործունեությանը։*

*Այնտեղ կան մի շարք նոր, մինչև այժմ սովետական ընթերցողին անհայտ փաստաթղթեր ու փաստեր Լենինի՝ Լեհաստանում գտնվելու վերաբերյալ, որոնք կենտրոնացված են Լեհական Միացյալ բանվորական պարտիայի կենտրոնական կոմիտեին կից պարտիայի պատմության ինստիտուտի արխիվում։*

«Հռետորական արվեստի մասին». *Երրորդ հրատ. ուղղված և լրացված։ Պետքաղհրատ, Մ. 352 էջ։*

*Ժողովածուն պարունակում է քաղաքական նշանավոր գործիչների, գիտնականների և գրողների արժեքավոր ասույթները հռետորական արվեստի մասին։ Այնտեղ զետեղված են գլխավորապես հատվածներ ռուսական և սովետական հեղինակների աշխատություններից։ Հետաքրքրական է «Անտիկ գրողները հռետորի արվեստի մասին» բաժինը։ «Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը հռետորների մասին» բաժինը ընթերցողին ծանոթացնում է հռետորական վարպետության մասին Մարքսի և Էնգելսի արտահայտած մտքերին, ցույց է տալիս, թե անցյալ դարեկեսին ինչպիսին էր հռետորական արվեստը Արևմտյան Եվրոպայում։*

*Ժողովածուն կօգնի պրոպագանդիստներին ու ագիտատորներին՝ գտնելու իրենց հուզող շատ հարցերի պատասխանը, քննադատաբար գնահատելու իրենց գործունեությունը, ձեռք բերելու հռետորական վարպետություն։*

«Աշխատանքի ռոմանտիկան». *Պետքաղհրատ, Մ. 263 էջ։*

*Տոլստոյն ու Նեկրասովը, Չեխովն ու Գորկին, Մակարենկոն ու Օստրովսկին մեզ թողել են շատ հուզիչ էջեր աշխատավոր ժողովրդի՝ մեծագույն ստեղծագործողի մասին։*

*Այս ժողովածուում զետեղված են հատվածներ ռուսական և սովետական գրողների ու պոետների գեղարվեստական ստեղծագործություններից, որոնցում գովերգվում են աշխատանքի գեղեցկությունն ու ռոմանտիկան։*

*Գիրքը հետաքրքրությամբ կկարդա սովետական մասսայական ընթերցողը։ Այստեղ իրենց համար հարուստ նյութ կգտնեն նաև պրոպագանդիստները, ագիտատորները, դասախոսները, կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողները։*



ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 5
ՄԱՅԻՍ
1963 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱՅՆՈՒԹՅՈՒՆ

Ժամանակակից մարդկության վրա կոմունիստական գաղափարախոսության ունեցած հսկայական ազդեցությունը համաշխարհային նշանակություն ունեցող փաստ է: Անգամ բուրժուական պատմաբանները և սոցիոլոգները հարկադրված են խոստովանել, որ պատմությանը դեռևս հայտնի չէ ոչ մի այնպիսի ուսմունք, որն այնքան արագ ու լայնորեն տարածվեր աշխարհով մեկ, որքան մարքսիզմը: Հիրավի, արդի աշխարհում չկա ոչ մի այլ հասարակական տեսություն, որը մարդկանց մտքերի վրա այնքան մեծ ներգործություն ունենար, որքան ունենում է մարքսիզմ-լենինիզմը:

Կոմունիստական ուսմունքի հեղինակության և ձգողական ուժի աճման պատճառը հենց նրա էության մեջ է: Կոմունիզմը բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների ուսմունքն է: Նրա նպատակն է՝ հետևողականորեն պաշտպանել լայն մասսաների, աշխատանքի մարդկանց շահերը: Պատմության մեջ առաջներում էլ եղել են ուսմունքներ, որոնք հավակնել են պաշտպանել ժողովրդի շահերը, սակայն նրանք չեն դիմացել ժամանակի փորձությանը, որովհետև դրանք սխալ տեսություններ էին: Կոմունիստական գաղափարախոսության ուժն այն է, որ նա հիմնըված է հասարակական կարգացման պրոցեսների խիստ գիտական վերլուծության վրա: Բնութագրելով մարքսիզմը, Վ. Ի. Լենինը գրել է. «Մարքսի ուսմունքը ամենակոր է, որովհետև նա ճիշտ է: Նա լիակատար է և կուռ, մարդկանց տալով ամբողջական մի աշխարհայացք, որն անհաշտ է ամեն տեսակ սնահավատության, ամեն տեսակ ռեակցիայի, բուրժուական ճնշման ամեն տեսակ պաշտպանության հետ»: Կոմունիստական գաղափարախոսությունը ուսմունք է աշխատավորներին շահագործումից ու աղքատությունից ազատագրելու մասին, այնպիսի հասարակարգ կառուցելու մասին, որտեղ կստեղծվեն մարդուն արժանի կենսապայմաններ:

Աշխատանքի, Խաղաղության, Ազատության, Հավասարության, Եղբայրության
հաղթանակի վերաբերյալ մարդկության դարավոր երազը, Երջանկության երազը
մարմնավորվել է հասարակական կյանքի վերափոխման այն ռևոլյուցիոն գիտու-
թյան մեջ, որը ցույց է տալիս այդ իդեալների ռեալ, իրականանալի լինելը: Մարք-
սիզմը ռևոլյուցիոն տեսությունը միացրել է ռևոլյուցիոն պրակտիկայի հետ, գիտա-
կան գաղափարախոսությունը՝ կապիտալի ճնշման դեմ բանվոր դասակարգի և բո-
լոր աշխատավորների պայքարի հետ: «Ինչպես որ փիլիսոփայությունը պրոլետա-
րիատի մեջ գտնում է իր *նյութական* զենքը,— գրել է Մարքսը,— այնպես էլ պրո-
լետարիատը փիլիսոփայության մեջ գտնում է իր *հոգևոր* զենքը...»: Դրանում է
այն վիթխարի, հիրավի անհաղթահարելի ուժը, որը պրոլետարների մասսաներին
գրոհի հանեց կապիտալիզմի դեմ, այն ուժը, որն ուղղություն է տալիս միլիոնների
շարժմանը, սխրանքների է կոչում մարդկանց, օգնում է նրանց անելու այն բանը,

ինչը որ բուրժուական աշխարհի ներկայացուցիչների համար կարմանահրաշ ու անհավատալի է թվում:

Ոգևորված գիտական կոմունիզմի վսեմ գաղափարներով, սովետական երկրի բանվորներն ու գյուղացիները կատարեցին ամենախոր ռևոլյուցիոն վերափոխություններ, որոնք մեր հայրենիքը պատմական մի դարաշրջանից տեղափոխեցին մի այլ դարաշրջան, կապիտալիզմից սոցիալիզմ: Սովետական մարդիկ պատմության ժամացույցի սլաքը հարյուր տարի առաջ տարան և օրինակ ցույց տվեցին ամբողջ աշխարհի աշխատավորներին: Նրանց ուղիով, ղեկավարվելով կոմունիստական ուսմունքով, ընթացան շատ երկրների ժողովուրդներ: Այժմ, գիտական կոմունիզմի դրոշի ներքո կապիտալիզմի աշխարհում միլիոնավոր աշխատավորներ պայքարում են շահագործողների դեմ:

Երկու համաշխարհային սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի պայքարում կարևոր դեր է խաղում գաղափարախոսությունը: Սոցիալիզմի և կապիտալիզմի միջև պայքարը մղվում է հասարակական կյանքի բոլոր բնագավառներում՝ տնտեսական, քաղաքական, գաղափարական: Ընդ որում այդ պայքարի բնույթը տարբեր ոլորտներում ունի իր յուրահատկությունը: Տնտեսական հարաբերություններում, որտեղ երկու սիստեմների պայքարն ընդունել է տնտեսական մրցության ձև, հնարավոր է բազմապան ձևերով գործարար համագործակցություն փոխադարձ շահավետության հիման վրա: Համաձայնեցումները հնարավոր են նաև արտաքին քաղաքականության բնագավառում, որովհետև ոչ մի միջպետական պայմանագիր հնարավոր չէ կնքել առանց հաշվի առնելու մյուս կողմի տեսակետներն ու շահերը: Հասկանալի է, որ այդ համաձայնությունները չեն կարող շոշափել սոցիալիստական կարգերի հիմունքները, պետությունների սուվերենությունը, բայց այդ դեպքում էլ պահպանվում են վիճելի հարցերի խաղաղ լուծման, կապիտալիստական և սոցիալիստական երկրների գործարար, փոխադարձաբար շահավետ համագործակցության կարգացման լայն հնարավորություններ:

Այլ բան է գաղափարախոսության բնագավառը, որը *տեսականորեն հիմնավորում է հասարակարգի հիմնական տնտեսական ու քաղաքական սկզբունքները:* Կոմունիստական և բուրժուական գաղափարախոսության միջև ոչ մի համաձայնություն հնարավոր չէ, աներևակայելի է ամեն մի կոմպրոմիս: Գաղափարախոսության բնագավառում չկա և չի կարող լինել ոչ մի խաղաղ գոյակցություն:

Քննադատելով ռուսական օպորտունիստներին, Վ. Ի. Լենինը գրել է. «...հարցը դրվում է *միայն այսպես*՝ բուրժուակա՞ն, թե սոցիալիստական գաղափարախոսություն: Այստեղ միջինը չկա (որովհետև մարդկությունը ոչ մի «երրորդ» գաղափարախոսություն չի ստեղծել, բացի դրանից, դասակարգային հակասություններից ծվատվող հասարակության մեջ առհասարակ երբեք էլ չի կարող լինել արտադասակարգային կամ վերդասակարգային գաղափարախոսություն): Ուստի սոցիալիստական գաղափարախոսության *ամեն մի նսեմացում, ամեն մի հեռացում* նրանից՝ ինքնին նշանակում է բուրժուական գաղափարախոսության ուժեղացում»: Ահա թե ինչու կոմունիստներն անհաշտ են գաղափարախոսության հարցերում, ահա թե ինչու անհեթեթ ու անհիմն է այն միտքը, թե հնարավոր է սոցիալիստական ու բուրժուական գաղափարախոսության խաղաղ գոյակցությունը:

Արդի գաղափարական պայքարի կենտրոնում կանգնած է հասարակական-քաղաքական կարգի գերապանցության հարցը, թե ո՞ր կարգը՝ սոցիալիզմը, թե՞ կապիտալիզմն է լավագույն կենսապայմաններ ապահովում աշխատավորության համար, հանդիսանում առաջադիմության գլխավոր ուղի:



Բուրժուական պրոպագանդան երկար ժամանակ խոսում էր սովետական երկրի «անխուսափելի ետ մնալու» մասին, ձգտում էր սոցիալիզմը ներկայացնել որպես այնպիսի մի կարգ, որը հեռու է կանգնած ժամանակակից տեխնիկական և կուլտուրական կարգացումից: Սովետական արբանյակները և տիեզերանավերը ստիպեցին ամենամոլի սկեպտիկներին ընդունել ճշմարտությունը: «Տիեզերական հրաշքներից» հետո նրանք հարկադրված եղան սրտի կսկիծով ընդունել ՍՍՌՄ և սոցիալիստական մյուս երկրների էկոնոմիկայում, գիտության, կուլտուրայի ասպարեզում տեղի ունեցած նաև այլ բազմաթիվ «հրաշքներ»: Սովետական Միության տնտեսական և կուլտուրական «հետամնացության» վերաբերյալ առասպելը հօդս ցնդեց պղպջակի պես:

Այժմ իմպերիալիստական պրոպագանդան շարունակում է ի չարը գործադրել անհատի պաշտամունքի ժամանակվա խեղաթյուրումները, սոցիալիստական հասարակարգի վերելքի դժվարությունները, մեր կյանքում եղած առանձին թերությունները, որոնց մասին բացեիբաց ասում է կոմունիստական պարտիան և որոնց դեմ պայքարելու համար նա մոբիլիզացնում է աշխատավորությանը: Հակասովետական պրոպագանդայում նկատվում է շեշտը տնտեսական պրոբլեմներից այսպես կոչված հոգևոր արժեքների վրա տեղափոխելու տենդենց: Սոցիալիստական երկրների տնտեսական անվիճելի նվաճումների հանդեպ իմպերիալիստական մամուլը, ռադիոն այժմ ճգնում են «ապացուցել ազատ աշխարհի» առավելությունները դեմոկրատիայի, անհատի ազատության, ստեղծագործության ազատության հարցերում:

Բուրժուական պրոպագանդիստները չեն նկատում, թե ինչպիսի ծիծաղելի վիճակի մեջ են ընկնում իրենք, դիմելով այդ նոր մանևրներին: Չէ՞ որ յուրաքանչյուր ողջամիտ մարդ իրավամբ կհարցնի, իսկ այդ «անազատ» մարդկանց ինչպե՞ս հաջողվեց աշխարհը կարմացնող այդպիսի նվաճումներ ձեռք բերել էկոնոմիկայում, գիտության, լուսավորության, արվեստի ասպարեզում, ստեղծագործության բոլոր բնագավառներում: Ինչո՞վ բացատրել սոցիալիստական երկրների հզոր կենսական ուժը, նրանց սլացիկ առաջընթացը, որն իր տեմպերով, իր թափով շատ է գերապանցում այն ամենին, ինչին երբևիցե ընդունակ է եղել կապիտալիզմը:

Այս հարցերին կարելի է տալ միայն մեկ պատասխան. կապիտալիզմը սոցիալիզմի հետ ունեցած պատմական վեճը տանուլ է տալիս հենց այն պատճառով, որ կապիտալիզմի շրջանակները այժմ դարձել են կապանքներ հասարակության նյութական ու հոգևոր ուժերի համար, արգելակ՝ անհատի կարգացման ճանապարհին: Ժամանակի ընթացքում գնալով ավելի ակնհայտ է դառնում, որ իմպերիալիզմը իշխանությունը պահել կարող է միայն կեղծիքի ու բռնության միջոցով: «Ազատության» և «դեմոկրատիայի» կեղծ դրոշակները իրականում սքողում են մոնոպոլիստական կապիտալի ռեակցիոն, հակադեմոկրատական էությունը:

Անգլիացի հայտնի փիլիսոփա Բերտրան Ռասսելը, մի նամակով դիմելով «Վաշինգտոն պոստ» թերթին, գրում է. «Այդ ի՞նչ հասարակարգ է, որը, պնդելով, թե ինքը հոգ է տանում ընդհանուրի ազատության և անհատի ազատության մասին, միաժամանակ հայտարարում է, թե ինքը պատրաստ է մի քանի հարյուր միլիոն մարդ ոչնչացնել: Հանգիստ կերպով այդպիսի սպանդ նյութող հասարակարգն այն հասարակարգն է, որն արհամարհում է անհատի ազատությունը և մարդու արժանապատվությունը: Պատահական ու կարմանալի չէ, որ այդպիսի հասարակարգը հարձակվում է մասսայական սպանության դեմ հանդես եկողների վրա և ճգնում է վարկաբեկել ու ոչնչացնել նրանց: Ես խոսում եմ Ամերիկայի Միացյալ Նահանգների մասին և այս նամակը գրում եմ, որպեսզի իմ վրդովմունքը հայտնեմ այնպիսի

կազմակերպություններին շարունակ հալածելու համար, ինչպիսին են Կուբայի նկատմամբ արդարացի վերաբերմունքի համար պայքարող կոմիտեն, «Կանայք. պայքարեցեք խաղաղության համար», «Պասիֆիկա ֆաունդեյշընը»—մի ռադիոկայան, որը գոյությունը պահպանում է կամավոր նվիրաբերություններով և զբաղվում է լուրջ երաժշտության պրոպագանդայով ու լուրջ դիսկուսիաներով: Դուք, որ ճամարտակում եք ազատ աշխարհի մասին, կարող եք խորհել այն բանի շուրջը, թե գաղտնի ոստիկանությունը, վարձու մատնիչների ինստիտուտը, քայքայիչ կազմակերպությունների ցուցակը, քաղաքական հայացքները հետաքննող հանձնաժողովներն ու հիստերիկ անհանդուրժելիության ընդհանուր մթնոլորտը արդյոք համատեղելի են նման հավակնությունների հետ»:

Գաղափարական պայքարի կարևորագույն հարցը պատերազմի ու խաղաղության հարցն է: Ռեակցիոն տեսաբանները հասկանում են, որ խաղաղության դրոշը մի մեծագույն ուժ է կոմունիստների ձեռքին: Եվ նրանք ամեն գնով փորձում են խափանել վստահությունը մարքս-լենինյան ուսմունքի սկզբունքների նկատմամբ, կոմունիստներին մեկուսացնել ժողովրդական մասսաներից, կանխել հակաիմպերիալիստական ուժերի միավորումը: Սովետական Միության կոմունիստական պարտիան իմպերիալիստական կրպարտությանը հակադրում է խելացի հետևողական դիրք՝ վճռական պայքար համաշխարհային ջերմամիջուկային պատերազմ սանձազերծելու ասպարեզում իմպերիալիստների սպառնալիքների դեմ ժողովուրդներին համախմբելու համար: Փաստերն ասում են, գրում է Սորբոնի պրոֆեսոր Բ. Լավերնը «Ո՞րն է Արևմուտքի և Սովետական Միության վեճի պատճառը» գրքում, որ սովետական մարդիկ պատերազմ չեն ցանկանում, որ նրանք հույսը դնում են իրենց գաղափարախոսության համոզչության, իրենց արդյունաբերական արտադրանքի նշանակալի աճի, կարճ ասած, իրենց կենսամակարդակի բարելավման վրա, այն բանի վրա, որ ժամանակի ընթացքում մյուս ժողովուրդները սոցիալիստական բնույթ կտան իրենց էկոնոմիկային:

Ինչպես ամեն տեղ, այնպես էլ գաղափարական պայքարում կոմունիստներն ընթանում են առաջադիմական ուժերի ավանգարդում, տոկուն կերպով պաշտպանում են աշխատավորների շահերը: Դրա համար էլ բուրժուական պրոպագանդայի գլխավոր հարվածները տեղում են հենց կոմունիստական պարտիաների վրա: Հակակոմունիզմը համակել է իմպերիալիստների գաղափարական գործունեության բոլոր ձևերը, բոլոր ուղղությունները: Հակակոմունիզմը վկայում է կապիտալիզմի հոգևոր անկորության մասին, որը դեմոկրատական ուժերի դեմ մղած պայքարում հարկադրված է դիմել կեղծիքի:

Գաղափարական պայքարի բոլոր ելևէջներում վերջին հաշվով միշտ էլ հառնում է մի կենտրոնական հարց՝ այս կամ այն դասակարգի շահերի հարցը: *Գաղափարական պայքարը դասակարգային պայքար է, պրոլետարական, կոմունիստական գաղափարախոսության պայքար բուրժուական գաղափարախոսության կանականացման տարատեսակությունների դեմ:*

Մեր երկրում վերացված են անտագոնիստական դասակարգերը, և դասակարգերի բախումները անցյալի գիրկն են անցել: Հաստատվել է ժողովուրդների սոցիալ-քաղաքական և գաղափարական կայուն միասնություն: Բայց դա չի բացառում կյանքի երևույթները, պատմական իրադարձությունները կոմունիստական գաղափարայնության դիրքերից, դասակարգային, պարտիական դիրքերից գնահատելու անհրաժեշտությունը: Իմպերիալիզմը ձգտում է բոլոր միջոցներով սովետական մարդկանց մեջ հարուցել ինդիվիդուալիզմ, մասնատիրական հոգեբանություն, նա-



ցիոնալիզմ, սնոտիապաշտություններ և այլն: Դա մեզանից պահանջում է զգոնություն, գաղափարական զինվածություն, հարձակողական թափ գաղափարական աշխատանքում: Մասնակցելով համաշխարհային ասպարեզում մղվող գաղափարական պայքարին որպես միջազգային կոմունիստական շարժման մի միասնական, համախմբված ջոկատ, մենք այս կամ այն ներքին երևույթը վերլուծելիս էլ չպետք է մոռանանք այն բանը, թե դա ինչ կապի մեջ է գտնվում համաշխարհային ասպարեզում մղվող գաղափարական պայքարի հետ, թե դա օգնում է իմպերիալիստական գաղափարախոսության դեմ մղվող պայքարին, թե խանգարում, ամրացնում է ժողովրդի գաղափարական միասնությունը, թե թուլացնում:

Սովետական մարդիկ, դաստիարակված կոմունիստական բարձր գաղափարայնության ոգով, ամբողջ աշխարհի առջև ցույց տվեցին անսահման նվիրվածություն կոմունիզմի իդեալներին և սոցիալիստական հայրենիքին, աննկուն արիություն, մասսայական հերոսություն, բարձր կարգապահություն և կազմակերպվածություն: Բուրժուական պրոպագանդիստները հաճախ փորձում են ժխտել կոմունիստական գաղափարախոսության և սովետական մարդկանց այդ արժեքավոր հատկությունների միջև եղած կապը: Բայց ճշմարտությունը միշտ հաղթանակում է: Ֆրանսիական կապիտալիստական ձեռնարկությունների դիրեկտորները, որոնք այցելել էին ՍՍՌՄ, չէին կարող չասել սովետական մարդկանց՝ հայրենիքի նկատմամբ տածած ձեր սերը, ձեր սերը հանդեպ կուլտուրան, գեղեցկությունը, սոցիալական խոցերի բացակայությունը ձեզ մոտ, երեխաների նկատմամբ տածած ձեր սերը, ձեր քաջարի ու կենսուրախ անձնուրացությունը—այդ ամենը հարգանք է հարուցում:

Հենց կոմունիստները, կոմունիստական պարտիան է հաստատակամորեն և հաջողությամբ սովետական մարդկանց մեջ դաստիարակում այդ սքանչելի և խորապես մարդկային հատկությունները: Դրանք, այդ հատկությունները, կոմունիստական ուսմունքի կենդանի մարմնավորումն են: Ն. Ս. Խրուշչովն ասում է, որ կապիտալիզմի գաղափարախոսները նախանձի զգացումով են խոսում սովետական մարդկանց, մեր երիտասարդության բարձր գաղափարայնության և նպատակասլացության մասին: «Կոմունիստական գաղափարայնությունը,— ասել է նա,— կոմունիզմի վսեմ իդեալների հաղթանակի հարցում անխախտ համոզվածությունը այժմ վերացական հասկացություն չէ, այլ մեր ամբողջ կյանքի իմաստը...»:

Կոմունիստական գիտակցականությունը այն գլխավոր, առանցքային հատկությունն է, որը յուրաքանչյուրին օգնում է կողմնորոշվելու հասարակական կյանքում, իր տեղը գտնելու ընդհանուր գործում, հասնելու իր առջև դրած նպատակներին, հաղթահարելու ամեն տեսակ դժվարություններ, որքան էլ որ ծանր լինեն դրանք: Գիտակից մարտիկը պատրաստ է իր կյանքը կոհել կոմունիստական իդեալների համար, որովհետև նրա համար գաղափարը բարձր է ամեն տեսակ դժվարություններից ու վտանգներից, բարձր է ամեն ինչից: Հազարավոր անգամ կրկնված փորձը հաստատում է, որ այնտեղ, որտեղ մարդը տոգորված է հասարակությանը ծառայելու վեհ գաղափարով, այնտեղ կա հետաքրքրական, դեպքերով ու ապրումներով հարուստ, մեծ իմաստով լի կյանք: Եվ ընդհակառակը, եթե կորչում է գաղափարայնությունը, ապա կորչում է կյանքի իմաստը, երևան է գալիս վհատություն, բարոյական ու գաղափարական սանձարձակություն:

Կոմունիստական գաղափարայնությունն անհամատեղելի է խորթ հայացքների, խորթ աշխարհայացքի ամեն տեսակ դրսևորման հետ, և այդ իսկ պատճառով կոմունիստներն ակտիվ պայքար են մղում բուրժուական և մանրբուրժուական գա-

ղափարախոսության ազդեցության դեմ, բուրժուական նացիոնալիզմի մնացուկների դեմ, կրոնական հաշիշի ու սնոտիապաշտությունների դեմ:

Կոմունիստական գաղափարայնությունը անհամատեղելի է նաև այն բանի հետ, երբ հասարակական շահերին հակադրվում են անհատական շահերը, համաժողովրդական սոցիալիստական պետությանը՝ եսասիրական ձգտումները, ուստի և կոմունիստները հաստատակամորեն պայքարում են նրանց դեմ, ովքեր ոտնձգություն են կատարում ժողովրդական գույքի նկատմամբ, չարաշահում են պաշտոնական դիրքը, հոգատար չեն վերաբերվում հասարակական պարտքին, պաշտոնական պարտականություններին:

Կոմունիստական գաղափարայնությունն անհամատեղելի է սովետական մարդու մարդկային արժանապատվությունը նվաստացնելու, նրա ակտիվությունը սահմանափակելու հետ, ուստի և պարտիան վճռականորեն արմատախիլ է անում բյուրոկրատիզմը, կարիերիզմը, ստորաքարշությունը և նման երևույթները, որոնք տանում են դեպի ներքևից եկող քննադատության ճնշում, աշխատավորության շահերի քամահրում:

Կոմունիստական գաղափարախոսությունը անհաշտ է անցյալի ամեն տեսակ մնացուկների նկատմամբ: Երբեմն ասում են՝ արդյոք ժամանակը չէ՞, որ հրաժարվենք «մնացուկներ» հասկացությունից և ինքներս պատասխանատու լինենք այն ամենի համար, ինչ կա մեր հասարակության մեջ: Բայց այդպիսի մոտեցումը անխուսափելիորեն խառնաշփոթություն է մտցնում. մի մակարդակի վրա են դրվում սոցիալիստական և սոցիալիզմին խորթ երևույթները, այն, ինչը ստեղծվել է սոցիալիզմի ժամանակ և ինչը մեկ ժառանգություն է մնացել անցյալից, ինչը դեռ պետք է հաղթահարել: Հասարակական գիտակցության վիթխարի առաջադիմության պայմաններում, երբ մեր հասարակության մեջ տիրապետում է սոցիալիստական գիտակցությունը, այնպիսի հակահասարակական երևույթներ, ինչպիսիք են՝ շահամոլությունը, բյուրոկրատիզմը, նացիոնալիզմը, կրոնական նախապաշարմունքները և այլն, մեր կարգերին միանգամայն խորթ են և այդ իսկ պատճառով ճիշտ կերպով համարվում են հենց անցյալի մնացուկներ: Գիտական հետազոտությունների խնդիրն է՝ հասարակական կյանքի յուրաքանչյուր բնագավառի կոնկրետ վերլուծության միջոցով բացահայտել ինչպես անցյալի մնացուկների պահպանման օբյեկտիվ պայմանները, այնպես էլ դրանց լիակատար հաղթահարումն արգելակող սուբյեկտիվ բնույթի թերությունները: Միայն այդ դեպքում նպատակաալաց և, հետևապես, մեծ հաջողությամբ կվերացվի անցյալի բացասական ժառանգությունը:

Մեր կյանքում դեռևս քիչ չենք հանդիպում այնպիսի մարտնչող քաղքենիների, որոնց մոտ «եսը» և «իմը» այնքան են ուռճացել, որ ծածկել են մնացած ամբողջ աշխարհը և նրանք ոչինչ չեն ուզում իմանալ իրենց սեփական շահից բացի: Մասսաների գիտակցականությունը բարձրացնելու համար մղած պայքարում պարտիային հարկ է լինում հաղթահարել ինչպես որոշ մարդկանց պասսիվությունը, կուլտուրական հետամնացությունը, տգիտությունը, այնպես էլ քարացածությունը, բյուրոկրատիզմը, ղեկավարման վարչական մեթոդներով տարվելը:

Պարտիան իր ծրագրում խնդիր է դրել բոլոր աշխատավորների մեջ ձևավորել կոմունիստական աշխարհայացք և հաստատել կոմունիստական բարոյականություն: Բայց այդ խնդիրը հաջող լուծելու համար հարկավոր է անաղարտ պահել գաղափարական վենքը, սիստեմատիկորեն կատարելագործել գաղափարական աշխատանքի մեթոդները, ստեղծագործաբար զարգացնել մարքս-լենինյան տեսության հիմնական դրույթները: ՍՄԿՊ XXII համագումարը ընդգծեց սովետական մարդ-



կանց մարքսիզմ-լենինիզմին հավատարմության ոգով, բուրժուական գաղափարախոսության ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ անհանդուրժողականության ոգով դաստիարակելու անհրաժեշտությունը:

Սակայն կյանքը ցույց է տալիս, որ բոլորը չեն, մասնավորապես գրականության և արվեստի աշխատողների շրջանում, որ ճիշտ են հասկանում աշխատավորության գաղափարական դաստիարակության ասպարեզում դրված խնդիրները: Ոմանք չեն հասկանում արդի գաղափարական պայքարի իմաստն ու բնույթը, մոռանում են կոմունիստական և բուրժուական գաղափարախոսության անհաշտելիության մասին: Դա դրսևորվել է կապիտալիստական աշխարհի գաղափարական ու քաղաքական կյանքի փաստերի նկատմամբ անքննադատ վերաբերմունքի մեջ, «ժամանակակից» և «առաջադիմական» անվան տակ ֆորմալիստական արվեստը սովետական մարդկանց պարտադրելու փորձերում, սովետական իրականությունը խեղաթյուրելու, մեր հայրենիքի պատմությունը աղավաղելու մեջ:

Այդ ամենը չէր կարող չառաջացնել սովետական մարդկանց, պարտիայի և նրա Կենտրոնական կոմիտեի անհանգստությունը: Գրականության և արվեստի գործիչների հետ պարտիայի ու կառավարության ղեկավարների անցած տարվա դեկտեմբերին և այս տարվա մարտին կայացած հանդիպումների ժամանակ բազմակողմանի քննարկման ու քննադատական վերլուծության ենթարկվեցին անառողջ տենդենցները: Հանդիպումները ցույց տվեցին, որ քննարկման դրված հարցերը սկզբունքային նշանակություն ունեն աշխատավորությանը կոմունիզմի ոգով դաստիարակելու, բուրժուական գաղափարախոսության դեմ պայքար ծավալելու, սոցիալիստական կուլտուրան, գրականությունն ու արվեստը էլ ավելի զարգացնելու համար:

Պարտիան ժողովրդի աջակցությամբ վճռականորեն դատապարտեց այն փորձերը, որոնք նպատակ էին հետապնդում մարքս-լենինյան աշխարհայացքին գաղափարապես խորթ ֆորմալիստական, աբստրակցիոնիստական արվեստի կոնցեպցիաները խցկել մեր կյանքի մեջ: «Ազատվելով իմաստի ու հասկացությունների բեռից», ձգտելով հեռանալ բովանդակալից աբստրակցիաների աշխարհը, «փղոսկրյա աշտարակի» անդորրը, աբստրակցիոնիզմը և ֆորմալիզմը հակադրվում են սոցիալիստական ռեալիզմի արվեստի կոմունիստական գաղափարայնությանը: Աբստրակցիոնիզմը անհամատեղելի է սոցիալիստական արվեստի գաղափարական, բարձր-մարդասիրական հիմունքների հետ, նա մարտական արվեստը փոխարինում է այնպիսի մի արվեստով, որը մարդու գիտակցությունը այլասերում է գաղափարազրկությամբ, որը կյանքից հեռացնում-տանում է դեպի հորինվածքների կառանգական աշխարհը:

Բայց քողարկվելով գաղափարազրկությամբ, անպարտիականությամբ, աբստրակցիոնիզմը իրականում հանդես է գալիս որպես բուրժուական գաղափարախոսության ձևերից մեկը: Հատկապես իմպերիալիստական բուրժուազիան է խրախուսում «գաղափարազուրկ» արվեստը, ձգտելով աշխատավորներին շեղել իրենց շահերի համար մղվող քաղաքական պայքարից: Հասարակության մեջ չկա և չի կարող անպարտիականություն լինել: Դասակարգային պայքարի տրամաբանությունն այսպիսին է. *ով պայքարին չի մասնակցում աշխատավորության կողմում, նա, ըստ էության, օգնում է բուրժուազիային:* Անպարտիականության վերաբերյալ խոսակցությունները ծառայում են լոկ որպես մի քող պարտիայի հայացքների ու գաղափարների հետ անհամաձայնությունը ծածկելու համար:

Հենց այդ էլ տեղի է ունեցել աբստրակտ արվեստի պաշտպանների ու հովա-

այլ ինչ, քան կրպարտություն այն հերոսական սերունդների հասցեին, որոնք կառուցել են սոցիալիզմը և պաշտպանել նրա նվաճումները: Սերունդների հարաբերությունների հավիտենական հարցի մեջ սոցիալիզմը մտցրել է սկզբունքորեն մի նոր բան՝ գաղափարական միասնություն հասարակական կյանքի արմատական հարցերում: Եվ պետք է գնահատել ու պահպանել այդ միասնությունը, ամեն կերպ ամրապնդել այն: Միայն այդ հիման վրա կարելի է հաջողությամբ զուգորդել ավագ սերունդների փորձը, հասունությունը և երիտասարդների կրքոտությունը, անհանդուրժողությունը թերությունների նկատմամբ:

Սոցիալիզմի կառուցման բոլոր տարիների ընթացքում սովետական երիտասարդությունը հանդիսացել է դժվարին տեղամասերում գտնվող հարվածային ջոկատ: Երիտասարդությունը կառուցել է և կառուցում է հիդրոէլեկտրակայաններ Սիբիրում, կառուցում է ճանապարհներ, հերկում է խոպանը, գնում է այնտեղ, ուր նրան ուղարկում են պարտիան և կոմերիտմիությունը, համարձակորեն հանդես է գալիս թերությունների դեմ, ատում է կեղծիքը, երեսպաշտությունը, բյուրոկրատիզմը և անցյալի մյուս մնացուկները: Իհարկե, երիտասարդների մեջ պատահում են նաև այնպիսիները, որոնք կցանկանային հեռանալ ակտիվ հասարակական կյանքից, փակվել իրենց անձնական բարեկեցիկ նեղ աշխարհում: Բայց այդ թերությունները չի կարելի վերագրել ամբողջ երիտասարդ սերնդին: Նման երևույթներ եղել են նաև առաջներում և շատ ավելի մեծ քանակությամբ: Այժմ նրանք ավելի նկատելի են այն պատճառով, որ մենք սկսել ենք ավելի անհանդուրժողական վերաբերվել դրանց:

Աճող սերունդը զգում է ավագ սերնդի ուշադրության կարիքը: Բայց, դժբախտաբար, դեռևս պարտիական շատ կազմակերպություններ թույլ են աշխատում կոմերիտականների, երիտասարդության հետ: Պարտիայի մարզային և քաղաքային կոմիտեների, գործարանների և արտադրական վարչությունների պարտիական կոմիտեների քարտուղարները, տնտեսական ղեկավարները հազվադեպ են լինում հանրակացարաններում, կոմերիտական ժողովներում, քիչ են ելույթներ ունենում երիտասարդության առջև, ըստ երևույթին կարծելով, թե դա կոմերիտական աշխատողների գործն է: Բայց ումի՞ց պետք է երիտասարդությունը սովորի կոմունիստական գաղափարայնություն, եթե ոչ ավագ սերունդներից: Ինչպե՞ս կարելի է աճեցնել կոմունիզմ կառուցողներին փոխարինողներ առանց շփվելու նրանց հետ մշտապես ու ամենուրեք: Սերտ շփման մեջ է, երիտասարդությանը փորձ, գաղափարական սկզբունքներ հաղորդելու մեջ է ժառանգելիության գրավականը կոմունիստական շինարարության մեջ, կոմունիզմի գաղափարների հաղթանակի գրավականը: Առանց երիտասարդության գաղափարական դաստիարակության համար մղվող ճկուն ու բազմազան, սկզբունքային և համոզիչ պայքարի անհնարին է նոր հասարակարգի հաղթանակը:

Կոմունիստական գաղափարայնության համար մղվող պայքարը, իհարկե, չի սահմանափակվում գրականության և արվեստի բնագավառում: Կյանքում չկա ոչ մի այնպիսի ասպարեզ, որտեղ գաղափարայնության պրոբլեմները նշանակություն չունենային, չկա այնպիսի մարդ, որին չվերաբերեին դրանք: Այդ մասին լավ է ասել Վլադիմիր Մայակովսկին.

Կոմունիզմը
միայն
երկրում,



քրտնաթոր ֆաբրիկաներում չէ:
Այն մեր տանն է,
մեր կյանքում,
հարաբերություններում,
ընտանիքում,
կենցաղում:

Մեր հասարակական-քաղաքական կադրերի ամբողջ կացութաձևը նպաստում է կոմունիզմի գիտակից, ակտիվ կառուցողների ձևավորմանը: Այդ բանում հսկայական դեր է խաղում նաև մասսաների քաղաքական լուսավորությունը: Ավելի քան 23 միլիոն մարդ պարտիական լուսավորության ցանցում տիրապետում են մարքս-լենինյան տեսության հիմունքներին կամ կատարելագործում են իրենց գիտելիքները: Դրանում առանձնապես վառ կերպով դրսևորվում է այն հսկայական դերը, որ կոչված է կատարելու գիտությունը նոր մարդու դաստիարակության գործում: Կոմունիստական գաղափարախոսությունը գիտական գաղափարախոսություն է: Նրա մեջ ի մի են ձուլված աշխատավորների շահերի հետևողական պաշտպանությունը և խիստ գիտականությունը: Ուստի կոմունիստական գաղափարայնության ոգուն հետևելը նշանակում է հավատարիմ լինել ժողովրդի շահերին, կատարելագործել, ստեղծագործաբար զարգացնել գիտական իմացությունը հասարակության մասին: Սակայն երբեմն կարելի է հանդիպել այնպիսի գիտական աշխատողների, որոնք հակամետ են միայն կրկնելու անգիր արած տեսական դրույթները: Բայց կյանքը կանգնած չի մնում իր տեղում: Նա շարունակ շարժվում ու փոփոխվում է: Ուստի կոմունիստական գաղափարայնության էությունը սերտ կապն է կյանքի հետ, տեսական դրույթների ստեղծագործական զարգացումը, այնպիսի գիտելիքների բազմապատկումն է, որոնք պարտիային ու ժողովրդին կօգնեին հաջողությամբ լուծելու իրենց առջև ծառացած պրոբլեմները:

Գաղափարական աշխատանքի կարևորագույն խնդիրն է մասսաների արտադրական ակտիվության բարձրացումը, ամբողջ տնտեսական գործունեության բարելավումը: Դա որոշիչ նշանակություն ունի գաղափարական պայքարի ընթացքի և վերջնական արդյունքի համար. կհաղթանակի այն հասարակարգի գաղափարախոսությունը, որը ստեղծում է նյութական և հոգևոր լավագույն կենսապայմաններ: Բայց արդյոք կարելի՞ է տնտեսական գործունեությունը հաջողությամբ իրականացնել գաղափարական-դաստիարակչական աշխատանքից, գաղափարական պայքարից անջատ: Ո՛չ, չի՛ կարելի:

Արտադրության մեջ չկա այնպիսի զուտ տնտեսական աշխատանք, որը վերծ լինի «գաղափարական հոգսերից», ինչպես նաև չկա այնպիսի զուտ գաղափարական աշխատանք, որը այս կամ այն կերպ կապված չլինի արտադրության հետ: Ձեռնարկության դիրեկտոր, թե տեխնոլոգ է տվյալ մարդը, աշխղեկ է թե փականագործ, հաշվետար է թե բրիգադիր — նա միշտ էլ հարկադրված է լինում ընդունել որոշումներ և այնպիսի արարքներ գործել, որոնք մարդկանց կողմից գնահատվում են գաղափարական տեսակետից, ունեն նաև քաղաքական, բարոյական հետևանքներ:

Լուծվող հարցերի նկատմամբ, իր և ուրիշի գործերի նկատմամբ գործարար մոտեցման միասնությունը, միաձուլությունը դրանց գաղափարական գնահատման հետ մեկտեղ—նոր մարդու, կոմունիստական ֆորմացիայի մարդու անբաժան գիծն է: Իր մեջ այդպիսի գծեր զուգորդել կարողանալը մարդու հասունության ցուցա-

նիշն է: «Մեր հասարակարգի ուժը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— հենց նրանում է, որ ցանկացած տեղում, ցանկացած գործունեության մեջ սովետական մարդը պետք է տեսնի և տեսնում է իր առջև վսեմ նպատակ կյանքում, իր աշխատանքում, որը շատ է հարկավոր հասարակությանը: Նա լոկ հացահատիկ չի աճեցնում, հիդրոկայան է կառուցում, դետալ է տաշում, կամ աշխատում գծագրական սեղանի մոտ: Սովետական մարդկանց համար կուտ տեխնիկական կամ պրոֆեսիոնալ հըմտությունը միաձուլվում է այն բանի բարձր համոզվածության հետ, որ նշանակալի ու մեծ է այն նպատակը, հանուն որի կատարվում է ամեն մի գործ»:

Եթե մարդ հենց այդպես է հասկանում մեր կյանքը, նա միշտ էլ կպաշտպանի արդար գործը, մեր սկզբունքները: Պարտիան կոմունիստներից պահանջում է, որ նրանք ունենան բարձր պատասխանատվության զգացում, չվիջեն յուրաքանչյուրին ու ամեն մեկին, այլ խստորեն ղեկավարվեն պետական և պարտիական շահերով:

Իսկական կոմունիստական գաղափարայնությունը տարբերակում չի դնում սկզբունքների և վարքագծի միջև, խոսքի և գործի միջև: Ականավոր մարտիկռևոլյուցիոներները, կոմունիստ-լենինյանները միշտ էլ եղել են հռչակված սկըզբունքների, լոզունգների, խնդիրների հետևողական իրագործման սքանչելի օրինակ: Եվ եթե կոմունիզմի սկզբունքները չեն դարձել մարդու անձնական համոզմունք, ապա հեշտ է մոլորեցնել այդպիսի մարդուն: Եթե նրա գաղափարայնությունը միայն բառերով է արտահայտվում, ապա նա հեշտությամբ նահանջում է դժվարությունների առջև: Կոմունիստական գաղափարայնությունը ամենից առաջ հանուն կոմունիզմի կառուցման կատարվող կոնկրետ գործեր ու քայլեր են: Տարբեր պայմաններում այն տարբեր կերպով է դրսևորվում: Մեր ժամանակ կոմունիստական գաղափարայնությունը արտահայտվում է հանրորեն օգտակար աշխատանքում, հասարակական կառավարման գործերում ունեցած մասնակցության մեջ, գիտական աշխարհայացքի հիմունքների և կոմունիստական բարոյականության հաստատման համար մղվող պայքարում:

Աշխատանքը սոցիալիզմի պայմաններում առանձնահատուկ դեր է խաղում: Նա դադարել է կապիտալիստ-տնտեսատիրոջ համար շահույթի՝ աղբյուր ծառայելուց և աշխատավորի համար անհրաժեշտ է դառնում ոչ միայն որպես գոյության միջոց. նրա աշխատանքը անհրաժեշտ է ամբողջ հասարակությանը, դա աշխատողի հասարակական դիրքի գլխավոր չափանիշն է: Այստեղից էլ հենց բխում է հասարակության, կոլեկտիվի այն մեծ ուշադրությունը, որով նրանք շրջապատում են շարքային աշխատավորին: Փոխվում է աշխատանքի նշանակությունը և դրա հետ մեկտեղ փոխվում է նաև մարդու կյանքի իմաստը: Նա ապրում է ո՛չ միայն անհատական շահերով, այլև կոլեկտիվի, հասարակության շահերով: Հետևապես, երբ խոսք է բացվում կոմունիստական հասարակարգի մարդու աշխատանքային դաստիարակության մասին, նկատի է առնվում ո՛չ ամեն տեսակ աշխատանք, այլ հատկապես հանրորեն օգտակար աշխատանքը: Աշխատանքի բնագավառում գաղափարական դաստիարակության իմաստը հենց այն բանի մեջ է, որ հաստատվի իմաստավորված աշխատանք, հասարակությանը հարկավոր ստեղծագործական աշխատանք, մի աշխատանք, որը խորապես բովանդակալի և հետաքրքրական է դարձնում մարդու կյանքը:

Կոմունիստական գաղափարայնության բարձրագույն դրսևորումը շարքային աշխատավորի հոգատարությունն է ընդհանուրի բարիքի նկատմամբ, հոգատարությունը գործարանի, կոլտնտեսության, հիմնարկի գործերի վիճակի նկատմամբ:



Պարտիական, և ո՛չ միայն պարտիական, այլև սովետական ու տնտեսական ղեկավարման արվեստը հենց այն բանի մեջ է, որ համարձակորեն ուղղություն տրվի մասսաների ակտիվությանը, ուշադիր ունկնդրվի առանձին աշխատողների ձայնը և միջոցներ ձեռք առնվեն այն թերությունները վերացնելու համար, որ մատնանշում են նրանք: Այդպիսի ղեկավար լինելը, իհարկե, բարդ բան է: Բայց այդպիսի աշխատանքը կվարձատրվի հարյուրապատիկ. ղեկավարվողների նկատմամբ ղեկավարի ճիշտ վերաբերմունքը օգնում է աճեցնելու մեծ մղումներ, հասարակականքաղաքական լայն մտահորիզոն ունեցող աշխատողի:

Դժբախտաբար դեռևս հանդիպում ենք այնպիսի աշխատողների, որոնք չեն կարողանում և չեն ցանկանում զբաղվել դաստիարակչական աշխատանքով, սահմանափակվում են գլխավորապես հրամաններ ու կարգադրություններ հրատարակելով, վարչական ճնշումով: Այդպիսի աշխատողները չեն ունկնդրում մասսաների ձայնին, անտեսում են քննադատական դիտողությունները, պատրաստ են դիմելու հավելագրումների, աչքակապության, միայն թե ստեղծեն բարեհաջողության տեսանելիություն, հաջողությունների տեսանելիություն:

Պարտիական օրգանները պետք է վճռականորեն ազատվեն այնպիսի աշխատողներից, որոնք վարժվել են գործել բյուրոկրատական մեթոդներով, հրաման տալու ու դիրեկտիվի մեթոդներով, դրսևորում են մասսաներից վախենալու նման ինչոր բան: Այդպիսի մարդիկ վնասից բացի ուրիշ ոչինչ չեն կարող բերել: Կոմունիստական դաստիարակության գործին նման «ղեկավարների» պատճառած վնասն այն է, որ նրանք խանգարում են սովետական մարդկանց ակտիվության դրսևորմանը, նրանց հոգևոր աճին:

Հանդես գալով 1963 թվականի մարտի 12-ին Ռուսաստանի ֆեդերացիայի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների պարտիական կոմիտեների քարտուղարների և պետերի խորհրդակցությունում, Ն. Ս. Խրուշչովը մեծ ուշադրություն նվիրեց մասսաների հետ աշխատելու հմտությանը: «Մարդկանց հետ աշխատելը պարտիական աշխատողի բարձրագույն պարտքն է»,— ասաց նա: Յուրաքանչյուր մարդ ունի բնավորության իր առանձնահատկությունները, յուրաքանչյուրը, բացի ընդհանուր գծերից, ունի իր հոգսերը, շահերը, ձգտումները: Լավ ղեկավար լինելու, դժվարին խնդիրները լուծելու նպատակով մարդկանց կազմակերպել, համախմբել, առաջնորդել կարողանալու համար հարկավոր է մարդկանց ճանաչել ոչ ընդհանուր առմամբ, այլ կոնկրետ, առանձին մարդկանց, կարողանալ առանձնահատուկ մոտեցում գտնել յուրաքանչյուրի նկատմամբ: Եվ միայն այդ դեպքում կարելի է սպասել հաջողություն, աջակցություն նրանց կողմից, սպասել աշխատողների ակտիվություն:

Յուրաքանչյուր հասարակարգ զգում է կարգապահության և մասսաների կազմակերպվածության կարիքը: Կապիտալիզմի պայմաններում մասսայական գործադուլների ծավալը մի սարսափելի ուրվականի նման կանգնած է բանվորի թիկունքում և նրան ստիպում է կատարել տնտեսատիրոջ պահանջները: Սոցիալիզմի պայմաններում տերը ինքը ժողովուրդն է: Ուստի աշխատավորների գիտակցական կարգապահությունը, բարձր ակտիվությունը սոցիալիստական և կոմունիստական շինարարության կարևորագույն պայմանն են: Այստեղ ամեն ոք պետք է իրեն զգա որպես իր երկրի ներկայացուցիչ ձեռնարկությունում կամ հիմնարկում: Վ. Ի. Լենինն ասում էր. «Մասսաների կենդանի ստեղծագործություն—ահա նոր հասարակության հիմնական գործոնը... Սոցիալիզմը չի ստեղծվում վերևից տրվող հրամանագրերով: Նրա ոգուն խորթ է կազյոնի-բյուրոկրատիկ ավտոմատիզմը. կենդանի,

ստեղծագործական սոցիալիզմը բուն իսկ ժողովրդական մասսաների ստեղծագործությունն է»:

Մարդու կոմունիստական գաղափարայնությունը ամենից առաջ իր ուժերն ու գիտելիքները բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների գործին, կոմունիստական պարտիայի գործին տալու պատրաստակամությունն է: Բայց լոկ պատրաստակամությունը դեռ քիչ է: Հարկավոր է գիտենալ, թե դեպի ուր և ինչպես է վարգանում հասարակական կյանքը, թե ինչ մեթոդներով ու միջոցներով պետք է պայքարել կոմունիզմի համար, որպեսզի հետևողականորեն ու հաստատակամորեն իրականացնենք մեր նպատակները, համարձակորեն ու սկզբունքորեն պաշտպանենք պարտիայի ու ժողովրդի շահերը բոլոր պայմաններում, բոլոր հակառակորդների հանդեպ:

Այն պայմաններում, երբ հարկ է լինում երկրի ներսում համառ պայքար մղել անցյալի մնացուկների դեմ, միջազգային ասպարեզում ետ մղել դասակարգային թշնամու գրոհները, հսկայական չափով աճում է կոմունիստական պարտիայի ղեկավար դերը: Պարտիան արտահայտում է ժողովրդի կամքը, ժողովրդի շահերի պաշտպանության մեջ է նրա գործունեության ամբողջ իմաստը: Ժողովրդի շահերի համար մղած իր պայքարով, կոմունիստների արյունով նա նվաճել է ժողովրդական մասսաների մեծ հարգանքն ու հեղինակությունը: Ժողովուրդը հավատում է պարտիային և աջակցում է նրան: Ժողովրդի վստահությունը վայելող պարտիան կվերացնի այն ամենը, ինչ խանգարում է աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը: Պարտիան բոլոր կոմունիստներից պահանջում է լինել կոմունիստական գաղափարայնության բարձր-գիտակից մարտիկներ:

Մեզ համար կոմունիստական գաղափարայնության օրինակ է եղել և մնում է Վլադիմիր Իլյիչ Լենինը: Նրա ամբողջ կյանքը, նրա ամբողջ ուժերը, հզոր միտքը ենթարկված էին բանվոր դասակարգին, բոլոր աշխատավորներին շահագործման լծից ազատագրելու գործին, ռևոլյուցիայի, աշխարհում առաջին սոցիալիստական հասարակարգի կառուցման գործին: Յուրաքանչյուր կոմունիստի, կոմունիզմի յուրաքանչյուր ակտիվ կառուցողի խնդիրն է Լենինից սովորել կյանքի երևույթների խոր ըմբռնում, մասսաների հետ աշխատելու հմտություն, սկզբունքայնություն քաղաքական, գաղափարական պայքարում:

Կոմունիստական գաղափարայնության մեջ է մարմնավորված ամբողջ առաջադեմ մարդկության ակնկալություններն ու ձգտումները: Երկու աշխարհների միջև մղվող սուր պայքարում կոմունիստական գաղափարայնությունը մեր մարտական զենքն է, մեր դրոշը, որի վրա գրված է առաջադիմության և սոցիալիստական հումանիզմի նշանաբանը՝ Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն ու Երջանկություն բոլոր ժողովուրդներին:

«Коммунист», № 4, 1963 թ.

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԴԻԱԼԵԿՏԻԿԱԿԱՆ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՏՈՄԻՍՏԻԿԱՆ

Ա. ՄԻՆԱՍՅԱՆ

*ՄԱՐԴԸ իր ամենօրյա պրակտիկ գործունեության ընթացքում շփվում է ո՛չ միայն բնության բազմազան իրերի ու երևույթների հետ, այլև ներգործում է վերջիններիս վրա, փոխում դրանք: Այդ պրակտիկ գործունեության շնորհիվ անընդհատ կատարելագործվում և զարգանում է մարդկային մտածողությունը, մարդն աշխատում է ավելի խոր թափանցել իրերի ու առարկաների էության մեջ: Արտաքին աշխարհի հարուստ բազմազանությունը դեռ շատ վաղուց է զբաղեցրել մարդկային խորհող միտքը, նրա առաջ դնելով այն հարցը, թե ինչի՞ց և ինչպե՞ս է կառուցված բնությունը:*

*Մարդկային մտքի զարգացման որոշ աստիճանում, դեռ հին աշխարհից սկսած, փորձեր են արվել՝ պատասխանելու այդ հարցերին: Պատմական զարգացման տարբեր էտապներում հասարակական պրակտիկայի և գիտության զարգացման տարբեր աստիճանի հետ կապված տարբեր պատասխաններ են տրվել դրանց:*

*Քանի որ մատերիայի, արտաքին աշխարհի զարգացման պրոցեսը վերին աստիճանի բարդ և հակասական է, ապա բնական է, որ այդ աշխարհի ճանաչման պրոցեսը չի կարող զերծ լինել հակասություններից: Այդ հակասությունները պայմանավորված են նրանով, որ մարդկային միտքն անսահման և անսպառ նյութական աշխարհի առանձին կողմերը չի կարող ըմբռնել միանգամից, իրենց դիալեկտիկական միասնության մեջ: Ընդհակառակը, գիտության պատմության մեջ հաճախ միասնական պրոցեսի առանձին կողմերը ո՛չ միայն կտրվում են մեկը մյուսից, այլև հակադրվում են միմյանց: Այսպես է պատահել նաև աշխարհի տարրական «հիմքի», «էության» որոնման հետ: Հին աշխարհի ատոմիստական ուսմունքի կողմնակիցները Լևկիպը, Դեմոկրիտը, Էպիկուրը և ուրիշներ այն տեսակետն էին պաշտպանում, որ արտաքին աշխարհի հիմքում ընկած են անբաժանելի և անփոփոխ ատոմներ, որոնց տարբեր կոմբինացիաներով փորձում էին բացատրել իրերի հարուստ բազմազանությունը: Այս տեսակետի կողմնակիցները մատերիայի կառուցվածքի ասպարեզում անց են կացնում դիսկրետության, ընդհատության գաղափարը: Որոշ մտածողներ, օրինակ՝ Էմպեդոկլեսը, արտաքին աշխարհի հիմքում փորձում էր գտնել այնպիսի տարրեր, ինչպիսիք են՝ կրակը, ջուրը, հողը և օդը, որոնք բնութագրվում էին անընդհատությամբ: Այսպիսով, մատերիայի կառուցվածքի իմացության պրոցեսի հենց սկզբից ծագում են երկու հակադիր*

տեսակետներ, որոնց միջև տեղի ունեցող պայքարը տարբեր պատմական էպոխաներում տարբեր կոնկրետ ձևեր է ընդունում։

## ԸՆԴՀԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆԸՆԴՀԱՏՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԱՏՈՄԻԶՄԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ԸՆԴՀԱՏՈՒԹՅՈՒՆՆ ու անընդհատությունը հանդիսանում են նյութական աշխարհի իրար հետ սերտորեն կապված երկու կողմեր, որոնք իրականում առանձին-առանձին, մեկն առանց մյուսի, գոյություն ունենալ չեն կարող։ Եվ իրոք, ընդհատությունը գոյություն ունի այն կապակցության մեջ, որը տանում է դեպի անընդհատությունը, իսկ անընդհատությունը գոյություն ունի ընդհատությունների մեջ, ընդհատությունների միջոցով։ Սակայն գիտությունը միանգամից ի վիճակի չէ բացահայտելու իրական աշխարհի այդ երկու կողմերի դիալեկտիկան։ Դեռ ավելին, առանց գիտական փիլիսոփայության, նման աշխարհայացքային հարցերը հնարավոր չէ հստակ լուծել սոսկ բնագիտության էմպիրիկ տվյալների օգնությամբ։

Հին աշխարհի իմացության մակարդակն անհնար էր դարձնում գիտականորեն հիմնավորված ատոմիստական ուսմունքի ստեղծումը։ Ատոմիստական տեսակետը, որն այդ ժամանակաշրջանում շարունակում էր մնալ որպես հանճարեղ կռահում, կարևոր պատմական դեր կատարեց հետագայում՝ ինչպես բնագիտության, այնպես էլ փիլիսոփայության զարգացման գործում։ Ատոմիստական տեսության կողմնակիցները փորձում էին արտաքին աշխարհում հանդիպող որակական տարբերությունները հանգեցնել լոկ քանակական տարբերությունների։ Դրանով նրանք յուրատեսակ ձևով, մեխանիցիզմի դիրքերից, հիմնավորում էին աշխարհի նյութական միասնությունը, իրերի և առարկաների էությունը հանգեցնելով մատերիայի տարրական մասնիկներին՝ ատոմներին։ Այսպիսով, ըստ նրանց պատկերացման, բովանդակ աշխարհի հիմքում ընկած են մեկընդմիշտ տրված անբաժանելի մասնիկները՝ ատոմները, որոնց բնությամբ պայմանավորվում է նրանցից առաջացած մարմինների բնույթը։ Այս տեսակետի կողմնակիցները շեշտը դնում էին նյութական մասնիկների մի կողմի՝ նրանց ընդհատության վրա, այն հակադրելով նրանց մյուս կողմին՝ անընդհատությանը։

Բոլորովին այլ դիրքերից էին հանդես գալիս հակառակ ուղղության՝ անընդհատության կողմնակիցները։ Այսպես, օրինակ, էմպիդոկլեսը փորձում էր բնության իրերի և երևույթների հարուստ բազմազանությունը հանգեցնել իրենց բնույթով անընդհատ չորս էլեմենտների, կամ չորս արմատների, որոնց տարբեր խառնուրդներից ծագում է աշխարհի բազմազանությունը։ Այդ էլեմենտները՝ հողը, ջուրը, կրակը և օդը համարվում էին հավիտենական և անփոփոխ։

Այս երկու տեսակետների պայքարը բորբոքվում է նոր ուժով միջին դարերից հետո, երբ սկսում են արագ թափով ձևավորվել ու զարգանալ բնական գիտությունների առանձին ճյուղերը և, հանձին Նյուտոնի, ամբողջական և որոշ իմաստով ավարտուն տեսք է ստանում կլասիկ մեխանիկան։ Լույսի մասնիկները նմանեցնելով նյութական մասնիկների՝ կորպուսկուլների, Նյուտոնն առաջ է քաշում լույսի կորպուսկուլային կամ մասնիկային տեսությունը։ Ըստ այդ պատկերացման լույսն իրենից ներկայացնում է ուղղաձիգ տարածվող կորպուսկուլների հեղեղ։ Լուսային մասնիկները ենթարկվում են մեխանիկայի



օրենքներին։ Լույսի ընդհատության այս տեսակետը հակադրվում է լույսի ալիքային կամ անընդհատության տեսությանը, որը զարգացվում էր Հյուգենսի կողմից։ Լույսի ալիքային տեսության հաջողությունները հանգեցրին կորպուսկուլային տեսության բացասմանը։ Թվում էր թե լույսի ալիքային տեսությունը մեկընդմիշտ և անվերադարձ թաղել է կորպուսկուլյար տեսությունը, ընդ որում լուսային երևույթների այդ երկու կողմերը՝ ընդհատությունը և անընդհատությունը, դիտվում էին իրարից անջատ, որպես բևեռային հակադրություններ։ Սակայն գիտության զարգացման հետագա ընթացքը հանգեցրեց նախորդ տեսությունների բացասմանը։ Պարզվեց, որ կան մի շարք երևույթներ՝ ֆոտոէֆեկտ, կոմպտոնէֆեկտ և այլն, որոնք լույսի ալիքային տեսությունն ի վիճակի չէ լուսաբանել։ Այդ տեսության օգնությամբ հնարավոր չէր բացատրել լույսի և նյութի փոխազդեցությունը։ Նշված երևույթները հետազոտելիս Մ. Պլանկը 1900 թվականին առաջ քաշեց լույսի վերաբերյալ նոր տեսություն՝ քվանտային տեսությունը, որը հանդիսացավ լուսային պրոցեսների ըմբռնման նոր և ավելի բարձր աստիճան։ Համաձայն այդ տեսության լույսն ունի երկակի, այսինքն՝ ալիքային և մասնիկային բնույթ։ Լույսի քվանտային տեսության մեջ հաղթահարվեց նախորդ տեսությունների միակողմանիությունը և նոր բարձր սինթեզի մեջ միացվեցին վերջիններիս մեջ եղած արժեքավոր նվաճումները։

Անցումը լույսի ալիքային և կորպուսկուլային տեսություններից քվանտային տեսությանը, ցույց է տալիս, որ բնության երևույթների ճանաչման տարբեր էտապներում, փորձի տվյալների ճնշման տակ, շեշտը դրվում է նրա առանձին կողմերի վրա, որոնք կտրվում են իրարից և հակադրվում իրար. միայն գիտության զարգացման հաջորդ աստիճանում բացահայտվում է նման մոտեցման միակողմանիությունը, ցույց է տրվում այդ կողմերի դիալեկտիկական միասնությունը։

Լույսի վերաբերյալ եղած տեսակետների անալիզն իր զարգացման պատմական ընթացքում հաստատում է ճանաչողության պրոցեսի դիալեկտիկան։ Եվ իրոք, լույսի կորպուսկուլային կամ մասնիկային տեսությունը բացասվում է ալիքային տեսությամբ, իսկ վերջինս էլ իր հերթին բացասվում է քվանտային տեսությամբ, որտեղ նախորդ տեսությունները բացասվում են, հաղթահարվում են նրանց միակողմանիությունները, իսկ վերջիններիս մեջ եղած իրականության արտացոլման ճիշտ մոմենտները պահպանվում և բարձրացվում են նոր և ավելի բարձր աստիճանի։ Այս առումով, լույսի քվանտային տեսության մեջ նախորդ տեսությունները և՛ բացասված են, և՛ պահպանված, իսկ այդ իրենից ներկայացնում է դիալեկտիկական բացասման միջոցով մտքի զարգացման փայլուն օրինակ։

Լույսի վերաբերյալ ստեղծված քվանտային տեսությունը գիտության պատմության մեջ առաջին անգամ նոր ձևով դրեց ընդհատի և անընդհատի, մասնիկի և ալիքի փոխհարաբերության հարցը։ Պարզվեց, որ լուսային մասնիկները՝ ֆոտոնները, իրենցից ներկայացնում են այնպիսի օբյեկտներ, որոնք իրենց մեջ են առնում միաժամանակ և՛ ալիքային, և՛ մասնիկային հատկություններ։ Հետագա ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ ո՛չ միայն ֆոտոնները, այլև բոլոր տեսակի «էլեմենտար» մասնիկները միաժամանակ և՛ անընդհատ են, և՛ ընդհատ, որովհետև նրանք բոլորն էլ ունեն երկակի՝ ալիքային և մասնիկային բնույթ։ Ժամանակակից ֆիզիկայում էլեմենտար մասնիկները դիտվում են որպես յուրատեսակ դաշտերի ատոմներ, կամ քվանտներ,

որոնց համար առավել ընդհանուր հատկություններից մեկը վերջիններիս երկակի բնույթն է։ Այստեղից որոշակի երևում է, որ ընդհատությունը և անընդհատությունը ոչ թե բացասում են մեկը մյուսին, ինչպես ենթադրում էին ատոմիստիկայի զարգացման նախորդ էտապներում, այլ օրգանապես կապված են իրար հետ, հանդես են գալիս որպես հակադրությունների միասնություն։

Ընդհատությունը բնութագրում է մատերիայի զարգացման որակապես տարբեր աստիճանների գոյությունը, նրանց հարաբերական կայունությունը և ինքնուրույնությունը, իսկ անընդհատությունը՝ մատերիայի զարգացման տարբեր աստիճանների միջև եղած կապը, նյութական աշխարհի միասնությունը և անսահմանափակությունը։

Իրենք, էլեմենտար մասնիկները, որպես մատերիայի բաժանման «վերջին սահման» դուրս են գալիս խորապես հակասական բարդ էություններ, որը մի անգամ ևս հաստատում է մատերիալիստական դիալեկտիկայի այն թեզը, թե իրերին և երևույթներին հատուկ են ներքին հակասությունները։ Կնշանակի, ատոմիստիկայի ժամանակակից ձևում հաղթահարված է ընդհատի և անընդհատի բացարձակ հակադրությունը, ցույց են տրված նրանց փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը, վերջիններս ներկայացված են որպես «կենսունակ», «կենդանի» հակադրությունների միասնություն։

## ԲԱՑԱՐՁԱԿԻ ԵՎ ՀԱՐԱԲԵՐԱԿԱՆԻ ՓՈԽՀԱՐԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԸՄԲՌՆՈՒՄՆ ԱՏՈՄԻԶՄԻ ՏԱՐԲԵՐ ԷՏԱՊՆԵՐՈՒՄ

ԲԱՑԱՐՁԱԿ և հարաբերական ճշմարտությունների հարաբերակցության հարցն իմացության պրոցեսի ամենակարևոր հարցերից մեկն է։ Դարեր շարունակ այն փիլիսոփայական տարբեր դպրոցների հետազոտության առարկա է եղել, տարբեր ձևով է առաջ քաշվել նաև բնագիտության պատմության առանձին էտապներում, հատկապես՝ կապված բնագիտության մեջ կատարվող նոր հայտնագործությունների հետ, որոնք սասանել են գիտության մինչ այդ ձեռք բերած նվաճումների բացարձակ, ունիվերսալ թվացող բնույթը։ Սակայն այդ հարցի գիտական լուծումն ի վիճակի չէին տալու ո՛չ փորձնական բնագիտության ներկայացուցիչները, որոնք մեծ մասամբ օգտվում էին մտածողության մետաֆիզիկական մեթոդից և ո՛չ էլ նախամարքսյան փիլիսոփաները՝ իրենց դասակարգային և պատմական սահմանափակության հետևանքով։ Նշված հարցի սկզբունքային լուծումը տվել է միայն մարքսիստական փիլիսոփայությունը։

Ելնելով բնագիտության տարբեր ճյուղերի ձեռք բերած նվաճումներից և ընդհանրացնելով դրանք, մարքսիստական փիլիսոփայությունը պաշտպանում է մատերիայի հավիտենականության գաղափարը, ցույց տալով, որ մատերիան, տիեզերքն անսպառ է ինչպես խորությամբ, այնպես էլ լայնությամբ, ապացուցում է, որ բնության մեջ ոչինչ հավերժ չէ, բացի հավերժ շարժվող և անվերջ փոփոխվող մատերիայից։ Մարդկային իմացության նյութն անսկիզբ, անվախճան և անընդհատ փոփոխվող բնությունն է։ Բնականաբար հարց է առաջ գալիս, թե ինչպիսի՞ փոխհարաբերություն գոյություն ունի մարդկային առանձին սերնդի սահմանափակ գիտելիքների և ճանաչման ենթակա անսահման բնության միջև, ործպիսի՞ հարաբերության մեջ է մարդկային սերունդների գիտելիքների ամբողջությունն արտաքին աշխարհի նկատմամբ։ Արդյո՞ք մարդկային մտածողությունն ի վիճակի է ճանաչելու արտաքին աշխարհը, թե



ոչ։ Եթե այո, ապա այդ գիտելիքները որքանո՞վ կարող են ունենալ բացարձակ ճշմարտության նշանակություն և այլն։

Այս հարցերին պատասխանելու համար պետք է նկատի ունենալ հետևյալ մոմենտները. առաջին՝ բովանդակ բնությունը. շարժվող մատերիան անսահման է, դրա համար էլ անհնար է սպառել այն միանգամից, ամբողջությամբ հասնել նրա բոլոր մասերի ավարտուն ըմբռնմանը։ Երկրորդ՝ անհրաժեշտ է նշել, որ անսպառ է ո՛չ միայն անսահման բնությունը, այլև նրա յուրաքանչյուր մասնիկ, ինչքան էլ պարզ և սպառիչ թվա այն առաջին հայացքից, որովհետև արտաքին իրերի և երևույթների հետ վերջինս կարելի է վերցնել միշտ նորանոր կապերի և հարաբերությունների մեջ։ Կնշանակի, մատերիան անսպառ է ո՛չ միայն լայնությամբ, այլև խորությամբ, դրա համար էլ մարդկային գիտելիքները չեն կարող լինել անփոփոխ և ավարտուն իրենց լրիվության իմաստով։ Այստեղից էլ պարզ է դառնում, որ մարդկային գիտելիքների մասին մետաֆիզիկական պատկերացումները, որպես քարացած, ավարտուն, անփոփոխ էություններ, պարզապես պրիմիտիվ են։

Մարդկային գիտելիքների փոփոխականությունը, նրանց զարգացումը ո՛չ միայն կապված են անսահման բնության մի բնագավառից մյուսին անցնելու, այլև նույն բնագավառի ներսում ծագման, զարգացման ու մահացման, իսկ անօրգանական աշխարհում՝ վերածման պրոցեսների հետ, որոնք պետք է արտացոլվեն մտածողության կողմից մշակվող հասկացությունների ու կատեգորիաների ճկունության մեջ։ Սակայն այդ ճկունությունը պետք է հասկանալ ոչ թե սուբյեկտիվ, այլ օբյեկտիվ իմաստով։ Նշված հանգամանքները խոսում են այն մասին, որ մարդկային գիտելիքները միաժամանակ և՛ բացարձակ են, և՛ հարաբերական։ Այդ ճշմարտությունների հարաբերակցության հարցը գիտականորեն մշակվել է մարքսիստական փիլիսոփայության կողմից։

Մարքսիստական փիլիսոփայությունը ցույց է տվել, որ բացարձակ և հարաբերական ճշմարտություններն օրգանապես կապված են իրար հետ, պայմանավորում են մեկը մյուսին։ Այդ հակադրությունները ո՛չ միայն բացառում են իրար, այլև գտնվում են միասնության մեջ և որոշ իմաստով դառնում են նույնական։ Եվ իրոք, ամեն մի բացարձակ ճշմարտություն հարաբերական է, որովհետև գոյանում է հարաբերական ճշմարտությունների գումարից, իսկ ամեն մի հարաբերական ճշմարտություն բացարձակ է, որովհետև իր մեջ պարունակում է բացարձակ ճշմարտության մասնիկ, կազմում է բացարձակ ճշմարտության կողմերից, մոմենտներից մեկը։

Մարդկային մտածողությունը,— գրում է Վ. Ի. Լենինը,— իր իսկ բնությամբ ունակ է մեզ տալու և տալիս է բացարձակ ճշմարտություն, որը գոյանում է հարաբերական ճշմարտությունների գումարից։ Մարքսիզմը ճշմարտությունը դիտում է որպես մի պրոցես, որում մարդը սուբյեկտիվ իդեայից պրակտիկայի միջոցով հանգում է օբյեկտիվ ճշմարտությանը։

Ատոմիստիկայի ողջ պատմությունը տալիս է բացարձակ և հարաբերական ճշմարտությունների դիալեկտիկա-մատերիալիստական ըմբռնման փայլուն օրինակ։ Հին աշխարհի ատոմիստներն այն կարծիքին էին, որ ատոմը հանդիսանում է մատերիայի բաժանման վերջին սահմանը, այն անբաժանելի է բացարձակ իմաստով։ Հետագայում XVII—XVIII դարերում առաջ քաշվեց այն միտքը, որ բացի էլեմենտներից (ատոմներից), գոյություն ունեն նաև այլ տեսակի մասնիկներ՝ կորպուսկուլներ (մոլեկուլներ)։ Ըստ էության, ֆրանսիա-

կան մատերիալիստները, Լոմոնոսովը և ուրիշ մտածողներ, մի քայլ առաջ կատարեցին հին աշխարհի ատոմիստների համեմատությամբ, դնելով մատերիայի բաժանման հանգուցագծի նոր հանգույցի՝ կորպուսկուլի հարցը, որը գոյանում է էլեմենտներից։ Թեև մատերիայի բաժանման հանգուցագծի այդ նոր հանգույցի ենթադրումը որոշ հիմք էր տալիս, որ ատոմը չի կարող անբաժանելի լինել բացարձակ իմաստով, սակայն այն ժամանակվա գիտության զարգացման մակարդակը և նրանում տիրապետող մեխանիցիզմը չէր կարող հնարավորություն տալ հանգելու այլ եզրակացության, դրա համար էլ ատոմները շարունակում էին դիտվել որպես նյութի բաժանման վերջին բացարձակ սահման։ Այս շրջանում ատոմա-մոլեկուլյար տեսությունը դեռ շարունակում էր մնալ որպես հիպոթեզ։

Պահանջվեց գիտական մտքի երկարատև ու համառ աշխատանք, մինչև վերջնականապես ընդունվեց ատոմա-մոլեկուլյար տեսությունը։ 1860 թվականին քիմիկոսների համաշխարհային համագումարում Կանիցարոն տվեց ատոմի և մոլեկուլի բնորոշումը՝ որպես մատերիայի երկու, որակապես տարբեր դիսկրետ մասնիկներ։ Ատոմա-մոլեկուլյար տեսությունը բարձր գնահատվեց մարքսիզմի կլասիկների կողմից և օգտագործվեց մատերիալիստական դիալեկտիկայի կարևոր դրույթների հիմնավորման համար։

Համաձայն այդ տեսության մոլեկուլը հանդես է գալիս որպես անբաժանելի ամբողջություն միայն որոշ պայմաններում։ Այն հանդիսանում է նյութի ամենափոքր անբաժանելի մասնիկը, կամ «ատոմը», որը պահպանում է վերջինիս ֆիզիկա-քիմիական հատկությունները։ Սակայն որոշ պայմաններում այն ենթակա է բաժանման բաղադրիչ մասերի՝ ատոմների։ Կնշանակի, մատերիայի այդ մասնիկի մասին կարելի է ասել, որ այն միաժամանակ և՛ բաժանելի է, և՛ բաժանելի չէ։ Որպես նյութի ամենափոքր մասնիկ՝ անբաժանելի է, իսկ քիմիական պրոցեսների ժամանակ՝ բաժանելի։ Այստեղից որոշակիորեն երևում է, որ մոլեկուլի անբաժանելիությունն ունի ոչ թե բացարձակ, այլ հարաբերական բնույթ։ Սակայն բնագետների շարքերում ատոմի վերաբերյալ դեռ պահպանվում էր նախկին մետաֆիզիկական պատկերացումը, որի համաձայն ատոմը համարվում էր մատերիայի բաժանելիության վերջին սահմանը, թեև կային առանձին բնագետներ, որոնք համամիտ չէին այդ կարծիքին։ Ֆ. Էնգելսն, ընդհանրացնելով ատոմա-մոլեկուլյար տեսության ձեռք բերած նվաճումները՝ մշակում է դիալեկտիկա-մատերիալիստական հայացք այդ հարցի վերաբերյալ։ 1867 թվականին, Մարքսին գրած իր նամակներից մեկում, Էնգելսն ուղղակի նշում է, որ «Մոլեկուլը որպես մատերիայի մանրագույն մասնիկ, ընդունակ ինքնուրույն գոյության,— լրիվ ռացիոնալ կատեգորիա է։ Հեգելի բառերով ասած,— դա «հանգույց է» մատերիայի բաժանման անսահման շարքում, հանգույց, որը չի փակում այդ շարքը, բայց հաստատում է որակական տարբերություն։ Ատոմը, որն առաջներում պատկերացվում էր որպես բաժանման սահման, այժմ միայն հարաբերություն է...» (К. Маркс, Ф. Энгельс, Избранные письма, 1948 г., էջ 187)։ Այսպիսով, Էնգելսն առաջ է քաշում այն միտքը, որ ինչպես մոլեկուլը, այնպես էլ ատոմը մատերիայի բաժանման անսահման հանգուցագծի տարբեր հանգույցներն են, որոնք պայմանավորում են ընդհանուր մատերիայի գոյության տարբեր որակական ձևերը։ Մատերիալիստական դիալեկտիկայի օգնությամբ նա հերքում է ատոմի վերաբերյալ եղած մետաֆիզիկական տեսակետը, առաջ քաշում ատոմի բաժանելիության



իդեան, որն իր փայլուն հաստատումն է գտնում XIX դարի վերջի և XX դարի սկզբի՝ բնագիտության կողմից կատարված այնպիսի հայտնագործությունների մեջ, ինչպիսիք են՝ ռադիոակտիվության երևույթը և ռադիոակտիվ քայքայման պրոցեսները։

Գիտության վերընթաց զարգացման շնորհիվ բացահայտվեց ատոմի բարդ կառուցվածքը, պարզվեց, որ նախկին բացարձակ ատոմիստիկան չի արտացոլում իրերի իսկական վիճակը։ Ատոմը, որ առաջ համարվում էր անբաժանելի, անփոփոխ, մեկընդմիշտ տրված, քարացած էություն, կորցրեց իր վաղեմի իմաստը։ Պարզվեց, որ այն ոչ թե մատերիայի բաժանման վերջին սահմանն է ընդհանրապես, այլ նրա դրսևորման կոնկրետ ձևերից մեկի՝ էլեմենտի բաժանման վերջին սահմանը։ Որոշ պրոցեսների, օրինակ, քիմիական փոխակերպումների ժամանակ, ատոմը հանդես է գալիս որպես անբաժանելի ամբողջություն, իսկ ռադիոակտիվ քայքայման ժամանակ վերածվում է իրենից տարբեր այլ ատոմների։ Այդ հանգամանքը պարտավորեցնում է, որ ատոմը դիտվի իր «կենդանի» կյանքի մեջ, միակողմանիորեն չուռեցվի վերջինիս հարաբերական կայունությունը, մի կողմ նետելով նրա փոփոխականությունը։

Այսպիսով, ատոմը, որն առաջ դիտվում էր որպես աշխարհի անփոփոխ հիմքի հավակնորդ, ենթարկվեց բաժանման։ Գիտությունը հայտնագործեց նոր մասնիկներ, որոնց կառուցվածքը մինչև այժմ դեռ հայտնի չէ, դրա համար էլ նրանց կոչում են «էլեմենտար» մասնիկներ։ Եթե մինչև այդ հայտնագործությունները, փորձում էին աշխարհի հիմքում դնել բացարձակ ատոմները, ապա այդ հայտնագործություններից հետո գիտության մեջ մշակված սովորության համաձայն, որը կարելի է համարել գիտության իներցիայի ուժը, նոր փորձեր կատարվեցին՝ գտնելու գիտության զարգացման տվյալ աստիճանին համապատասխան այն «էլեմենտար» էությունը, որից կազմվում է բովանդակ տիեզերքը։ Այդպիսի «էլեմենտար» հիմք համարվում են պրոտոնները, նեյտրոնները և էլեկտրոնները։ Առաջին երկուսից գոյանում է ատոմի միջուկը, իսկ միջուկից և էլեկտրոններից՝ չեզոք ատոմը։ Թեև այդ մասնիկների կառուցվածքը չի բացահայտված, բայց արդեն կան տվյալներ, որոնք խոսում են վերջիններիս բարդ կառուցվածքի մասին։

Այսպիսով դուրս է գալիս, որ գիտության զարգացման տարբեր էտապներում «էլեմենտար» համարվող մասնիկներն արտացոլում են մարդկային մտքի խորացման տարբեր աստիճանները միայն։

## ՄԱՍԻ ԵՎ ԱՄԲՈՂՋԻ ՓՈԽՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՏՈՄԻՍՏԻԿԱՆ

Մասի և ամբողջի փոխհարաբերության հարցը կարևոր տեղ է գրավել ինչպես բնագիտության, այնպես էլ փիլիսոփայության պատմության մեջ։ Այդ հարցը տարբեր ձևով է լուծվել գիտության զարգացման տարբեր աստիճաններում։ Դիալեկտիկական մատերիալիզմը, ընդհանրացնելով մասի և ամբողջի փոխհարաբերությունը տարբեր գիտությունների ասպարեզներում, ցույց է տալիս, որ, մի կողմից, չի կարելի ամբողջը հանգեցնել լոկ մասերի թվաբանական գումարին, անհրաժեշտ է կոնկրետ հետազոտել և բացահայտել այն որակական տարբերությունը, որ գոյություն ունի մասի և ամբողջի միջև, ամեն մի առանձին բնագավառում, իսկ մյուս կողմից՝ ամբողջ ուսումնասի-

րության ժամանակ վեր հանել մասերի փոխհարաբերության փոփոխման հետևանքով ամբողջի մեջ հանդես եկող որակական տարբերությունները։

Մասի և ամբողջի փոխհարաբերությունը տարբեր ձևով է դրսևորվում իրականության տարբեր բնագավառներում։ Այսպես, օրինակ, առանձին հատիկը ոչնչով չի տարբերվում տարբեր մեծության կույտերում գտնվող հատիկից, դրա համար էլ կարելի է պնդել, որ կույտը կազմված է առանձին հատիկների գումարից։ Այստեղ առանձին հատիկները հանդես են գալիս որպես ամբողջի՝ կույտի մասեր, որոնց կարող է վերածվել այն որպես ամբողջ։ Մասի և ամբողջի փոխհարաբերությունն այլ ձևով է դրսևորվում մեքենաների մոտ։ Մեքենայի մասին կարելի է խոսել որպես ամբողջի, այն առումով, որ այն կարելի է բաժանել առանձին մասերի։ Սակայն ամբողջական մեքենա ստանալու համար պահանջվում է ոչ թե կամայորեն միացնել այդ մասերը, ինչպես հատիկի կույտի դեպքում, այլ որոշակի ձևով և հաջորդականությամբ։

Մասի և ամբողջի փոխհարաբերությունն այլ ձևով է դրսևորվում քիմիական միացությունների բնագավառում։ Սովորաբար ընդունված է ասել, որ մոլեկուլը բաղկացած է ատոմներից. այդ նշանակում է, որ մոլեկուլը կարելի է տարրալուծել, կամ վերածել իր բաղադրիչ մասերի։ Սակայն այստեղ ևս մասի ու ամբողջի փոխհարաբերությունը չի կարելի ըմբռնել այնպես, ինչպես հատիկի կույտում։ Բանը նրանումն է, որ քիմիական միացությունների մեջ հաճախ մենք գործ ենք ունենում ոչ թե ատոմների, այլ վերջիններից առաջացած իոնների, կամ լիցքավորված մասնիկների հետ։

Մասի և ամբողջի փոխհարաբերությունն ավելի է խորանում, երբ մենք անցնում ենք ատոմի ներքին կառուցվածքի ուսումնասիրությանը։ Սովորաբար ընդունված է ասել, որ ատոմը բաղկացած է միջուկից և էլեկտրոնային թաղանթից։ Սակայն ատոմը չի կարելի համարել իր բաղադրիչ մասերի սոսկ մեխանիկական գումար։ Այսպես, օրինակ, ջրածնի ատոմը կազմված է պրոտոնից և էլեկտրոնից, սակայն վերջիններս նույնական չեն ազատ վիճակում գտնվող պրոտոնի և էլեկտրոնի հետ։ Ատոմի առաջացման ժամանակ այդ մասնիկները ենթարկվում են որոշակի փոփոխության, կորցնում իրենց մասսայի մի մասը։ Դրա համար էլ, որպեսզի ջրածնի ատոմից ետ ստացվի պրոտոն և էլեկտրոն, անհրաժեշտ է որևէ ճանապարհով ետ վերադարձնել վերջիններիս կորցրած մասսան։ Մասսաների կորուստն ավելի մեծ է միջուկի առաջացման ժամանակ։ Միջուկի կազմի մեջ մտնող մասնիկները՝ պրոտոններն ու նեյտրոններն է՛լ ավելի խոր փոփոխության են ենթարկվում միջուկի առաջացման ժամանակ։ Եվ, չնայած դրան, մենք շարունակում ենք պնդել, որ ատոմը կազմված է պրոտոններից ու նեյտրոններից։ Կնշանակի, մասի և ամբողջի ըմբռնումն այստեղ որոշակի ճշգրտման կարիք ունի։

Մինչև այստեղ մեր նկարագրած մասի և ամբողջի փոխհարաբերության տարբեր դրսևորումների համար ընդհանուրը նախ այն է, որ ամբողջն ավելի մեծ է, քան մասը։ Մյուս բնորոշ առանձնահատկությունն այն է, որ բոլոր ամբողջները, վերջին հաշվով, կարելի է վերածել իրենց բաղադրիչ մասերի, միայն այն տարբերությամբ, որ մի դեպքում ամբողջի և ազատ վիճակում գտնվող մասերի միջև ոչ մի տարբերություն չկա, իսկ մյուս դեպքում՝ այդ տարբերությունն աստիճանաբար խորանում է։

Մասի և ամբողջի նման պատկերացումը որոշակիորեն կապված է բացարձակ ատոմիզմի գաղափարի հետ, որի համաձայն պետք է գոյություն ունենա



իրերի և առարկաների պարզ և անբաժանելի հիմք՝ ատոմ։ Մինչև «էլեմենտար» մասնիկների հայտնագործումը, մատերիայի ճանաչման պրոցեսը տեղի է ունեցել հիմնականում մեծ մասնիկներից փոքրին անցնելու ճանապարհով։ Գիտությունը ցույց է տվել, որ մարմինները կազմված են մոլեկուլներից, մոլեկուլներն ատոմներից, ատոմները միջուկից ու թաղանթից, իսկ միջուկը՝ «էլեմենտար» մասնիկներից։ Ընդ որում մասի և ամբողջի փոխհարաբերությունը դրսևորվել է մատերիայի տարբեր որակի դիսկրետ մասնիկների, օրինակ՝ մոլեկուլների և նրա կազմի մեջ մտնող ատոմների փոխհարաբերության ձևով։ Ազատ վիճակում գտնվող ատոմների և մոլեկուլների հատկությունները պայմանավորված են նրանց կառուցվածքով և ոչ թե փոխազդեցությամբ։

Բոլորովին այլ պատկեր ենք տեսնում այժմ հայտնի 32 «էլեմենտար» մասնիկների փոխազդեցության և հատկությունների ուսումնասիրման ժամանակ։ Պարզվում է, որ մինչև այժմ ընդունված և պատմականորեն արդարացած այն տեսակետը, թե իբր ամեն մի մարմին պետք է կազմված լինի ավելի փոքր մարմիններից և ամբողջը պետք է մեծ լինի մասից, կարիք ունի լուրջ վերանայման։ Բոլոր էլեմենտար մասնիկները տարբեր վերածումների ճանապարհով կապված են իրար հետ, դրա համար էլ նրանցից մեկի կերպարն ստեղծելու համար պահանջվում է բոլոր մասնիկների բարդ կոմպոզիցիա, իսկ այս դեպքում հարցականի տակ է դրվում այժմ հայտնի էլեմենտար մասնիկները որևէ մեկ ֆունդամենտալ մասնիկից մակաբերելու ճանապարհը։ Եթե իսկապես, ամեն մի մասնիկի կերպարն ստեղծելու համար անհրաժեշտ են բոլոր մնացած «էլեմենտար» մասնիկները, ապա բնականորեն հարց է առաջանում, որոնե՞լ, գտնե՞լ այն նոր ֆունդամենտալ «մատերիան», որն ընդհանուր կլինի բոլոր «էլեմենտար» մասնիկների համար և ավելի էլեմենտար՝ վերջիններիս համեմատությամբ։ Թե ինչպես կլուծվի այս խնդիրը, դա հետագայի հարց է։ Այստեղ անհրաժեշտ է ընդգծել, որ եթե կլասիկ ատոմիստիկայում ատոմները դիտվում էին իրենց փոխազդեցությունից դուրս, ապա ժամանակակից ատոմիստիկան ցույց է տալիս, որ «էլեմենտար» մասնիկների հատկությունները փոխադարձաբար կապված են իրար հետ, պայմանավորում են մեկը մյուսին, ընդ որում այդ փոխազդեցությունն այնքան խոր ու այնքան բարդ է, որ նրանցից յուրաքանչյուրի կերպարն ստեղծելիս որոշակի մասնակցություն են ունենում բոլոր մնացած մասնիկները, կամ ամեն մի մասնիկի կերպարն ստեղծելիս պահանջվում են գույների նույն 32 տարբեր երանգները։

Ժամանակակից ատոմիստիկայի բնորոշ առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ կլասիկ ատոմիստիկայի այն պատկերացումը, թե «որևէ բան» կազմված է «ինչ-որ բանից» կորցնում է իր անմիջական իմաստը։ Ժամանակակից ատոմիստիկան, որը հիմնվում է «էլեմենտար» մասնիկների փոխազդեցության ուսումնասիրության վրա, ցույց է տալիս, որ «էլեմենտար» մասնիկների վերածման պրոցեսը դա բարդ սիստեմի քայքայում չէ իր բաղադրիչ մասերի, ինչպես ենթադրում էին անցյալում։ Այդ վերածման պրոցեսում տեղի է ունենում մի տեսակի մասնիկներից մյուսների առաջացում, որոնք պատրաստի ձևով գոյություն չունեն վերածվող մասնիկում, իսկ այդ նշանակում է, որ այստեղ մենք գործ ունենք հին մասնիկների ոչնչացման և նոր մասնիկների առաջացման պրոցեսի հետ։ Դժվար չէ նկատել, որ այդ նոր առաջացած մասնիկները չի կարելի համարել քայքայվող մասնիկների բաղադրիչ մասեր, թեև դրանք որոշակի փոխազդեցությամբ կապված են իրար հետ։

«Էլեմենտար» մասնիկների փոխազդեցությունը տարբեր պայմաններում տարբեր ձևերով է ընթանում։ Այսպես, օրինակ, էլեկտրոններն ու պոզիտրոններն ընդհարվելով վեր են ածվում ֆոտոնների, իսկ վերջիններս, ատոմի էլեկտրամագնիսական դաշտում, իրենց հերթին նորից առաջացնում են էլեկտրոն և պոզիտրոն։ Այս վերածման ժամանակ մի տեսակի մասնիկների ոչնչացման պրոցեսը, միաժամանակ նոր տեսակի մասնիկների առաջացման պրոցես է։ «Էլեմենտար» մասնիկների ձևափոխման մյուս եղանակի դեպքում մեծ մասսայի էլեմենտար մասնիկները վերածվում են ավելի փոքր մասսայի մասնիկների։ Այդպես է տեղի ունենում դրական պի-մեզոնի վերածումը դրական մյու-մեզոնի և նեյտրինոյի, դրական մյու-մեզոնի վերածումը պոզիտրոնի, նեյտրինոյի, անտինեյտրինոյի և այլն։ Բոլորովին այլ կերպ է ընթանում նոր մասնիկների առաջացման պրոցեսը բարձր էներգիա ունեցող մասնիկների փոխազդեցության դեպքում։ Այստեղ այն մասնիկը, որը ենթարկվում է ռմբակոծման բարձր էներգիա ունեցող մասնիկով, իր «ատմոսֆերայի» տարբեր մասերում կարող է առաջացնել տարբեր տեսակի մասնիկներ, որոնք իրենց մասսայով կարող են լինել փոքր, հավասար և մեծ ռմբակոծվող մասնիկի մասսայից։ Այս դեպքում ռմբակոծվող մասնիկը դառնում է յուրատեսակ օբյեկտ, որն իր վիրտուալ տրոհման շնորհիվ ռմբակոծվող մասնիկից ստացվող էներգիան ձևափոխում է համապատասխան մասնիկների։ Կնշանակի, մասի և ամբողջի փոխհարաբերության հարցն այս դեպքում սերտորեն կապվում է «էլեմենտար» մասնիկների վիրտուալ տրոհման հետ։

Վերը շարադրվածից որոշակիորեն երևում է, որ տարբեր տեսակի «ատոմներ»-ը բնութագրվում են տարբեր բարդությամբ։ Դա պայմանավորված է նրանով, որ ատոմ հասկացության մեջ յուրատեսակ ձևով զուգակցվում են բաժանելին և անբաժանելին, ամբողջը և մասը, պարզը և բարդը։ Այս առումով բոլոր տեսակի ատոմները, անկախ իրենց բարդության աստիճանից, հանդես են գալիս որպես հակադրությունների միասնություն, իրենցից ներկայացնում են մատերիայի զարգացման անսահման հանգուցագծի որակապես տարբեր հանգույցներ, կամ մատերիայի դրսևորման կոնկրետ ձևեր։ Թեև բացարձակ ատոմիզմը փորձում է ամեն մի ժամանակավոր անցողակի, պատմական զարգացման որոշ ժամանակաշրջանում անբաժանելի ներկայացող մասնիկները որակել որպես մատերիայի բաժանելիության վերջին սահման՝ այդ բառի սկզբնական իմաստով, սակայն գիտության զարգացման հաջորդ քայլը բացահայտում է այդ «բացարձակ» ատոմի մեջ ներփակված հարաբերական կողմը։

Վերը շարադրվածից երևում է, որ «էլեմենտար» մասնիկների միջև եղած ուղղակի և անուղղակի կապերը, նրանց վերածման և փոխազդեցության տարբեր ձևերը, նոր և հարուստ նյութ են բերում բնության դիալեկտիկային։ Մատերիայի իմացության այս էտապի համար բնորոշ է «հոսունությունը», որտեղ ակնհայտ ձևով դրսևորվում են նյութական մասնիկների փոփոխականությունը, նրանց միջև եղած համընդհանուր կապը։ Ատոմի վերաբերյալ եղած նախկին քարացած պատկերացումն իր տեղը զիջում է «էլեմենտար» մասնիկների ունիվերսալ վերածման ըմբռնմանը։ Մատերիայի փոխակերպումն այս բնագավառում հիմնականում ընթանում է շատ մեծ արագությամբ։ Ակնթարթային տևողություն ապրող «էլեմենտար» մասնիկների մոտ թվում է, թե «կյանքը» և «մահը» ծնվում են միաժամանակ, կամ ծագման և ոչնչացման պրոցեսները փոխադարձաբար ներթափանցում են։

---

# ՇԱՀՈՒՅԹԻ ԴԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ*

Մ. ԱԴՈՆՑ

«ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ տնտեսության մասշտաբների ընդլայնումը, գիտության ու տեխնիկայի արագ պրոգրեսը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումներում,— պահանջում են ավելի բարձրացնել գիտական պլանավորման մակարդակը։ Մինչդեռ պետպլանի, պետտնտխորհի և մյուս պլանային օրգանների աշխատանքները շատ բանով չեն համապատասխանում մեր երկրի էկոնոմիկայի զարգացման ժամանակակից պահանջներին»։ Կոմունիստական շինարարության ներկայիս պահանջներին համապատասխան ժողովրդական տնտեսության պլանավորման մակարդակը բարձրացնելու համար ամենից առաջ պետական պլանի բոլոր բաժինները պետք է իրար հետ համաձայնեցվեն և հիմնավորվեն տեխնիկա-տնտեսական հաշվումներով։ Պետք է այնպես կազմակերպել պլանավորման գործը, որ ձեռնարկությունները շահագրգռված լինեն ավելի արդյունավետ օգտագործելու իրենց տրամադրության տակ եղած նյութական միջոցներն ու աշխատուժը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու ինքնարժեքը, թողարկելու պահանջվող ասորտիմենտի բարձրորակ արտադրանք։ Այդ նպատակով պետք է ավելի խոր ուսումնասիրվեն սոցիալիզմի տնտեսական օրենքներն ու կատեգորիաները և ամբողջովին դրանք ի սպաս դրվեն մեր երկրի հետագա տնտեսական առաջընթացին, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցմանը։

Սոցիալիզմի տնտեսական կատեգորիաներից մեկը շահույթն է, որը միաժամանակ ժողովրդական տնտեսության պլանի կարևորագույն ցուցանիշներից է, ընդլայնված վերարտադրության հիմնական աղբյուրներից մեկը։

***

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ տնտեսության մեջ շահույթն իր էությամբ արմատապես տարբերվում է կապիտալիստական շահույթից։

Կապիտալիստական հասարակարգում շահույթը հավելյալ արժեքի փոխակերպված ձևն է, այն արտահայտում է շահագործողական հարաբերություններ։ Շահույթը կապիտալիստական արտադրության նպատակը և շարժիչ ուժն է։ Կապիտալիզմի պայմաններում արտադրության տարբեր ճյուղերի համամասնությունները «կարգավորվում» են շահույթի նորմայով։ Դրանով է որոշ-

* Տպագրվում է մտքերի փոխանակության կարգով։ Խմբ.։

վում տնտեսական գործունեության արդյունավետությունը։ Հանդիսանալով կապիտալիստական տնտեսության շարժիչ ուժը, շահույթը միաժամանակ սրում և խորացնում է կապիտալիզմի հակասությունները։

Սոցիալիստական հասարակարգում շահույթը շահագործումից ազատ մարդկանց աշխատանքով ստեղծված հավելյալ արդյունքի մասն է, որն ազգային եկամտի բաշխման պրոցեսում պետական ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների զուտ եկամտի ձև է ընդունում։ Նրա գոյությունը սոցիալիստական հասարակարգում պայմանավորված է ապրանքափողային հարաբերությունների առկայությամբ և տնտեսությունը տնտհաշվարկային մեթոդով վարելու անհրաժեշտությամբ։ Շահույթը սերտորեն կապված է ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի և նյութական շահագրգռվածության սկզբունքի հետ։ Մեր հասարակարգում շահույթն արտադրության նպատակը և շարժիչ ուժը չէ։ Մեզ մոտ ժողովրդա-տնտեսական համամասնությունները որոշվում են ոչ թե շահույթի նորմայով, այլ ժողովրդական տնտեսության պլանաչափ պրոպորցիոնալ զարգացման օրենքով, շահույթն ինքը ստեղծվում ու կազմավորվում է պլանային կարգով։ Չնայած այս բոլորին, շահույթի դերը սոցիալիստական տնտեսության մեջ չափազանց մեծ է։

Ամենից առաջ շահույթը սոցիալիստական կուտակման գլխավոր աղբյուրներից մեկն է, որի շնորհիվ իրականացվում է ընդլայնված վերարտադրությունը։ Սոցիալիստական հասարակարգում հավելյալ արդյունքի գլխավոր բաղադրամասերը՝ շահույթն ու շրջանառության հարկը, օգտագործվում են կապիտալ ներդրումների ֆինանսավորման, շրջանառու միջոցների ավելացման, ինչպես նաև ոչ-արտադրական ոլորտի պահպանման համար։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ, 1961 թվականին ստացված շահույթը կազմել է 26,9 մլրդ ռուբլի, իսկ շրջանառության հարկը՝ 30,9 մլրդ ռուբլի։ Շահույթի և շրջանառության հարկի այդ ընդհանուր գումարից, ինչպես նաև ամորտիզացիայի հաշվին, 1961 թվականին կատարված կապիտալ ներդրումները պետական ու կոոպերատիվ ձեռնարկություններում և կազմակերպություններում կազմել են 32,7 մլրդ ռուբլի։ Ժողովրդական տնտեսության պլանով նախատեսված է 1963 թվականին շահույթի ընդհանուր գումարը հասցնել 35,7 մլրդ ռուբլու, իսկ շրջանառության հարկը՝ 33,8 մլրդ ռուբլու։

Շահույթը տնտհաշվարկային սիստեմի կարևոր օղակներից մեկն է և տնտհաշվարկային ձեռնարկությունների տնտեսական գործունեության չափանիշը։ Նման ձեռնարկությանը տրամադրվում են պահանջվող քանակի հիմնական և շրջանառու ֆոնդեր, պետական պլանի և գործող օրենքների սահմաններում նրան տրվում է արտադրական-տնտեսական գործունեության ինքնուրույնություն ու նրանից պահանջվում է արդյունավետ օգտագործել դրանք և իր արտադրանքի իրացումից ստացված եկամուտներով ոչ միայն ծածկել իր ծախսերը, այլև շահույթի ձևով որոշ գումարի զուտ եկամուտ ունենալ։ Դեռևս ոչ բոլոր ձեռնարկություններին է հաջողվել դառնալ եկամտաբեր. կան այնպիսիք, որոնք վնասով են աշխատում։ Բայց ոչ-եկամտաբեր աշխատանքը տնտհաշվարկի էությունից չի բխում, այն պլանավորման և գոյություն ունեցող գնագոյացման սիստեմի թերությունների արգասիք է։ Վնասով աշխատող ձեռնարկությունը տնտհաշվարկի սկզբունքները լիակատար կիրառել չի կարող։

Շահույթը պետական ձեռնարկության զուտ եկամուտն է, որն իրենից



ներկայացնում է ձեռնարկության մեծածախ գնի և ինքնարժեքի տարբերությունը։ Այն կազմավորվում է ոչ թե հավելյալ արդյունքի արժեքի վերաբաշխման միջոցով, այլ հիմնականում, ստեղծվում է տվյալ ձեռնարկության կամ արտադրության ճյուղի աշխատողների աշխատանքով։ Շահույթի մեծությունը կախված է տնտհաշվարկային ձեռնարկության աշխատանքի ցուցանիշներից. այլ հավասար պայմաններում, որքան արտադրությունը լավ կազմակերպված լինի տվյալ ձեռնարկությունում, ցածր լինի արտադրանքի ինքնարժեքը, այնքան բարձր կլինի շահույթը։

Շահույթը ձեռնարկության նյութական շահագրգռվածության բարձրացման կարևորագույն լծակներից մեկն է։ Եթե շրջանառության հարկն անմիջապես և ամբողջովին տրվում է պետական բյուջեին, ապա շահույթը որոշ ժամանակ մնում է ձեռնարկության հաշվեկշռում, որի զգալի մասն օգտագործվում է ձեռնարկության կարիքների՝ շրջանառու միջոցների պակասը լրացնելու, կապիտալ ներդրումները ֆինանսավորելու և այլ միջոցառումների համար։ Շահույթներից մասհանումներ են կատարվում ձեռնարկության ֆոնդին, որն օգտագործվում է նոր տեխնիկայի ներդրման, աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման և պարգևատրումների համար։ Այդ պատճառով էլ յուրաքանչյուր ձեռնարկություն շահագրգռված է կատարելու և գերակատարելու շահույթի ստացման պլանները, քանի որ դրանք թերակատարելու դեպքում նա չի կարողանա սահմանված ժամկետներին ապահովել իր կապիտալ ներդրումների ֆինանսավորումը, շրջանառու միջոցների աճը և համապատասխան հատկացումներ անել ձեռնարկության ֆոնդին։

1960 թվականին ՍՍՌՄ պետական ձեռնարկությունների ու կազմակերպությունների ստացած շահույթների 64,4 տոկոսը հատկացվել է պետական բյուջեին, իսկ 35,6 տոկոսը թողնվել է ձեռնարկությունների տրամադրության տակ։ Նույն թվականին ձեռնարկությունների ֆոնդերից աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, նրանց պարգևատրման, նոր տեխնիկայի ներդրման և այլ նպատակներով օգտագործվել է 1351 մլն. ռուբլի։ Շահույթի մասհանումներից գոյացած ձեռնարկությունների ֆոնդերը Հայկական ՍՍՌ-ում կազմել են մոտ 7 մլն ռուբլի։

* * *

ՇԱՀՈՒՅԹԻ բացարձակ չափը, սակայն, դեռ չի բնորոշում ձեռնարկության աշխատանքի որակը, որովհետև նրա բացարձակ մեծությունը, բացի ձեռնարկության աշխատանքի ցուցանիշներից, որոշվում է նաև հենց ձեռնարկության մեծությամբ։ Այս կապակցությամբ էլ շահույթի բացարձակ մեծությունը պետք է տարբերել նրա հարաբերական մեծությունից կամ եկամտաբերության նորմայից։ Նույն տեսակի արտադրանք թողարկող երկու ձեռնարկություններից վատ աշխատող, բայց մեծ ձեռնարկությունը կարող է ավելի շատ շահույթ ստանալ, քան լավ աշխատող, բայց փոքր ձեռնարկությունը։

Եկամտաբերության մակարդակն ավելի ճիշտ է բնորոշում նույն արտադրանքը թողարկող ձեռնարկությունների աշխատանքի հարաբերական արդյունավետությունը։ Այն որոշվում է ձեռնարկության շահույթի և արտադրանքի ինքնարժեքի ընդհանուր գումարի հարաբերությամբ։

Գնագոյացման գործող սիստեմի պայմաններում, երբ ապրանքների գները

շեղվում են իրենց արժեքից, եկամտաբերության աստիճանն ամենից առաջ որոշվում է գնի մակարդակով և նրա կառուցվածքով։ Այն ձեռնարկությունները, որոնց արտադրանքի գները ցածր են ո՛չ միայն արժեքից, այլև ինքնարժեքից, կաշխատեն վնասով։ Իսկ այն ձեռնարկությունները, որոնց արտադրանքի գներն արժեքից բարձր են, կունենան բարձր եկամտաբերություն։ Բայց կարող են լինել այնպիսի ձեռնարկություններ, որոնց արտադրանքի գները արժեքից չափազանց բարձր են, բայց նրանց եկամտաբերությունը ցածր է, դա պայմանավորված է զուտ եկամտի կառուցվածքով՝ թե տվյալ ապրանքի գնի մեջ արտահայտվող զուտ եկամուտն ինչ հարաբերությամբ է բաշխվում շահույթի և շրջանառության հարկի վրա։ Այլ հավասար պայմաններում գնի մեջ շրջանառության հարկի ավելացումը նվազեցնում է շահույթը և հակառակը։ Գոյություն ունեն այնպիսի ձեռնարկություններ, որոնց արտադրանքի գներում զուտ եկամուտն ամբողջությամբ արտահայտվում է շրջանառության հարկի ձևով և այդ պատճառով էլ նրանք շահույթ չեն ստանում, կամ նույնիսկ վնասով են աշխատում։ Արտադրության տարբեր ճյուղերի եկամտաբերության խայտաբղետությունը գերազանցապես պայմանավորված է գների մակարդակների և կառուցվածքի տարբերություններով։

Նախնական տվյալներով Հայկական ՍՍՌ արդյունաբերության տարբեր ճյուղերի ձեռնարկությունների եկամտաբերությունը 1962 թվականին հետևյալ պատկերն է ունեցել (շահույթի հարաբերությունն ինքնարժեքին, տոկոսներով).

| | պլանը | կատարողականը |
|---|---|---|
| Ամբողջ արդյունաբերությունը . . . . | 9,7 | 10,4 |
| Այդ թվում՝ | | |
| Գունավոր մետալուրգիա . . . . | 26,1 | 26,7 |
| Քիմիական արդյունաբերությունը . . . | 16,3 | 18,0 |
| Էլեկտրաէներգիայի արտադրությունը . . . | —12,9 | —9,5 |
| Շինանյութերի արտադրությունը . . . | 14,7 | 14,6 |
| Թեթև արդյունաբերությունը . . . . | 3,7 | 3,8 |
| Սննդի արդյունաբերությունը . . . . | 10,0 | 10,3 |
| Այդ թվում՝ | | |
| Պանրի և յուղի արտադրությունը . . . | 41,9 | 40,1 |
| Մսի արտադրությունը . . . . | 3,0 | —0,6 |
| Շաքարի արտադրությունը . . . . | 38,0 | 46,4 |

Ինչպես երևում է աղյուսակից, Հայկական ՍՍՌ արդյունաբերության տարբեր ճյուղերի ձեռնարկությունների եկամտաբերության մակարդակները խիստ տարբեր են։ Օրինակ, գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների եկամտաբերության մակարդակը 1,5 անգամ բարձր է քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների մակարդակից, իսկ շաքարի գործարանինը՝ ավելի քան 12 անգամ բարձր թեթև արդյունաբերության ձեռնարկությունների եկամտաբերության մակարդակից։ Դրա գլխավոր պատճառը ոչ թե գունավոր մետալուրգիայի և շաքարի արտադրության ձեռնարկությունների լավ աշխատանքն է քիմիական արդյունաբերության և թեթև արդյունաբերության ձեռնարկությունների համեմատությամբ, այլ նրանց արտադրանքի գների մակարդակների և կառուցվածքի տարբերությունը։



Նման տարբերություններ կան ո՛չ միայն արդյունաբերության տարբեր ճյուղերի, այլև նույն ճյուղի ձեռնարկությունների եկամտաբերության մակարդակների միջև։ Օրինակ, Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի սիստեմում գործող էլեկտրատեխնիկական արդյունաբերության և սարքաշինական 23 ձեռնարկությունների եկամտաբերության մակարդակները տարբեր են։ Հայէլեկտրագործարանի 1962 թվականի պլանային եկամտաբերությունը 4,7 անգամ բարձր է Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի եկամտաբերությունից, իսկ էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների գործարանինը ավելի քան 20 անգամ բարձր է սարքաշինական գործարանի եկամտաբերությունից։ Այդ ցույց է տալիս, որ ձեռնարկության տնտեսական գործունեությունը գնահատել և նյութական խրախուսման ֆոնդին շահույթներից համապատասխան մասհանումներ անել միայն եկամտաբերության ցուցանիշի հիման վրա (ինչպես առաջարկում է պրոֆեսոր Լիբերմանը), ճիշտ չի լինի։

Եկամտաբերությունը ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման և օգտագործվող արտադրական ֆոնդերի արդյունավետության որոշման ցուցանիշ կարող էր լինել միայն այն դեպքում, երբ ապրանքների գները համապատասխանեին իրենց արժեքին, և զուտ եկամուտն արտահայտվեր մեկ միասնական ձևով, երբ ձեռնարկությունները նույն որակի հումքով միատեսակ արտադրանք թողարկեին։ Նույն տեսակի կոշիկ արտադրող երկու ձեռնարկություններից արտադրական ֆոնդերն ավելի արդյունավետ է օգտագործում այն ձեռնարկությունը, որի եկամտաբերությունը բարձր է։

***

Սոցիալիստական տնտեսության մեջ շահույթի դերի ու նշանակության խոր ու բազմակողմանի վերլուծությունը տրված է ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան (1962 թ.) պլենումում Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ։ Այստեղ նա նշում է տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում շահույթի երկու կողմերը հաշվի առնելու անհրաժեշտությունը։ «Եթե վերցնենք տնտեսության մեր ամբողջ սոցիալիստական սիստեմը, ընդհանուր առմամբ,— ասում է ընկ. Խրուշչովը,— ապա շահույթը նրա համար որպես տնտեսական կատեգորիա չունի այն սոցիալական իմաստը, որով այն բնութագրվում է կապիտալիստական հասարակարգի պայմաններում։ Կապիտալիստական արտադրության մեջ շահույթն արտադրության նպատակն է, նրա զարգացման հիմնական խթանը։ Տնտեսության սոցիալիստական սիստեմում գլխավոր նպատակը հասարակության պահանջմունքների բավարարումն է։

Բայց այլ բան է առանձին ձեռնարկությունը։ Տվյալ դեպքում շահույթի հարցը կարևոր նշանակություն ունի որպես այդ ձեռնարկության գործունեության արդյունավետության տնտեսական ցուցանիշ։ Ինչպե՞ս է աշխատում ձեռնարկությունը՝ վնասո՞վ, թե՞ շահույթով, կլանո՞ւմ է հասարակական միջոցները, թե՞ բազմապատկում դրանք. այս հարցը հսկայական նշանակություն ունի։ Առանց շահույթը հաշվի առնելու անհնար է որոշել, թե ինչ մակարդակով է վարվում ձեռնարկության տնտեսությունը, և ինչպիսի ավանդ է մուծում նա համաժողովրդական ֆոնդի մեջ»։

Սոցիալիզմի օրոք արտադրության միջոցներն ու աշխատուժն արտադրության տարբեր ճյուղերի միջև բաշխվում են ոչ թե արժեքի, այլ ժողովրդական

տնտեսության պլանաչափ-պրոպորցիոնալ զարգացման օրենքի հիման վրա։ Սոցիալիզմի երկրներում, եթե հասարակությունն արտադրանքի որևէ տեսակի պահանջ ունի, ապա, անկախ տվյալ արտադրության եկամտաբերությունից, այն թողարկվում է։ Եթե հասարակական մասշտաբով տնտեսական համամասնություններ սահմանելու գործում շահույթը վճռական դեր չունի, ապա առանձին ձեռնարկության տնտեսական գործունեության մեջ շահույթի դերն ու նշանակությունն այլ են։ Հենց այդ ի նկատի ունենալով է, որ ժողովրդական տնտեսության զարգացման պլանները կազմվելուց հետո, յուրաքանչյուր ձեռնարկություն պետք է ձգտի նվազագույն ծախսումներով կատարել իր պլանային առաջադրանքները։

Հասարակության համար շատ կարևոր է, թե ձեռնարկությունը տվյալ քանակի արտադրանք թողարկելու համար ինչքան նյութական և աշխատանքային միջոցներ է ծախսում և, հետևապես, ինչքան շահույթ է ապահովում։ Հավասարամեծ կապիտալ ներդրումներով նույն տեսակի արտադրանք թողարկող ձեռնարկություններ կառուցելու դեպքում նախընտրելի է այն վարիանտը, որի թողարկած արտադրանքի ինքնարժեքն ամենից ցածր է, իսկ շահույթը բարձր։ Եթե հասարակության նույն պահանջը կարելի է բավարարել իրար փոխարինող արտադրանքի տեսակներով, ապա նախընտրելի է այն տեսակի արտադրանքի արտադրության առավել զարգացումը, որի ինքնարժեքն ավելի ցածր է։ Այստեղից էլ երևում է, որ յուրաքանչյուր ձեռնարկության գլխավոր խնդիրն է՝ ավելի արդյունավետ օգտագործելով նյութական, աշխատանքային ու ֆինանսական միջոցները, կիրառելով նոր տեխնիկան և առաջավոր տեխնոլոգիան, վերացնել բոլոր տեսակի կորուստներն ու անարտադրողական ծախսումները, իջեցնելով արտադրանքի ինքնարժեքը՝ բարձրացնել նրա եկամտաբերությունը։ Այս է հասարակական ֆոնդերի ավելացման վճռական գործոնը, որն օգտագործվում է սոցիալիստական արտադրության ընդլայնման ու բնակչության բարեկեցության անշեղ բարձրացման համար։

* * *

ՀԱՐԿ է նշել, որ անձի պաշտամունքի տարիներին, ինչպես մեր կյանքի տարբեր, նմանապես և տնտեսության բնագավառում, անտեսվում էր տնտեսական օրենքների վճռական դերը։

Մեծ անջրպետ կար Ստալինի խոսքի ու գործի միջև։ Խոսելով տնտեսական օրենքների օբյեկտիվ բնույթի մասին, միշտ չէ, որ նա հաշվի էր առնում դրանց պահանջները։ Պլանավորման և տնտեսական ղեկավարման բնագավառում քիչ չէին վոլյունտարիզմի երևույթները։ Եթե քմահաճ կերպով անցկացվող որևէ ձեռնարկում ձախողվում էր, և տնտեսական կյանքում առաջանում էին մասնակի անհամամասնություններ, կամ, այսպես կոչված՝ նեղ տեղեր, ապա այդ բոլորը, տեղի թե անտեղի, գնահատվում էին որպես վերելքի դժվարություններ։

Առանձնապես թերագնահատված էր արժեքի օրենքի և արժեքային կատեգորիաների, ինչպես և շահույթի դերը։ Երկար ժամանակ ապրանք և արժեք կատեգորիաները խորթ երևույթ էին համարվում սոցիալիստական տնտեսության համար։ Ժխտելով արժեքի գոյությունը սոցիալիստական տնտեսության մեջ, գինը զրկում էին օբյեկտիվ նյութական հիմքից, դրանով իսկ արդարացնելով գների սահմանման քմահաճ պրակտիկան։ Զրկելով գինը իր օբյեկտիվ



հիմքից, նրա բաղկացուցիչ մասը կազմող շահույթը ևս զրկում էին իր տնտեսական բովանդակությունից, այն համարելով միայն արտաքին ձև։

Հետագայում Ստալինն ստիպված ընդունեց ապրանքային արտադրության և արժեքի օրենքի գոյությունը սոցիալիստական տնտեսության մեջ, սակայն նա խիստ սահմանափակում էր ապրանքային արտադրության ոլորտը և, փաստորեն, անտեսում էր արժեքի օրենքի պահանջները։ Ապրանքային արտադրության ոլորտից նա դուրս էր թողնում ժողովրդական տնտեսության պետական սեկտորում ստեղծված արտադրության միջոցները և այդ կապակցությամբ գտնում էր, որ արժեքի օրենքը գործում է միայն կոլտնտեսային արտադրության ոլորտում։ Գործնականում, կոլտնտեսային արտադրանքի գները պլանավորելիս հաշվի չէին առնում արժեքի օրենքի պահանջները և սահմանում էին գյուղատնտեսական մթերքների պետական մթերումների այնպիսի գներ, որոնք ցածր էին ո՛չ միայն արժեքից, այլև ինքնարժեքից։

Գների պլանավորման այդ արատավոր պրակտիկան վկայում էր այն մասին, որ խիստ թերագնահատվում էր շահույթի և եկամտաբերության դերը սոցիալիստական տնտեսության մեջ։ Փաստորեն անտեսվում էր շահույթի դերը տնտեսական հաշվարկում, ձեռնարկությունների նյութական շահագրգռվածության բարձրացման և հասարակական ֆոնդերի ստեղծման գործում։ Ստալինն առանձին ձեռնարկությունների եկամտաբերությունը հակադրում էր ընդհանուր, այսպես կոչված՝ բարձրագույն եկամտաբերությանը։ «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» գրքույկում նա գրում էր, որ առանձին ձեռնարկությունների կամ արտադրության ճյուղերի ժամանակավոր ու անկայուն եկամտաբերությունը ոչ մի կերպ չի կարող համեմատվել կայուն ու հաստատուն եկամտաբերության այն բարձրագույն ձևերի հետ, որոնք գոյություն ունեն տնտեսության սոցիալիստական սիստեմում։ Դրանով նա «եկամտաբերություն» հասկացողությունը կտրում էր շահույթից։ Եկամտաբեր և ոչ եկամտաբեր ձեռնարկությունների տնտեսական գործունեության մեջ Ստալինը տարբերություն չէր գտնում. վնասով աշխատելը համարվում էր նորմալ երևույթ և նույնիսկ սոցիալիստական տնտեսության առավելություն։

Շահույթի և եկամտաբերության նկատմամբ ունեցած այդպիսի մոտեցումն ապակողմնորոշում էր տնտեսավարներին և ձեռնարկության աշխատողներին չէր մոբիլիզացնում՝ պայքարելու հանուն նյութական արժեքների խնայողաբար և արդյունավետ օգտագործման։

* * *

ԱՆՀԱՏԻ պաշտամունքի վերացումն արմատապես փոխեց վիճակը ժողովրդական տնտեսության պլանավորման ու կառավարման ասպարեզներում։ Հաղթահարվեց պլանավորման բնագավառում տիրապետող սուբյեկտիվիզմը, բարձրացվեց տնտեսական գիտությունների դերը՝ երկրի արտադրողական ուժերի զարգացման գործում, ավելի լայն ու արդյունավետ օգտագործվեցին տնտեսական օրենքներն ու կատեգորիաները, վերջ տրվեց տնտեսական կատեգորիաների դերի թերագնահատմանը։ Անցած ժամանակաշրջանում խոշոր աշխատանքներ ծավալվեցին գնագոյացման կատարելագործման ուղղությամբ։ Արժեքի և գների միջև եղած անջրպետն սկսեց աստիճանաբար հաղթահարվել։

ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թվականի սեպտեմբերյան պատմական պլենումից

հետո նշանակալի չափերով բարձրացվեցին գյուղատնտեսական մթերքների պետական մթերման ու գնման գները։ Գյուղատնտեսական մթերքների այժմ գործող գնման գները ո՛չ միայն ծածկում են կոլտնտեսությունների արտադրական ծախսերը, այլև որոշ կուտակումներ են ապահովում արտադրության ընդլայնման համար։ Կոլտնտեսությունների գերակշռող մասը եկամտաբեր է դարձել։ Կարգավորվել են նաև արդյունաբերական արտադրանքի գները, որի շնորհիվ վնասով աշխատող ձեռնարկությունների թիվը խիստ կրճատվել է, մեծացել է շահույթի դերը ժողովրդական տնտեսության մեջ։

Գների ընդհանուր կազմում, շրջանառության հարկի համեմատությամբ, շահույթի տեսակարար կշիռը խիստ բարձրացել է։ Եթե 1963 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ-ում շրջանառության հարկը ավելացել է 1,4 անգամ, ապա նույն ժամանակամիջոցում պետական և կոոպերատիվ ձեռնարկությունների և կազմակերպությունների շահույթներն ավելացել են ավելի քան 4,1 անգամ։

Նշանակալի չափով մեծացել է շահույթի դերը նաև որպես սոցիալիստական կուտակման աղբյուր։ Եթե 1955 թվականին ՍՍՌՄ պետական բյուջեի եկամուտներում շրջանառության հարկի տեսակարար կշիռը կազմում էր 43 տոկոս, իսկ շահույթներից արվող մասհանումներինը՝ 18,2, ապա 1961 թվականին այդ տոկոսները համապատասխանաբար կազմեցին 39,6 և 26,6։ Ինչպես երևում է, շահույթներից արվող մասհանումների տեսակարար կշիռը բյուջեում բարձրացել է։ Շահույթների մի զգալի մասն էլ թողնվել է ձեռնարկությունների տրամադրության տակ, որն օգտագործվել է հիմնական և շրջանառու ֆոնդերի ընդլայնման՝ սոցիալիստական կուտակման համար։ Միայն 1963 թվականի պլանով նախատեսված 35,7 մլրդ ռուբլի շահույթից ձեռնարկություններին և տնտեսական կազմակերպություններին տրվելու է 9,6 մլրդ ռուբլի, իսկ մնացած 26,1 մլրդ ռուբլին հատկացվելու է պետական բյուջեին։

Շահույթների մի զգալի մասը ձեռնարկությունների տրամադրության տակ թողնելը՝ կապիտալ ներդրումների և սեփական շրջանառու միջոցների ավելացման, ինչպես նաև ձեռնարկության ֆոնդին հատկացումներ անելու համար, ուժեղացնում է ձեռնարկությունների նյութական շահագրգռվածությունը, բարձրացնում արտադրության եկամտաբերությունը և, միաժամանակ, մեծացնում շահույթի դերը տնտհաշվարկի կազմակերպման գործում։ Ձեռնարկության ֆոնդերից նյութական խթանման համար օգտագործվող միջոցների ընդհանուր գումարը ՍՍՌՄ-ում 1960 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է մոտ 3,9 անգամ։

Այս ամենը, չի նշանակում, որ այժմ ժողովրդական տնտեսության զարգացման համար իբրև տնտեսական լծակ մենք լիովին օգտագործում ենք շահույթը։ Այն դեռևս չի դառել ձեռնարկության տնտեսական գործունեության գնահատման կարևոր ցուցանիշ, նյութական խթանման լուրջ միջոց, տնտհաշվարկի կազմակերպման վճռական գործոն։ Այդ մասին է վկայում վնասով աշխատող մեծ թվով ձեռնարկությունների առկայությունը ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում։ Անցյալ տարի ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկությունների մոտ 20 տոկոսը վնասով էր աշխատում։ Հայկական ՍՍՌ-ում ևս 1962 թվականին խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների 20 տոկոսը, իսկ շինարարական կազմակերպությունների 21,2 տոկոսը աշխատել են վնասով։ Արդյունաբերական արտադրանքի մեծածախ գների առա-



ջիկայում կատարվող փոփոխումը կնպաստի շահույթի դերի հետագա բարձրացմանը։

Ինչպես նշվել է, գների մակարդակների խիստ տարբերությունները պայմանավորում են շահույթի չափերի չափազանց մեծ խայտաբղետությունը։ Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի էլեկտրատեխնիկական և սարքաշինական արդյունաբերության մեջ ձեռնարկությունների պլանային եկամտաբերությունը տատանվում է 0,7 տոկոսից (միկրոէլեկտրաշարժիչների գործարան) մինչև 88,8 տոկոս (ճշգրիտ տեխնիկական քարերի գործարան)։ Մեղանում դեռևս կան այնպիսի գործարաններ, որոնք պլանային վնասով են աշխատում։ Գոյություն ունեն արտադրանքի այնպիսի հին տեսակներ, որոնք ապահովում են 100 և ավելի տոկոս եկամտաբերություն, դրա հետ միաժամանակ գոյություն ունեն արտադրանքի այնպիսի նոր տեսակներ, որոնց համար սահմանվել են չափազանց ցածր մեծածախ գներ և այնտեղ 5 տոկոսից բարձր եկամտաբերություն չի ապահովվում։

Եկամտաբերության մակարդակների այդպիսի խայտաբղետության պայմաններում շահույթը, որպես կարևորագույն տնտեսական լծակ, իր դերը հաջողությամբ կատարել չի կարող։ Եթե որևէ ձեռնարկության եկամտաբերության մակարդակը չափազանց բարձր է, ապա իր սեփական կարիքները բավարարելու համար այն հեշտությամբ պահանջվող չափի շահույթներ է կուտակում, լարված պայքար չի մղում ինքնարժեքի իջեցման և եկամտաբերության հետագա բարձրացման համար։ Այդպիսի ձեռնարկության հաշվեկշռում հաճախ սեփական շրջանառու միջոցների ավելցուկներ են գոյանում, որոնք ժամանակավորապես անգործության են մատնվում։ Իսկ վնասով աշխատող ձեռնարկություններում խնամառուական տրամադրություններ են առաջանում. նրանք ձգտում են իրենց ծախքերը ծածկել ո՛չ միայն սեփական եկամուտներով, այլև պետական բյուջեից ստացվող դոտացիայով։ Վնասով աշխատող ձեռնարկություններում նույնիսկ ձեռնարկության ֆոնդի աղբյուրը ոչ թե սեփական եկամուտներն են, այլ տվյալ գերատեսչության մյուս ձեռնարկությունների շահույթները։

Մեծածախ գների առաջիկա վերանայումը ամենից առաջ պետք է ընթանա այն ուղղությամբ, որ այլևս վնասով աշխատող արտադրության ճյուղեր չլինեն, կամ վնասով աշխատող ձեռնարկությունների թիվը հասցվի նվազագույնի։ Վնասով աշխատող ձեռնարկությունները եկամտաբեր պետք է դառնան ո՛չ միայն մեծածախ գների բարձրացման, այլև, գերազանցապես, իրենց աշխատանքի ցուցանիշների բարելավման, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման միջոցով։ Արտադրանքի նոր, պրոգրեսիվ տեսակների գները հին տեսակների գների համեմատությամբ պետք է բարձր լինեն, որպեսզի խթանեն դրանց արտադրության արագ աճը։ Սակայն անհրաժեշտ է հաշվի առնել ո՛չ միայն արտադրող ձեռնարկությունների, այլև տվյալ արտադրանքն սպառող ձեռնարկությունների շահերը և շատ չբարձրացնել նոր տեսակի արտադրանքի գները, այլապես սպառող ձեռնարկությունները չեն օգտագործի դրանք։

Պետք է իջեցվեն չափազանց բարձր շահույթ ապահովող արտադրանքի տեսակների մեծածախ գները։ Ընդհանրապես մեծածախ գները պետք է վերանայել այն տեսանկյունով, որպեսզի շահույթի գոյացման համար արտադրության բոլոր ճյուղերում միատեսակ պայմաններ ստեղծվեն, և եկամտաբերության մակարդակների տարբերությունները նվազեն։ Արտադրանքի տվյալ տե-

սակի թողարկման ծախքերը փոխհատուցելուց բացի, մեծածախ գները պետք է այնքան շահույթ ապահովեն, որ ծածկվեն արտադրության տվյալ ճյուղի կամ ձեռնարկության արտադրական ֆոնդերի ընդլայնման և խթանման ֆոնդերին կատարվող հատկացումների ծախսերը։

Կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում ավելի է մեծանում սոցիալիզմի տնտեսական կատեգորիաների, ինչպես և շահույթի դերը։ Ընկեր Խրուշչովը ՍՄԿՊ նոր Ծրագրի մասին պարտիայի XXII համագումարում տված զեկուցման մեջ ասել է. «Մենք պետք է բարձրացնենք շահույթի, շահութաբերության նշանակությունը։ Պլաններն ավելի լավ կատարելու շահերից ելնելով, հարկավոր է ձեռնարկությանն ավելի մեծ հնարավորություններ տալ տնօրինելու շահույթը, ավելի լայնորեն օգտագործելու այն՝ իր կոլեկտիվի լավ աշխատանքը խրախուսելու, արտադրությունն ընդլայնելու համար» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 236)։

Ելնելով պարտիայի XXII համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի (1962 թ.) որոշումներից, ձեռնարկությունների ֆինանսական գործունեությունը պլանավորելիս պետք է ավելացնել նրանց կարիքների համար օգտագործվող շահույթի բաժինը։ Ձեռնարկությունների կապիտալ ներդրումների ֆինանսավորումը, շրջանառու միջոցների ավելացումը, կոլեկտիվ պարգևատրումներն ու աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ծախսերը հիմնականում պետք է կատարել շահույթի հաշվին։ Պետք է նշանակալի չափերով ավելացնել շահույթից խթանման ֆոնդերին կատարվող հատկացումները։ Անհրաժեշտ է ֆինանսական գործունեության բնագավառում վճռականորեն ընդլայնել ձեռնարկությունների իրավունքները, վերացնել միջոցների օգտագործման ծայրահեղ սահմանափակումները։ Այս ամենը կբարձրացնեն ձեռնարկությունների շահագրգռվածությունը՝ ավելի արդյունավետ օգտագործելու արտադրական ֆոնդերը, բարձրացնելու եկամտաբերությունը։

Պլանավորման անընդհատ կատարելագործումը, սոցիալիզմի տնտեսական կատեգորիաների դերի բարձրացումը և դրանց ճիշտ օգտագործումը ժողովրդական տնտեսության հետագա հզոր վերելքի և բնակչության բարեկեցության անշեղ բարձրացման կարևոր պայմանն են։

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ՀԱՆՃԱՐԻ ԱՐԳԱՍԻՔԸ

## Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

Մարքսիստական փիլիսոփայության կարևորագույն երկերի մեջ առանձնահատուկ տեղ են գրավում Վ. Ի. Լենինի հանրահայտ «Փիլիսոփայական տետրեր»-ը, որոնք մինչև վերջերս չէին մտել նրա երկերի ժողովածուների մեջ։ Զգալի չափով լրացված ու ճշգրտված վիճակում դրանք մեծ առաջնորդի երկերի 4-րդ հրատարակության 38-րդ հատորում ամփոփելն ինքնին խոշոր և ուրախալի երևույթ է։ Առավել ևս ուրախալի է, որ այդ հատորն արդեն թարգմանվել ու հրապարակվել է հայերեն, որի շնորհիվ հայ ընթերցողը հնարավորություն է ստացել առաջին անգամ մայրենի լեզվով ծանոթանալու Վ. Ի. Լենինի այդ մեծարժեք ստեղծագործությանը։

«Փիլիսոփայական տետրեր»-ը ամփոփում են քսան տարվա ընթացքում՝ (1895 թ. մինչև 1916 թ.) փիլիսոփայական մի շարք կարևորագույն ստեղծագործությունների կոնսպեկտները, գրառումները, նշումները, դիտողությունները գրքերի էջերի վրա, ինչպես նաև Վ. Ի. Լենինի գրած «Դիալեկտիկայի հարցի շուրջը» ֆրագմենտը։ Թեև «Տետրեր»-ը մի ամբողջական աշխատություն չեն, սակայն դրանք պարունակում են իդեական մեծագույն հարստություն և մարքսիստական փիլիսոփայության ստեղծագործական զարգացման նույնպիսի փայլուն օրինակ են, ինչպես «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմը», «Անտի-Դյուրինգը», «Բնության դիալեկտիկան»։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ մենք Մարքսի տեսությունը չենք դիտում որպես մի ինչ-որ ավարտված և անձեռնմխելի բան և, ընդհակառակը, համոզված ենք, որ նա դրել է հիմնաքարերն այն գիտության, որը սոցիալիստները պետք է առաջ տանեն բոլոր ուղղություններով՝ եթե նրանք չեն ցանկանում ետ մնալ կյանքից։ Ինքը, Լենինը մի շարք կարևորագույն հարցերում առաջ տարավ մարքսիստական գիտությունը, զարգացնելով մասնավորապես սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի տեսությունը, սոցիալիզմի կառուցման, ազգերի զարգացման ու փոխհարաբերության, դասակարգային պայքարում պրոլետարիատի պարտիայի դերի, նրա ստրատեգիայի ու տակտիկայի հիմնական տեսական դրույթները։ «Փիլիսոփայական տետրեր»-ը ակնառու կերպով ցույց են տալիս, որ Լենինի կողմից ամեն մի

կոնկրետ հարցում գիտական կոմունիզմի դրույթների զարգացմանը նախորդել
է փիլիսոփայական ու տեսական հիմքերի խոր ու բազմակողմանի հետազո-
տություն, փիլիսոփայական հարցերի գիտական-ստեղծագործական մշակում։
Այսպես, օրինակ, հատկանշական է, որ 1914—1915 թվականներին, երբ
Վ. Ի. Լենինն ուսումնասիրում էր իմպերիալիզմի օրինաչափությունները և մշա-
կում պրոլետարական ռևոլյուցիայի նոր տեսություն, նա հանգամանորեն
անդրադառնում է փիլիսոփայական գրականությանը, հատկապես Հեգելի եր-
կերին և խոր կերպով մշակում փիլիսոփայական կարևոր հարցերը։

«Փիլիսոփայական տետրեր»-ում ուսումնասիրվող հարցերի կիզակետը
մատերիալիստական դիալեկտիկան է։ Մարքսի և Էնգելսի երկերի, Հեգելի
տրամաբանության խորազնին հետազոտությամբ Լենինը նոր հարկեր է բարձ-
րացնում մարքսիստական դիալեկտիկական մատերիալիզմի հոյակապ շենքի
վրա, կառուցում-ավարտում է նրա առանձին թևերը։

Լենինն առանձնահատուկ ուշադրություն է դարձնում, մասնավորապես,
հակադրությունների միասնության և պայքարի օրենքի՝ դիալեկտիկայի այդ
«միջուկի» վրա։ Հանգամանորեն վերլուծելով Հեգելի տրամաբանությունը, նա
Մարքսի և Էնգելսի նման շրջում է այն, վերամշակում մատերիալիստորեն և,
բացահայտելով Հեգելի դիալեկտիկայի ռացիոնալ կորիզը, տալիս է դիալեկ-
տիկական հայեցակետի էության հանճարեղ բնութագիրը՝ «միասնականի եր-
կատումը փոխադարձաբար միմյանց բացառող հակադրությունների և նրանց
փոխհարաբերությունը» (հ. 38, էջ 456)։

Հեգելի «Տրամաբանության գիտություն» գրքի իր կոնսպեկտում Լենինը
բազմիցս անդրադառնում է հակադրությունների միասնության և պայքարի
հարցերին, նշում իրի, երևույթի, պրոցեսի մեջ ներքուստ հակասական տեն-
դենցների գոյությունը, իրը (երևույթ և այլն) որպես hակադրությունների գու-
մար և միասնություն, այդ հակադրությունների, հակասական ձգտումների և
այլնի պայքարը, դրանց ծավալումը, և եզրակացնում է. «Դիալեկտիկան հա-
կիրճ կարելի է սահմանել որպես ուսմունք հակադրությունների միասնության
մասին։ Դրանով ըմբռնված կլինի դիալեկտիկայի միջուկը, բայց դա պահան-
ջում է պարզաբանումներ և զարգացում» (հ. 38, էջ 274)։ Եվ Լենինը հենց ինքը
պարզաբանում ու զարգացնում է այդ կարևորագույն դրույթը «Դիալեկտիկայի
հարցի շուրջը» հանճարեղ ֆրագմենտում, որն ըստ երևույթին նրա կողմից
պատրաստվող խոշոր փիլիսոփայական աշխատության հիմնական հարցերի
հակիրճ շարադրանքն է։ Այդ աշխատության մեջ (հ. 38, էջ 455—461) Լենինը
դիալեկտիկայի էությունը պարզաբանում է մատերիայի շարժման հիմնական
ձևերի, ինչպես նաև հասարակության ու մարդկային մտածողության ներքին
հիմնական հակասությունների բացահայտումով։ Նա ցույց է տալիս, որ հա-
կադրությունները գոյություն ունեն ամենուր, նույնիսկ ամենապարզ, ամենա-
հասարակ, միանգամայն միասնական ու անբաժանելի թվացող սովորական
երևույթների մեջ։

Այս վերլուծության հետ միասին Լենինը բացառիկ որոշակիությամբ նշում
է դիալեկտիկական և մետաֆիզիկական հայեցակետերի արմատական հակա-
դրությունը և շեշտում, որ մետաֆիզիկան ի վիճակի չէ բացահայտելու բնության,
մատերիայի, աշխարհի ինքնաշարժումը, նրա շարժիչ ուժը, իսկ դիալեկտիկան՝
որպես միակ կենսական, գիտական մեթոդ բացահայտում է հենց ամբողջ գոյի
ինքնաշարժման աղբյուրը՝ միասնության մեջ գտնվող ներքին հակադրություն-



ների պայքարը և տալիս «թռիչքների», «աստիճանականության ընդհատման»,
«հակադրությանը փոխարկվելու», հնի ոչնչացման ու նորի ծագման բանալին։
Առանձնապես արժեքավոր է Լենինի այն եզրահանգումը, որ «Հակադրություն-
ների միասնությունը (համընկնումը, նույնությունը, հավասարագործությունը)
պայմանական է, ժամանակավոր, անցողիկ, ռելյատիվ։ Փոխադարձաբար մի-
մյանց բացառող հակադրությունների պայքարը բացարձակ է, ինչպես բա-
ցարձակ է զարգացումը, շարժումը» (հ. 38, էջ 456—457)։

Հակադրությունների միասնության և պայքարի այս հանգամանալից վեր-
լուծությունը Վ. Ի. Լենինի համար հիմք է ծառայել դիալեկտիկայի մյուս կա-
րևորագույն կողմերի պարզաբանման և զարգացման համար։ Վ. Ի. Լենինը
դիալեկտիկան քննարկում է համակողմանիորեն՝ որպես ուսմունք զարգացման
մասին, ուսմունք երևույթների ու պրոցեսների համընդհանուր կապի մասին։
Այդ իսկ տեսակետից նա ձևակերպում է մատերիալիստական դիալեկտիկայի
տասնվեց տարրերը, հատկապես շեշտելով քննարկման օբյեկտիվությունը, իրի
բազմազան հարաբերությունների ամբողջությունը ուրիշ իրերի նկատմամբ,
այդ իրի (երևույթի, պրոցեսի և այլն) զարգացումը, նրա բուն շարժումը, նրա
բուն կյանքը, ներքուստ հակասական տենդենցներն այդ իրի մեջ։ Վ. Ի. Լենինն
ընդգծում է դիալեկտիկայի այնպիսի կարևոր տարրեր, ինչպես՝ անցումը քա-
նակից որակին, բացասման բացասումը, բովանդակության և ձևի, նորի ու
հնի պայքարը և այլն ու նշում, որ «յուրաքանչյուր իրի (երևույթի etc.) հարա-
բերությունները ո՛չ միայն բազմազան են, այլև համընդհանուր, ունիվերսալ։
Յուրաքանչյուր իր (երևույթ, պրոցես etc.) կապված է յուրաքանչյուրի
հետ» (հ. 38, էջ 273)։

Սակայն Լենինը չի բավարարվում այս ընդհանուր բնութագրումներով և
հետազոտում է դիալեկտիկայի նշված տարրերից մի քանիսը, տալիս է մատե-
րիալիստական-դիալեկտիկական մոտեցման անզուգական օրինակ։ Այսպես,
վերլուծելով Հեգելի «Տրամաբանության գիտությունը» աշխատությունը,
Լենինն ամենուրեք իդեալիստական կեղևի տակ գտնում, բացահայտում է
առողջ, բանական կորիզը և հեգելյան իդեալիստական ըմբռնմանը հակադրում
դիալեկտիկայի տարրերի մատերիալիստական ըմբռնումը, մշակում հստակ
ու որոշակի և միաժամանակ բազմակողմանի ձևակերպումներ։ Այսպես, օրի-
նակ, ուսումնասիրելով օրենքի կատեգորիան, Լենինը նշում է, որ «օrենfի
հասկացությունը մարդու կողմից տիեզերական պրոցեսի միասնության ու
կապի, փոխկախվածության և ամբողջականության իմացության աստիճաննե-
րից մեկն է» և դրա հետ միասին բացահայտում է օրենքի մի շարք էական
կողմեր. «օրենքը հաստատունն է (մնայունը) երևույթի մեջ» «օրենքը նույնա-
կանն է երևույթի մեջ», «օրենքը էականի արտացոլումն է ունիվերսումի շարժ-
ման մեջ» (հ. 38, էջ 178—180)։ Նույն ձևով է Լենինը մոտենում պատճառա-
կանությանը, անհրաժեշտությանը, թռիչքներին և այլն։ Լենինը վեր է հանում
զարգացման մեջ դիալեկտիկական բացասումը որպես կապի մոմենտ, որպես
զարգացման մոմենտ՝ դրականի պահպանմամբ։ Այս հարցում Լենինը լրաց-
նում, ավելի է խորացնում ու կոնկրետացնում բացասման բացասումի մասին
«Անտի Դյուրինգ»-ում Էնգելսի արտահայտած մտքերը։

«Փիլիսոփայական տետրեր»-ում Լենինը առանձնահատուկ ուշադրություն
է դարձնում մարքսիստական փիլիսոփայության իմացության թեորիայի զար-
գացմանը։ Հեգելի աշխատությունների կոնսպեկտներում Լենինը զարգացնում

է այն միտքը, որ մատերիալիզմի տրամաբանությունը, դիալեկտիկան և իմացաբանությունը համընկնում են, որ այստեղ «3 բառ հարկավոր չէ՝ դա միևնույն բանն է»։ Նա նշում է, որ «Եթե Marx-ը չի թողել «Տրամաբանություն» (մեծատառով), ապա նա թողել է «Կապիտալի» տրամաբանությունը, և հարկ է տվյալ հարցում այն ըստ ամենայնի օգտագործել» (հ. 38, էջ 404)։ Լենինը բազմակողմանիորեն ուսումնասիրում է իմացության պրոցեսի դիալեկտիկան, ավելի ճիշտ կլիներ ասել՝ կիրառում է դիալեկտիկան իմացության պրոցեսի հետազոտության մեջ և լրացնում ու հարստացնում «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատության մեջ իր առաջ քաշած ու մշակած դրույթները։ Այս երկի մեջ Լենինը տալիս է իմացության պրոցեսի հանրահայտ սահմանումը, որը զարմացնում է իր պարզությամբ և դիպուկությամբ. «Կենդանի հայեցողությունից դեպի աբստրակտ մտածողությունը և դրանից դեպի պրակտիկան՝ ա՛յս է ճշմարտության իմացման, օբյեկտիվ ռեալության իմացության դիալեկտիկական ուղին» (հ. 38, էջ 205)։ Եվ նա խորությամբ հետազոտում է իմացության դիալեկտիկական ուղու հիմնական մոմենտները, պարզաբանում զգայական իմացության (կենդանի հայեցողության) և աբստրակտ մտածողության փոխադարձ կապը, դրանց որակական տարբերությունները, բացահայտում գիտական աբստրակցիաների, տրամաբանական կատեգորիաների դերը որպես բնության ավելի խոր, ավելի լրիվ, ավելի ճիշտ արտացոլումներ։ Լենինը հատուկ ուշադրություն է նվիրում ճշմարտության մատերիալիստական տեսության զարգացմանը և պրակտիկային՝ որպես ճշմարտության օբյեկտիվ չափանիշի։ Բացահայտելով արտացոլման մետաֆիզիկական ըմբռնման սահմանափակությունը և իդեալիզմի սնանկությունն այդ հարցում՝ Լենինը վճռականորեն շեշտում է մարդկային իմացության կողմից օբյեկտիվ աշխարհի ճըշմարտացի արտացոլումը և բուն իսկ արտացոլման դիալեկտիկական բնույթը։ Նա գրում է. «Իմացությունը մտածողության հավերժական, անվերջ մոտեցումն է օբյեկտին։ Բնության արտացոլումը մարդու մեջ պետք է հասկանալ ո՛չ թե «մեռյալ», ո՛չ թե «աբստրակտ»— ո՛չ թե առանց շարժման, ո՛չ թե առանց հակասությունների, այլ շարժման, հակասությունների առաջացման և դրանց լուծման հավերժական պրոցեսում» (հ. 38, էջ 237)։

Հետագայում, Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո, քննադատելով Բուխարինի էկլեկտիկական մոտեցումը արհմիությունների հարցում և դիալեկտիկայի աղավաղման նրա փորձերը, Լենինը «Փիլիսոփայական տետրեր»-ում մշակված նյութի հիման վրա ձևակերպեց դիալեկտիկական տրամաբանության հիմնական պահանջները, արտահայտելով դրանք չորս կարևորագույն դրույթների մեջ. ա) առարկան, իրը, պրոցեսը, երևույթը և այլն քննարկել իր բոլոր կապերի, բոլոր միջնորդավորումների մեջ, բ) առարկան դիտել ո՛չ թե քարացած, անշարժ, այլ իր զարգացման, փոփոխության, «կենդանի» կյանքի մեջ, գ) պրակտիկան վերցնել ո՛չ միայն որպես իմացության հիմք, այլև որպես մեր գիտելիքների, թեորիաների ճշմարտության չափանիշ, դ) ճշմարտությունը կոնկրետ է, վերացական, աբստրակտ ճշմարտություն չկա։

Այստեղից ակնհայտ է, որ դիալեկտիկական մոտեցումը պահանջում է համակողմանի մոտեցում, խորացում երևույթից դեպի էությունը, այն օբյեկտիվ ճշմարտության բացահայտման լավագույն գիտական մեթոդն է։

Այսպիսի համակողմանի դիալեկտիկական մոտեցման օրինակ է հենց



նույն «Փիլիսոփայական տետրեր»-ում Վ. Ի. Լենինի կողմից բնագիտության փիլիսոփայական պրոբլեմների և փիլիսոփայության պատմության հարցերի հետազոտությունը։ Բնորոշ է Վ. Ի. Լենինի հետաքրքրությունը բնագիտության առանցքային հարցերի և, հատկապես, ֆիզիկայի նորագույն հայտնագործությունների նկատմամբ։ «Փիլիսոփայական տետրեր»-ում զետեղված բազմաթիվ գրառումներն ու նշումները ցույց են տալիս, որ Վ. Ի. Լենինը ամենայն ուշադրությամբ հետևում էր բնագիտության նվաճումներին («Տետրերում» նշումներ կան բնագիտության և նրա փիլիսոփայական ըմբռնմանը վերաբերող մի քանի տասնյակ գրքերի և նույնիսկ դրանց առթիվ հրապարակված գրախոսականների մասին), փիլիսոփայորեն ընդհանրացնում դրանք և անընդհատ զարգացնում էր ժամանակակից բնագիտության և դիալեկտիկական մատերիալիզմի սերտ կապի մասին դրույթը։ Այդ մտքերը Լենինը հետագայում (1922 թ.) ամբողջացրեց իր «Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին» հռչակավոր հոդվածում, ուր որոշակիորեն առաջադրեց բնագիտության և դիալեկտիկական մատերիալիզմի ամենասերտ դաշինքի պահանջը։

«Փիլիսոփայական տետրեր»-ը պարզորոշ ցույց են տալիս, թե որքան մեծ է եղել Վ. Ի. Լենինի հետաքրքրությունը փիլիսոփայության պատմության նկատմամբ և որքան խորաթափանց ու բազմակողմանի՝ անցյալի մտածողների հայացքների նրա վերլուծությունը։ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Սուրբ ընտանիք» աշխատության կոնսպեկտի հետ միասին այստեղ զետեղված են Հեգելի «Դասախոսություններ փիլիսոփայության պատմության մասին», Լասսալի «Էփեսացի Հերակլիտ Մթինի փիլիսոփայությունը», Ֆոյերբախի «Լայբնիցի փիլիսոփայության շարադրությունը, վերլուծությունն ու քննադատությունը» գրքերի կոնսպեկտները, Պլեխանովի, Դեբորինի, Շուլյատիկովի և ուրիշների գրքերի էջերի վրա կատարած դիտողությունները։

Փիլիսոփայության պատմության հարցերի նկատմամբ լենինյան մոտեցման առանցքը պարտիականության սկզբունքն է փիլիսոփայության մեջ, մատերիալիստական տեսակետի հետևողական զարգացումն ու պաշտպանությունը, ինչպես և անցյալի մտածողների հայացքների մեջ եղած դրական, առաջադիմական մոմենտների վերհանումն ու իմաստավորումը։ Այդ տեսակետից հատկանշական է, թե ինչպես է վերաբերվում Վ. Ի. Լենինը հեգելյան փիլիսոփայությանը։ Նա անողոք մերկացնում է մեծ մտածողի իդեալիզմը։ Բացահայտելով Հեգելի աչառու, կողմնակալ վերաբերմունքը հին աշխարհի մեծագույն մատերիալիստների, հատկապես Դեմոկրիտի և Էպիկուրի նկատմամբ, նրանց հայացքների գիտակցական աղավաղումը, Լենինը այդ բանը դատապարտում է խիստ արտահայտություններով. «իդեալիստի կողմից մատերիալիզմն աղավաղվելու և զրպարտելու մի նմուշ», «...Հեգելը սքողում է Արիստոտելի իդեալիզմի թուլությունները» և այլն։ Դրա հետ միասին Լենինը Հեգելի ուսմունքի մեջ բացահայտում է գիտական մոմենտները՝ ո՛չ միայն դիալեկտիկան, այլև հաճախ իդեալիստական կեղևի տակ թաքնված մատերիալիստական բովանդակությունը. «Հեգելը հասկացությունների դիալեկտիկայի մեջ հանճարեղորեն կռահել է իրերի (երևույթների, աշխարհի, բնության) դիալեկտիկան» (էջ 239), «Ես ընդհանրապես աշխատում եմ Հեգելին կարդալ մատերիալիստորեն. Հեգելը գլխիվայր շրջված մատերիալիզմ է (ըստ Էնգելսի)— այսինքն՝ ես մեծ մասամբ դեն եմ նետում աստվածիկը, աբսոլյուտը, զուտ իդեան etc.» (էջ 116—117)։

Փիլիսոփայության պատմության խոր ուսումնասիրության հիման վրա Լենինը բացահայտում է իդեալիզմի իմացաբանական և սոցիալ-դասակարգային արմատները։ Նա խիստ քննադատում է մետաֆիզիկական մատերիալիզմի այն տեսակետը, թե իբր իդեալիզմը միայն անմտություն է, հնարանք, և ցույց տալիս, որ իդեալիզմը իմացության գծիկներից, կողմից, եզրերից մեկի միակողմանի ուռեցումն է մինչև աբսոլյուտը, որը կտրված է մատերիայից, բնությունից։ Այսպես, օրինակ, ընդհանուրի անջատումը առանձինից, կոնկրետից, որի մեջ այն գոյություն ունի, որի միջոցով այն արտահայտվում է, ընդհանուրին առանձինից անկախ ինքնուրույն գոյություն վերագրելը, աստվածացնելը միշտ էլ հասցնում է իդեալիզմի, իսկ այդ իդեալիզմը ճանապարհ է դեպի ֆիդեիզմ, դեպի տերտերականություն։ Ե՛վ տերտերականությունը, և՛ փիլիսոփայական իդեալիզմը (դրանք ըստ էության համընկնում են) ամրապնդվում են տիրապետող դասակարգի դասակարգային շահերով, որովհետև հանդիսանում են ամեն մի հետադիմության ու ռեակցիայի տեսական արդարացումը։

Լենինը «Փիլիսոփայական տետրեր»-ում անդրադառնում է պատմական մատերիալիզմի մի շարք հիմնական հարցերին։ Նա, մասնավորապես, համակողմանիորեն քննարկում է կեցության և գիտակցության փոխհարաբերության հարցը, հետազոտում մարդկային գիտակցության ակտիվությունը, նրա դերը շրջապատող աշխարհը նպատակադիր փոփոխելու մեջ։ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Սուրբ ընտանիք» գրքի կոնսպեկտում նա հանգամանորեն հետևում է մարքսիստական մտքի ձևավորմանը և, հատկապես, ընդգծում պրոլետարիատի սոցիալական էության և նրա պատմական դերի մասին մտքերը։ Դեբորինի և Շուլյատիկովի գրքերի էջերի վրա կատարած դիտողություններում Լենինը մերկացնում է պատմական մատերիալիզմի՝ նրանց թույլ տված աղավաղումները, բացահայտում բազմաթիվ խառնաշփոթություններ և տեսական անհետևողականությունը։

Անհնարին է մի փոքր հոդվածում վերհանել գաղափարական այն ամբողջ հարստությունը, որն ամփոփված է այս չափազանց արժեքավոր երկի մեջ։ Անգնահատելի է նրա նշանակությունը մարքսիստական-լենինյան տեսության զարգացման գործում։ «Փիլիսոփայական տետրեր»-ի նշանակությունը ո՛չ միայն այնտեղ քննարկվող ամենաբազմապիսի հարցերի ստեղծագործական զարգացման մեջ է, թեև, ինչպես տեսանք, դա ինքնին արդեն գիտական խոշոր սխրագործություն է, այլև այդ հարցերի և մարքսիզմի մյուս կողմերի, հատկապես գիտական կոմունիզմի տեսության լենինյան զարգացման միջև եղած սերտ կապի մեջ։ Լենինի համար, ինչպես և Մարքսի ու Էնգելսի համար, փիլիսոփայական դրույթների մշակումը երբեք ինքնանպատակ չի եղել, այլ մշտապես ծառայել է որպես բանվոր դասակարգի ազատագրական պայքարի, կոմունիստական հասարակարգի կառուցման տեսական հիմք։ Այդ առումով հատկանշական է, որ Լենինի կողմից դիալեկտիկական մատերիալիզմի, մասնավորապես մատերիալիստական դիալեկտիկայի հարցերի ուսումնասիրությունը անմիջականորեն նախորդել է նրա այնպիսի կարևոր աշխատությունների ստեղծմանը, ինչպես՝ «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա», «Պետություն և ռևոլյուցիա», «Ազգերի ինքնորոշման իրավունքի մասին» և այլն։ Եվ այդ հետազոտությունը ո՛չ միայն նախորդել ու նախապատրաստել է, այլև, ինչպես առանձին դեպքերում արդեն ցույց տրվեց,



ելք է գտել ու արտահայտվել հետագայում Լենինի կողմից մշակված կարևորագույն տեսական դրույթներում, ռևոլյուցիոն պրակտիկայի գիտական ընդհանրացման գործում։

Վ. Ի. Լենինի «Փիլիսոփայական տետրեր»-ը առանձնապես խոշոր նշանակություն ունեն ժամանակակից ռևիզիոնիզմի և դոգմատիզմի, ինչպես նաև արդի բուրժուական փիլիսոփայության ամենաբազմազան հոսանքների դեմ մղվող պայքարում։ Այն սովորեցնում է մեզ, թե որքան կարևոր է հետևողական պարտիական մոտեցումը գաղափարական հարցերում, որքան կարևոր է մարքսիզմի հիմնական դրույթների ճիշտ ըմբռնումը և անհաշտվողականությունը նրա ամեն տեսակ աղավաղումների և խառնաշփոթումների նկատմամբ։

***

Լենինյան այս աշխատության հայերեն թարգմանությունը կապված է զգալի դժվարությունների հետ։ Բավական է նշել, որ այնտեղ զետեղված նյութերից մինչև այժմ հայերեն հրատարակվել է միայն «Դիալեկտիկայի հարցի շուրջը» ֆրագմենտը, մնացածները թարգմանված են առաջին անգամ։ ՍՄԿՊ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի ղեկավարությամբ թարգմանիչներն ու խմբագիրները[1] խոշոր և շնորհակալ գործ են կատարել Վ. Ի. Լենինի այս կարևոր երկը լավագույն թարգմանությամբ հայ ընթերցողին ներկայացնելու համար։ Նրանք զգալի աշխատանք են կատարել, մասնավորապես, փիլիսոփայական մի շարք բարդ տերմինների հայերեն համապատասխան համարժեքները մշակելու, գրականության մեջ արդեն հայտնի տերմինների ճիշտ ընտրության և օգտագործման տեսակետից։ Սակայն պետք է նշել, որ թարգմանությունը զերծ չէ առանձին մանր թերություններից։ Երբեմն նույն հասկացությունը գրվում է երկու ձևով։ Այսպես, օրինակ, ամենուր գրվում է սոփեստություն, իսկ 457 էջում հանկարծ հանդիպում ենք սոփիստիկայի. 316, 834 և այլ էջերում գրվում է էլեաթներ, էլեաթական դպրոց, իսկ 784 և 798 էջերում էլեացիներ, էլեական դպրոց (ճիշտը, իհարկե, վերջինն է)։ Հերակլիտը ամեն տեղ նշված է որպես էփեսացի, այնինչ Հերակլիտը էփեսացի էր, այսինքն՝ ծնվել էր Էփեսոս քաղաքում։

Վերջապես, գրականության ցանկի մեջ Ավենարիուսի, Բոգդանովի, Դեբորինի, Հիլֆերդինգի և այլոց գրքերը նշվում են հայերեն, ընդ որում ցույց են տրվում էջերը, մինչդեռ դրանք հրապարակված են ռուսերեն լեզվով. դրա հետևանքով ընթերցողի մոտ այն թյուր տպավորությունն է ստեղծվում, թե դրանք հրատարակված են նաև հայերեն։

Սրանք անշուշտ մանր թերություններ են և դրանք հեշտությամբ կարող են ուղղվել հետագա հրատարակությունների ժամանակ։ Ամբողջությամբ վերցված թարգմանությունը բարձրորակ է, իսկ Լենինի այս հատորի հայերեն հրատարակությունը մի մեծարժեք նվեր է սովետահայ ընթերցողին։

---

1 Թարգմանիչներ՝ Հ. Գ. Ասլանյան, Տ. Պ. Ալեքսանյան, Տ. Ա. Դաղյան։ Թարգմանությունը բնագրի հետ համեմատել է Հ. Ա. Գևորգյանը։ Թարգմանության խմբագիրներ՝ Վ. Վ. Ղազանչյան, Ա. Մ. Բեյլունց, Ա. Խ. Բզնունի, Մ. Տ. Քոչարյան, Հ. Ա. Գևորգյան։

# ՍՓՅՈՒՌՔԸ ՀԱՅՐԵՆԻՔԻ ԿՈՂՔԻՆ

Ս. ԳԱՍՊԱՐՅԱՆ

Հետևելով իրադարձությունների ընթացքին, դժվար չէ տեսնել, որ վերջին տարիների ընթացքում Սովետական Հայաստանում տեղի ունեցած գրեթե բոլոր խոշոր, հասարակական նշանակություն ունեցող հավաքներում այս կամ այն ձևով շոշափվել են սփյուռքահայության հետ առնչվող կարևորագույն հարցերը։ Եվ այդ հասկանալի է. հայ ժողովուրդը, գտնվելով իր ստեղծագործական ուժերի բուռն ծաղկման շրջանում, ո՛չ միայն հարաճուն հետաքրքրություն է ցուցաբերում սփյուռքահայության նկատմամբ, այլև ռեալ ու շոշափելի քայլեր է կատարում սփյուռքի հետ կապված կենսական պրոբլեմների լուծման ասպարեզում։ Հանդես գալով Երևան քաղաքի Լենինյան շրջանի գործարանային ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, Հայաստանի կոմունիստական պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Զարոբյանը ասաց. «Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետը մեծ ուշադրություն են նվիրում արտասահմանյան հայերի հայրենադարձության կազմակերպմանը։ Իրագործելով Հայաստանի կոմպարտիայի XXII համագումարի որոշումները, անցյալ տարի և այս տարվա սկզբին մենք ընդունեցինք և Լենինականում, Կիրովականում, Իջևանում, Լուսավանում տեղավորեցինք Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայից, Կիպրոսից ու Իրանից վերադարձած մեր հայրենակիցների մի քանի քարավաններ... Ռեսպուբլիկայի աշխատավորները իրենց հարազատ եղբայրներին ու քույրերին, Սովետական Հայաստանի նոր քաղաքացիներին, ընդունում են սրտաբաց ու ջերմորեն։ Հայրենադարձությունը կատարվում է վերին աստիճանի կազմակերպված. մենք առաջին օրերից իսկ նոր քաղաքացիների համար ստեղծում ենք աշխատելու և նորմալ ապրելու բոլոր պայմանները»։

Արտասահմանյան հայերի հայրենադարձությունը, այսպիսով, դարձել է պետականորեն կազմակերպված, կարևոր նշանակություն ունեցող գործ։ Դրա հետ մեկտեղ տարեցտարի ավելի ու ավելի են ընդլայնվում ու ամրապնդվում կուլտուրական կապերը սփյուռքահայության հետ։ Սովետական Հայաստանի ու սփյուռքի գրողների, կոմպոզիտորների, նկարիչների, հրապարակախոսների, գիտնականների, հասարակական գործիչների փոխադարձ այցելություններն ու շփումները դարձել են սովորական երևույթ։ Սովետական Հայաստանում տեղի ունեցող հասարակական ու քաղաքական իրադարձությունները, սովետական գրականության ու արվեստի հաջողությունները միշտ լայն արձագանք են առաջացնում սփյուռքում։ Բնականաբար անհրաժեշտ է, որ մենք պարբերաբար անդրադառնանք սփյուռքահայ իրականության հետ առնչվող հարցերին ու տանք այդ հարցերի ճիշտ պատասխանը։



Հանրահայտ ճշմարտություն է, որ սփյուռքահայության ամենաբնորոշ կողմերից մեկը դա նրա արտակարգ ցրվածությունն է։ Երբ նայում ես աշխարհի քաղաքական քարտեզին, դժվարանում ես գտնել մի երկիր, որտեղ թեկուզ փոքր քանակությամբ հայեր չլինեն։ Չխոսելով Իրանի, Թուրքիայի, Սիրիայի, Լիբանանի, Եգիպտոսի, Ֆրանսիայի, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Արգենտինայի մասին, որտեղ մենք ունենք հայաշատ գաղթօջախներ, հայ աշխատավորական զանգվածները ցրված են Եվրոպայի, Ասիայի, Ամերիկայի և Աֆրիկյան մայր ցամաքի ամենահեռավոր անկյուններում։ Ամեն մի երկիր ունի իր բնորոշ առանձնահատկությունը, իր պատմությունն ու ներկան, քաղաքական ու տնտեսական կոնկրետ գոյավիճակը, որ անխուսափելիորեն իր կնիքն է դնում հայկական տվյալ համայնքի կյանքի վրա։ Դա, բնականաբար, չի կարող չդժվարացնել սփյուռքահայ գաղութների ուսումնասիրման ու ճանաչման գործը։

Սփյուռքի հայության լավագույն զավակները անմասն չեն մնում այն բուռն պայքարից, որն այժմ ծավալվել է ընդդեմ գաղութատիրության, ընդդեմ հին աշխարհի հետադիմական ուժերի, լինի դա Իրաքում թե Սիրիայում, Ֆրանսիայում թե Ամերիկայում։ Այդպես էր անցյալում, այդպես է և մեր օրերում։ Մինչպատերազմյան շրջանում նրանք խիզախորեն ծառս եղան պատերազմի ու ռեակցիայի ուժերի դեմ, մաքառեցին հանուն խաղաղության ու դեմոկրատիայի, արհամարհելով բանտերը, ոստիկանական հալածանքն ու հետապնդումները։ Սփյուռքահայ աշխատավորների լավագույն զավակներից շատերն ընկան պատերազմի ճակատներում, ֆաշիզմի դեմ մղվող պայքարում նրանք բարձր պահեցին հայ ժողովրդի պատիվն ու հեղինակությունը։ Եվ այժմ, երբ տիտանական պայքար է ծավալվել հանուն ժողովուրդների խաղաղության, ընդդեմ նոր համաշխարհային ավերիչ պատերազմի սանձազերծման, նրանք նույն եռանդով ու կրքով մասնակցում են այդ ազնիվ պայքարին։ Ընդամենը մի քանի օր առաջ մամուլը հաղորդեց, որ Լիբանանի ոստիկանությունը ձերբակալել է հայտնի դեմոկրատական գործիչ Արթին Մադոյանին։

Արտասահմանի հայ աշխատավորության առաջադեմ մարտիկներն իրենց ապրած երկրի սոցիալական-ազատագրական պայքարի ակտիվ մասնակիցներն են և նրանց բախտը կռվում-կոփվում է տվյալ երկրի պրոլետարիատի և աշխատավորության մեծ պայքարում։ Մյուս կողմից սփյուռքը բավականին խայտաբղետ է դասակարգային շերտավորման իմաստով։ Նա, ով կփորձի սփյուռքը դիտել որպես հայերի մի համատարած մասսա, կդիտի այն սոսկ ազգային առումով և կփորձի լուծել նրա հետ կապված հարցերը «ազգային պրիզմայի» ռեցեպտով, կսխալվի առաջին իսկ քայլափոխին։ Սփյուռքում առկա բոլոր դասակարգերը և սոցիալական խմբավորումները, սոցիալական ուժերն այստեղ խիստ բևեռացված են։ Այստեղից էլ քաղաքական պարտիաների ու խմբավորումների, տարբեր հոսանքների պատկանող կազմակերպությունների ու միությունների առկայությունը։ Այստեղից էլ մշտապես տեղի ունեցող անհաշտ պայքարը իրարամերժ գաղափարախոսությունների ու դավանանքների միջև։ Գտնվելով Իրանում, մենք առիթ ունեցանք տեսնելու, թե ինչ է նշանակում իրականում այդ դասակարգային շերտավորումը։ Մենք տեսանք, որ այստեղ կան միլիոնատերեր, որոնք իրենց ձեռքում են պահում հասարակական կյանքի շատ զսպանակներ, մինիստրների, սենատորների, ազդեցիկ դիվանագետների բարեկամ են, ունեն մի քանի շքեղ առանձնատներ, բազմաթիվ ամե-

նանորագույն մարկայի ամերիկյան ավտոմեքենաներ և այլ հարստություններ։ Դա հայ հասարակության ամենակոսմոպոլիտ խավն է, որի համար հայրենիքը մի հեռավոր հուշ է, որ խամրել է ոսկու փայլի դիմաց։ Նրա հայրենիքն այնտեղ է, ուր կարելի է ավելի շատ կապիտալ դիզել ու հարստանալ։ Եվ եթե նա ստեպ-ստեպ խոսում է հայրենասիրությունից, կամ ունեցած միլիոններից ինչ-որ գումարներ հատկացնում բարեգործական նպատակների, ապա այդ ամենը վերջին հաշվով, ծառայելու է իր շահերին։ Իհարկե, բացառություններ լինում են։ Խոսքը դրանց մասին չէ։ Կա հայ հարուստ միջին խավը, որ ուժեղների հետ տեղի ունեցող մրցակցության պայքարում օրհասական ճիգեր է գործադրում պահելու ունեցածը և ավելի հարստանալու, իսկ ստվարաթիվ մանրբուրժուական խավը օրհասական պայքար է մղում կյանքի արհավիրքների դեմ, մերթ զրկանքներ է կրում, քայքայվում ու աղքատանում, մերթ մագլցում վեր՝ հարստանալու հույսը միշտ սրտում։ Ու, վերջապես, սոցիալական սանդուղքի ամենացածր աստիճանին գտնվում է աշխատավոր ու չարքաշ ժողովուրդը, որն արթնանում է գործարանային շչակների հետ, վաճառում իր աշխատուժը, տառապում գործազրկությունից, ենթարկվում արբաքի (տիրոջ) քմահաճույքներին։

Այս գոյավիճակն ավելի կամ պակաս չափով ընդհանուր է արտասահմանի մյուս գաղթօջախների համար։ Ու դարերի ընթացքում հայրենասիրության զգացումը, հայրենիքի սերն ու կարոտը միշտ վառ ու անմար են մնացել հենց աշխատավորական խավերի ու նրանից ելած մտավորականության մեջ։ Այդ զգացումը զարմանալիորեն տոկացել է մոտ չորս հարյուր տարի առաջ բռնի ուժով Արարատյան դաշտից Պարսկաստանի խորքերը տարված հայ գյուղացու երթիկի տակ և ոչ թե հայ միլիոնատերերի բաժնետիրական ընկերությունների գրասենյակներում։ Ուրեմն, երբ ասում ենք «սփյուռքահայ եղբայրներ», պետք է, ըստ երևույթին, հաշվի առնենք, որ եղբայր էլ կա, եղբայր էլ։ Այսպիսով, միանգամայն բնական են ու բացատրելի այն հակամարտությունները, այն բուռն պայքարը, որ այժմ առկա են սփյուռքում։

Ժողովուրդների կյանքում քիչ չեն դեպքերը, երբ մի հիմնական, նվիրական նպատակի հասնելու ձգտումով միավորվում են նրա լավագույն, առաջադիմական ուժերը, հաղթահարելու համար այդ նպատակի իրականացման ճանապարհին ելած խոչընդոտները։ Սփյուռքահայության համար գլխավոր հարցը այժմ հայրենասիրական բոլոր ուժերի միավորումն է, որի նպատակն է պայքարել սփյուռքի ամենառեակցիոն խմբավորման՝ դաշնակցության դեմ և սփյուռքահայ աշխատավորական զանգվածներին համախմբել իրենց հայրենիքի՝ Սովետական Հայաստանի շուրջը։ Դաշնակցության դեմ մղվող պայքարում ավելի կամ նվազ հետևողականությամբ հանդես են գալիս հայկական բոլոր առաջադիմական կազմակերպությունները, քաղաքական կուսակցությունները և նրանց ազդեցության ոլորտում գտնվող աշխատավորական խմբերն ու մտավորականությունը։ Սփյուռքի զանազան քաղաքական կուսակցությունների ու խմբավորումների նկատմամբ մեր վերաբերմունքի հարցը, ինչպես հայտնի է, շոշափվեց Հայաստանի կոմունիստական պարտիայի XXII համագումարում և այնտեղ էլ տրվեց այդ հարցի մարքսիստական պատասխանը։ Մեր գաղափարական հստակության, մեր քաղաքական պլատֆորմի հարցը քննության առարկա չէ։ Քաղաքական գաղափարախոսությունների հաշտեցում չի կարող լինել։ Այստեղ խոսքը այն մասին է, որ մենք ճշտում ենք մեր դիրքորոշումը



հայրենասիրական ուժերի նկատմամբ, որոնք այդ հայրենասիրական ճակատում հանդես են գալիս գաղութների հետադիմական ուժերի դեմ։ Այլ կերպ չի կարող լինել։ Մենք քաղաքական աղանդավորներ չենք, հետևաբար չենք պարփակվում մեր սեփական պատյանի մեջ, այլ գնահատում ենք յուրաքանչյուր անձի կամ կազմակերպության գործունեությունը նրա կոնկրետ գործերով։ Թվում է, թե հարցը հստակ է և մեկնաբանությունների կարիք չունի։ Ի դեպ նկատենք, որ հայրենասիրական ճակատում միավորված մի քանի կուսակցություններ ու խմբավորումներ իրենք էլ չեն թաքցնում, որ կոմունիստական գաղափարախոսությունը չեն բաժանում, այլ գործում են զուտ ազգային-հայրենասիրական հողի վրա։ Ռամկավարներն, օրինակ, կոմունիզմից հեռու են այնքան, ինչքան երկինքը երկրից։ Ռամկավար հայտնի գործիչ Նուպար Պերպերյանը գրում է. «Մենք կուզենք նաև, որ Հայաստանի մեր քույրերն ու եղբայրները, ինչպես նաև հայկական հանրապետության կառավարությունը ըմբռնեն մեր գերազանցային ազգային բնույթն ու տարողությունը։ Հարկ է ըմբռնել, որ մեր անվերապահ գնահատանքի խոսքը հայրենի վերաշինության և գիտության ու մշակույթի մարզերուն մեջ ձեռք բերված անհավատալի նվաճումներուն հանդեպ, մեզ չի գունավորեր երբեք...» (խոսքը, իհարկե, կարմիր գույնի մասին է.— Ս. Գ.)։ Այդ լավ գիտեն և դաշնակները, սակայն նրանց կոմունիստական պիտակ են կպցնում կապիտալիստական երկրների կառավարող շրջանների ուշադրությունը նրանց վրա գրավելու համար։ Կպցնում են, բայց չի կպչում։

Չնայած կապիտալիստական շատ երկրներում մոլեգնում է ռեակցիան. չնայած որ սառը պատերազմի մունետիկները բորբոքում են միջազգային մթնոլորտը, այնուամենայնիվ նկատելի է, որ վերջին տարիների ընթացքում հայ դեմոկրատական ուժերը սփյուռքահայ գաղութներում ավելի ու ավելի են ամրապնդվում, ավելի ու ավելի է ուժեղանում նրանց ազդեցությունը սփյուռքահայ մասսաների վրա։ Այդ պայմանավորված է մի շարք պատճառներով։ Սովետական Միության օրեցօր աճող միջազգային հեղինակությունը, խաղաղության համաշխարհային ուժերի համախմբումը իրենց արձագանքն են գտնում սփյուռքի հայաշատ գաղթօջախներում։ Դրան զուգահեռ վերջին տարիներին սփյուռքահայ շատ գաղութներում հյուր եղան Հայաստանի մտավորականության շատ անվանի ներկայացուցիչներ, բազմահազար հայեր հայկական ակումբներում ու դպրոցներում, մշակութային միությունների սրահներում ու քաղաքների հայաշատ թաղերում լսեցին նրանց հայրենաշունչ խոսքը, ծանոթացան նրանց արվեստին։ Վ. Համբարձումյան, Գ. Գասպարյան, Հ. Քոչար, Ս. Կապուտիկյան, Տ. Սազանդարյան, Ջ. Դոլուխանյան, Պ. Լիսիցյան, Թ. Ալթունյան, Գ. Սարյան, Ա. Բաբաջանյան, Դ. Մալյան, Է. Միրզոյան, Ս. Ավետիսյան, Ն. Հովհաննիսյան, Է. Թոփչյան— ահա հայ կուլտուրայի ու գիտության այն գործիչների ոչ լրիվ ցանկը, որոնք վերջին տարիներին եղել են սփյուռքահայ գաղութներում։ Իսկական տրիումֆ եղավ Հայաստանի երաժշտական կոլեկտիվների՝ երգի պարի անսամբլի, պետական պարի անսամբլի, Կոմիտասի անվան կվարտետի և երաժշտական մի քանի այլ խմբերի ու սպորտային կոլեկտիվների այցելությունը սփյուռքի հայ գաղութները։ Սփյուռքահայությունն այժմ սպասում է նոր գործիչների, արվեստի ու գրականության աշխատողների նոր խմբերի այցելությունների, որոնք, անտարակույս, տեղի կունենան։ Դժվար է գերագնահատել այդ ուղևորությունների նշանակությունը։

Դրանց նշանակությունը մեծ է ո՛չ միայն տվյալ ժամանակաշրջանի, այլև սփյուռքահայության գոյատևման առումով։ Ըստ երևույթին այդ այցելությունների նշանակությունը յուրովի լավ է հասկանում նաև դաշնակցությունը, որն աշխատում է ամեն կերպ պղտորել մթնոլորտը, զուր ճիգեր է թափում նսեմացնելու, թուլացնելու այդ հանդիպումների ազդեցությունը ժողովրդական լայն խավերի վրա։ Այդպես եղավ նաև վերջերս, երբ բանաստեղծուհի Սիլվա Կապուտիկյանը գտնվում էր Լիբանանում։ Դաշնակցական մամուլը զորահավաքի էր կոչել քաղաքական դեմագոգիայի ու կեղծիքի մեջ առավել մարզված իր գրչակներին՝ Երվանդ Խաթանասյանին և Ռուբեն Դարբինյանին, որոնք այդ այցելության մեջ անմիջապես տեսան «քաղաքական ետին նպատակներ»։ Սփյուռքահայ մամուլի շատ օրգաններ արժանի հակահարված տվին դաշնակցական մամուլի այդ նոր բարբաջանքներին։ «Ռ. Դարբինյանի երկրորդ մանկությունը» վերնագրով հոդվածում Ա. Ծառուկյանը «Նայիրի» թերթում գրում է, որ «բովանդակ դաշնակցական մամուլին մեջ չկա գրիչ մը, անհեթեթ ու անկշռադատ, անամոթխած ու անպատկառ, որքան այս մեկը»։ Ինչ վերաբերում է «գաղտնի նպատակներին», ապա հեղինակը, հեգնելով իրեն ծիծաղելի վիճակի մեջ դրած, «երկու անգամ մաշած ու երեք անգամ ետև-առաջ դարձված հին վերարկուի պես» այդ մարդուն, գրում է. «Կպարզվի ուրեմն, որ Արամ Խաչատուրյանը, երբ Բեյրութ կուգա կամ.... Ճափոն կերթա (հոն պիտի ըլլա շուտով), լոկ քաղաքական նպատակներու համար է, և ոչ իսկ պզտիկ չափով մը արվեստի անունով, այլ «միայն և միայն» քաղաքական նպատակներու։ Սիլվա Կապուտիկյանը երբ կգրեր «Խոսք իմ որդուն» անմահ քերթվածը մոտ երկու քսանամյակ առաջ, «միայն և միայն» անոր համար էր, որ արտասահման գար օր մը, հազարավոր հայերու առջև արտասաներ, արցունքներ խլեր և Բեյրութի ողջ հայությունը— «միջնաբերդն» ալ միասին— տաներ կապեր «քաղաքական ետին նպատակներու»։ Ահա մի բնորոշ հատված Բեյրութի «Մեր նշանաբանն է հառաջ» թերթից. «Միայն «Ազդակ»-ի էջերուն թառած Խաթանասյանը, ապացուցանելու համար թե ինքն ալ երգիչ է, փորձեց խանգարել այդ համահայկական սիմֆոնին։ Բայց ե՞րբ ագռավէն երաժիշտ է դուրս եկած, որ Խաթանասյանեն հայ դուրս գա։ Մեր արար հայրենակիցները Կապուտիկյանն ավելի լավ հասկցան և անոր ներկայացուցած Հայաստանը ավելի սրտի մոտիկ գտան, քան հայանուն Խաթանասյանը, որուն հայրենիքին ուր ըլլալը մեկ սատված գիտե, մեկ ալ Ամերիկա նստած Դարբինյանը»։ Ինչքան էլ ժամանակի ոգուց հետացած, կարճատես ու բթամիտ լինեն դաշնակցական այս և մյուս ջոջերը նրանք հասկանում են, որ իրենց այս ելույթներով հազիվ թե կարողանան ազդել այն մարդկանց վրա, որոնք վաղուց կողմնորոշվել են ու գտել իրենց տեղը հայրենիքի կողքին։ Նրանք այժմ ավելի շատ մտահոգված են այն բանով, որ կարողանան պահել դաշնակցության ազդեցությունը նրա շարքային անդամների շրջանում։ Սովետական Հայաստանից սփյուռք եկած մարդկանց հրապարակային խոսքը բացում է նրանցից շատերի աչքերը, և նրանք սկսում են տեսնել ո՛չ թե դաշնակցական շեֆերի ներկայացրած Հայաստանը, այլ իսկական, իրական, շոշափելի Հայաստանը։

Զափազանց կարևոր նշանակություն ունեն սփյուռքահայության ամենատարբեր խավերի ներկայացուցիչների այցելությունները Հայաստան։ Սովետական Հայաստանի 40-ամյակի տոնակատարության, Մեսրոպ Մաշտոցի ծննդյան 1600-ամյա հոբելյանի և շատ այլ առիթներով մեզ մոտ հյուր են



եղել սփյուռքահայ գաղութների շատ ներկայացուցիչներ։ Գրողներ՝ Վահե Վահյան, Վահե Հայկ, Կ. Սիտալ, Ա. Ծառուկյան, Գ. Ադդարյան, Մ. Կարաբեկյան, նկարիչներ՝ Հ. Ավագյան, Վ. Խաչատրյան, Զ. Տամադյան, գիտնականներ՝ Ջ. Խանզադյան, Ա. Ալպոյաջյան, Մ. Սևակ, հասարակական գործիչներ՝ Գ. Ահարոնյան, Հ. Կուժունի, Հ. Մադոյան, Հ. Աղբաշյան, հրապարակագիրներ՝ Ա. Ալեքսանյան, Ա. Անդրեասյան, Ե. Կոտալաղյան, Ա. Կիտուր, Օ. Սարյան, Մ. Մարտենց, Գ. Գյոնջյան և բազմաթիվ այլ գործիչներ վերջին տարիներին եղան Հայաստանում. այդ կարևոր իրադարձություն էր սփյուռքահայության կյանքում։ Այդ այցելություններից հետո սփյուռքում լույս տեսան հայրենասիրական շնչով գրված գրքեր ու հոդվածներ, հայկական ակումբներում, դպրոցներում, մշակութային միություններում տեղի ունեցան դասախոսություններ, տպավորությունների երեկոներ, խանդավառ հանդիպումներ։ Սրանք սփյուռքահայության հոգևոր կյանքի հզոր ազդակներ են։

Սփյուռքահայության հետ կապերի ամրապնդման ու ընդլայնման ասպարեզում մեծ և շնորհակալ աշխատանք է կատարում Արտասահմանյան երկրների հետ կապի ու բարեկամության հայկական ընկերությունը և ռեսպուբլիկայի մի շարք այլ կազմակերպություններ։ Դրանց աշխատանքը վերջին տարիների ընթացքում դարձել է ավելի արդյունավետ ու նպատակասլաց։

Սովետական Հայաստանը զարգացող ու բարգավաճող երկիր է, կառուցվող երկիր։ Միանգամայն բնական է, որ իրենց գրավոր ու բանավոր տպավորություններում սփյուռքահայ հյուրերը, նկարագրելով մեր կյանքի բուռն առաջընթացը, նշում են նաև մեր թերությունները, կանգ առնում դեռևս չլուծված հարցերի վրա, լինեն դրանք տնտեսական թե կուլտուրական կյանքի ասպարեզում։ Դրանք բարեկամի, հարազատի կողմից ասված խոսքեր են։ Սակայն սփյուռքահայ մամուլում արդարացիորեն նշվեց առանձին այցելուների տպավորությունների միակողմանի բնույթը։ Իհարկե, ամեն մարդու չի տրված դիտելու, տեսնելու, տեսածներն ընդհանրացնելու շնորհք։ Սակայն բարոյական պարկեշտությունը, իր ասածների համար բարոյական պատասխանատվության զգացումը անհրաժեշտ պայման է։ Սփյուռքահայ մամուլում նշվեց, որ այցելուներից ոմանք իրենց տպավորությունները երբեմն հիմնում են իրենց «հորքուրների» ու «մորքուրների» հետ ունեցած կցկտուր զրույցների, պատահական հանդիպումների վրա, առանց փորձելու թափանցել երևույթների խորքը։ Տողերիս հեղինակը առիթ է ունեցել տեսնելու մի այդպիսի այցելուի, որ Գառնիում ու Գեղարդում իր համար հետաքրքիր ոչինչ չգտավ, իսկ Սևանում գտնված ժամանակ ավտոբուսից չիջավ։ Նա Հայաստանից վերադարձավ առանց Մատենադարանը տեսնելու։ Ըստ երևույթին նրա մտքերն այլ ուղղությամբ էին աշխատում։ Քաղքենիներ ամենուրեք կան, նրանք կան նաև սփյուռքում։

Բազմապիսի են այն հարցերը, որոնք սովորաբար բարձրացվում են սփյուռքահայ մամուլի էջերում։ Դրանք մշտապես հուզում են սփյուռքահայությանը։ Հայոց բազմադարյան պատմության դասերի, նրա գլխավոր իրադարձությունների ու գլխավոր դեմքերի գործունեության գնահատումն ու արժեքավորումը, ժողովուրդների բարեկամության, հայրենիքի ու հայրենասիրության, պատերազմի ու խաղաղության հարցերը իրենց բազմապիսի դրսևորումներով շոշափվում են սփյուռքահայ մամուլի էջերում։ Աշխույժ քննարկվում են հայ ժողովրդի նորագույն պատմության հարցերը։ Դրանց ճիշտ լու-

սաբանումը ակտուալ մեծ նշանակություն ունի, քանի որ դաշնակցական մամուլի էջերում հայ ժողովրդի երեկվա ողբերգության հանցագործներն այսօր փորձում են նենգափոխել պատմական իրադարձությունները, նպատակ ունենալով արդարացնել դաշնակցական վայ-քաղաքագետներին։ Սակայն սփյուռքահայության լայն զանգվածները ճիշտ են հասկանում 1920 թվականի նոյեմբերի 29-ի պատմական բախտորոշ իրադարձության նշանակությունը։ «Առանց կիրքի, սառն մտքի, պաղարյունությամբ հարցնենք,— կարդում ենք «Բյուրակն» թերթում,— ի՞նչ պիտի ըլլար, ինչ կրնար ըլլալ Հայաստանի և հոն ապրող ժողովուրդին վիճակը այդ դժբախտ, հուսահատական օրերուն՝ 1920-ին, եթե նոյեմբերի 29-ը չհասներ, եթե Քյազիմ Կարաբեքիրի բանակը Հայաստանը գրավեր ամբողջությամբ։ Մարգարե ըլլալու պետք չէ կարծեմ։ Պիտի ըլլար այն, ինչ որ եղավ 1914—18-ին Թրքահայ ժողովուրդին։ Պիտի կոտորվեր հայությունը, պիտի գրավվեր Հայաստանը։ Հայ անունը իբրև հավաքականություն իսպառ պիտի վերնար ու արտասահմանի հայն ալ ամեն բանէ հուսահատ պիտի մոռնար ինքզինքն ու իր հայու ծագումը։ Վերջ պիտի տրվեր ամեն աշխատանքի, ամեն երազի... Մեկ խոսքով հայը, հայ ժողովուրդը այլևս պիտի դադրեր հայրենիք ունենալու երազներեն ու մի անգամ ընդմիշտ վերջ պիտի տար իր գոյության... Հավերժական փառք ու հարգանք Սովետական Հայաստանի մտքի, բազուկի ու գրչի բոլոր հերոսներուն, որոնք իրենց անհուն զոհաբերությամբ ու չարքաշ աշխատանքներով շինեցին, ծաղկեցուցին, բարձրացուցին Հայաստանը, ծանոթացնելով զայն բովանդակ աշխարհի ժողովուրդներուն ու մեզի՝ գաղութահայության ալ, հայ ապրելու, հայ մնալու հպարտությունը տվին»։

Սփյուռքահայությանը պատիվ է բերում այն, որ նա աշխույժ հետաքրքրություն է ցուցաբերում ո՛չ միայն Սովետական Հայաստանի, այլև բովանդակ Սովետական Միության տնտեսական ու կուլտուրական կյանքի մասին, սփյուռքահայ առաջադիմական մամուլում լայնորեն նշվում են Սովետական Միության եղբայրական ժողովուրդների արվեստի, գրականության ու կուլտուրայի գործիչների հոբելյանները, պատմական ու ժամանակակից կյանքի խոշոր իրադարձությունները։ Առհասարակ սփյուռքահայության ճնշող մեծամասնության համար բնորոշ է ո՛չ թե ազգային սահմանափակվածությունը, այլ լայն կապերն ու շփումները տեղի ժողովուրդների հետ։ Դա, անտարակույս, հայ աշխատավորական զանգվածների ինտերնացիոնալ մտածողության դրսևորումն է։ Եվ այդ այն ժամանակ, երբ կապիտալիստական շատ երկրների կառավարող շրջանները սերմանում են ռասիզմի ու նացիոնալիզմի գաղափարները։ Երբ հայկական միջավայրում այդպիսի գաղափարախոսություն է քարոզում դաշնակցությունը։

Դաշնակցությունը թշնամանքի ու ատելության թունոտ սլաքներ է նետում հատկապես հայ և ռուս ժողովուրդների բարեկամության դեմ։ Այս գործելակերպը, իհարկե, որևէ հաջողություն չի կարող ունենալ։ Սփյուռքահայության աշխատավորական զանգվածներն այժմ հարուստ կենսափորձ ունեն։ Նրանք այժմ, ավելի քան երբեք, ողջամիտ են, շրջահայաց, նրանք իմաստնացել են կյանքի բազում փորձություններից։ Դաշնակցությունը հաճախ փորձում է վկայակոչել ցարական կառավարության պաշտոնական քաղաքականությունը, վորոնցով-դաշկովների, լոբանով-ռոստովսկիների, նելիդովների քաղաքականությանը։ Նա չի տեսնում, ավելի ճիշտ չի ուզում տեսնել, որ ցարական



պաշտոնական քաղաքականության փլատակների վրա վեր է խոյացել ժողովուրդների բարեկամության ու եղբայրության, իրավահավասարության ու անշահախնդիր փոխօգնության քաղաքականությունը, որը նոր, սոցիալիստական կարգերի մեծագույն հաղթանակներից մեկն է։

Դաշնակցությունը գաղութներում անցնելով ամերիկյան իմպերիալիզմի ծառայության՝ ապարդյուն դավեր է նյութում սփյուռքահայության դեմ, փորձելով նրան կտրել Սովետական Հայաստանից, Սովետական Միությունից, Ռուսաստանից։ Դա Սիզիֆի աշխատանք է։ Անցյալ տարվա ամռանը Թեհրանում մենք տեսանք սովետական հյուպատոսության մոտ հավաքված հազարավոր հայերի։ Գրիբոյեդովի ժամանակներից նրանք իրենց հայացքն ուղղել են դեպի հյուսիս, ուզում են մեկնել Սովետական Միություն, Ռուսաստան, այդ երկուսը նրանց ըմբռնմամբ մի միասնական գաղափար է։ Բայց, չնայած դրան, մենք մեր վառոդը չոր պետք է պահենք, նույնիսկ չնչին ու արհամարհելի թշնամու դեմ։

Ու այս ամենի ֆոնի վրա ավելի ու ավելի հստակ է երևում Սովետական Հայաստանի նշանակությունը սփյուռքահայության համար։ «...Ազգային որևէ ձեռնարկ կամ հաստատություն դատապարտված է հյուծումի,— գրում է «Արև» թերթը,— եթե նա իր արյունն ու ավիշը առած չէ ազգային բաբախուն սիրտեն, մայր Հայրենիքեն, եթե ան գործոն մասնակցություն մը չի բերեր Հայրենիքի խոյանքներուն, թող ըլլա, ինչ փույթ սփյուռքի մեջ»։ Տասնամյակներ շարունակ դաշնակցության գաղափարախոսները քարոզում են ինչ-որ միստիկ, վերացական հայրենիք, որն ստեղծված է հիվանդագին ցնորքների մեջ, բայց հետապնդում է պրակտիկ մի նպատակ՝ հակադրել այդ երևակայական հայրենիքը իրական, ապրող ու զարգացող հայրենիքին։ Հենց այդ մասին է գրում նույն «Արև» թերթը. «Երևակայական հայրենասերները, ուրանալով ներկա Հայաստանը, իրենց համար ստեղծած են երևակայական հայրենիք մը, որ գոյություն չունի. զայն կոչած են հոգեկան հայրենիք, զոր կարելի չէ տեսնել. անհող հայրենիք, զոր կարելի չէ շոշափել. անանուն հայրենիք, որ ոչ անցյալ ունի, ոչ ներկա, ոչ ալ, մանավանդ, ապագա։ Ճշմարիտ հայրենասիրությունը ոչ միայն հավատք մըն է, այլ հավատքներուն ամենեն մեծն ու ամենեն վսեմը, որ լավագույնս ներդաշնակված է մարդկային սիրո զգացումին հետ»։

Սփյուռքահայությունը չի մոռացել հայ ժողովրդի պատմության ողբերգական էջերը, մղձավանջային օրերը, կործանված քաղաքները, մարդկանց մասսայական բնաջնջումը, բռնագաղթը, սովն ու համաճարակները։ Եվ, չնայած դրան, սփյուռքահայ իրականության համար այժմ բոլորովին էլ բնորոշ չեն անցյալի ողբն ու կոծը, սուգն ու շիվանը։ Բնորոշը սփյուռքահայ աշխատավորության համար ապրելու ու գոյատևելու կամքն է, ժողովրդի կենսահաստատ փիլիսոփայությունը, աշխատասիրությունն ու ստեղծելու եռանդը։ Եվ դրա գլխավոր գրավականը վերածնված հայրենիքն է։ Քիչ չեն և հնամոլության դեպքերը, սակայն դրանք սովորաբար դատապարտվում են մամուլի էջերում։

Վերջերս «Զարթոնք» թերթը հրապարակել էր հանրահայտ ծաղրանկարիչ Ալեքսանդր Սարուխանի մի հոդվածը «Շալվարամիտները» խորագրով։ Հեղինակը վերհիշում է իր ընկերներից մեկին, որը, չնայած երկար տարիներ ապրել է Եվրոպայի մայրաքաղաքներում, բայց չի կարողացել ազատագրվել իր

գավառական մտայնությունից։ Ամեն նորություն ձանձրույթ էր պատճառում նրան և ամեն առիթով նա հիշում էր հին, երանելի ժամանակները։ Դառնությամբ պատմում էր նա, թե ինչպես դպրոցի տնօրինությունը կարգադրեց շալվարը փոխարինել եվրոպական տաբատով։ Չէ՞ որ «մեր էրիկմարդության մեծագույն ցույցը կկազմեր հանդիսավորապես հավաքել մեր շալվարին վերը ժողված մասը, լավ մը քաշել չվանը, ու ապա պինդ մը կապել զայն»։ Տարիներ անցան, բայց մարդը չկարողացավ մոռանալ շալվարը։ Ամեն ինչ չափում էր շալվարի լայնքով և նրա չվանի երկայնքով։ Դարձել էր «շալվարամիտ»։ Ու հեղինակը արդարացիորեն նկատում է. «Կարծես աշխարհի երեսին, հայկական իրականության մեջ բան մը փոխված չըլլար՝ անոնք կառչած կմնան հին օրերու պայմաններուն և կհավակնին տանիլ հայ ժողովրդի քաղաքական կյանքը հին ու փտած մտայնությամբ և միջոցներով... մինչ աշխարհ տենդագին կառաջանա, երբ ամեն ինչ նոր շունչ, նոր ոգի, նոր երևույթ մի կստանա, ինչու ոմանք կսպասեն անպայման, որ հայ ազգը տեղ քայլ ընե հոն, ուր կանգնած էր ասկէ 75—80 տարիներ առաջ»։ Ազգային սահմանափակվածության տուրք տվողները խանգարում են մեր առաջընթացին։ Տիեզերական նավերի այս դարում ոմանք, ոչ միայն սփյուռքում, այլև այստեղ, առաջարկում են արխալուխի և խուրջինի հոգեբանությունը։ Եվ դա կոչվում է ազգային ավանդությունների պահպանում։ Լսելով այդ մարդկանց, կարելի է կարծել, որ էլեկտրական լապտերը պետք է փոխարինել յուղի կանթեղով, թուղթը՝ մագաղաթով, զինվորական համազգեստը՝ սաղավարտներով, հարսի երեսին քող կապել ու նորից նրան դարձնել չխոսկան, և այսպես անվերջ։ Ազգային բոլոր ավանդությունները ու սովորությունները չեն կարող պահպանվել։ Այդպես էր անցյալում, այդպես է և այժմ։ Պետք է պահպանել և ապրեցնել ժողովրդի լավագույն ավանդությունները։ Պահպանել ու զարգացնել մեր հրաշալի ճարտարապետության ոճը, պահպանել ու զարգացնել մեր արձակ ու չափածո գրականության քաղաքացիական պաթոսն ու շունչը, կերպարվեստի, երաժշտության մեր հրաշալի ժառանգությունը, ուսումնասիրել ու արժեքավորել մեր մտքի ու գրչի տիտանների թողած մտավոր հարստությունները, սովորել նրանցից կառուցել նորը, առաջավորը, բարձրագույնը։ Պետք է բռնել ձեռքից ու լույս աշխարհ հանել նրանց, ովքեր խխունջի պես մնում են իրենց պատյանի մեջ և մեկ անգամ էլ հիշեցնել նրանց, որ եթե հայ ժողովուրդն անցյալում և այժմ ստեղծել է համաշխարհային նշանակություն ունեցող համամարդկային հոգևոր արժեքներ, ապա այդ եղել է շնորհիվ այն բանի, որ առողջ բնազդով միշտ մերժել է ազգային սահմանափակվածությունը։

Սփյուռքն այժմ անխզելի կապերով զոդված է Սովետական Հայաստանի հետ։ Սփյուռքահայության լայն զանգվածները վաղուց են ընտրել իրենց միակ և ճիշտ ուղին։ Այդ ուղին տանում է դեպի հավերժ կենդանի ու հավերժ անպարտելի հայրենիքը, դեպի խաղաղություն ու լուսավոր կյանք։

---



# ԷՋԵՐ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

(1917 թվականի մարտ—ապրիլի սկիզբը)

Ա. Վ. ՄՆԵԳՈՎ

Вопросы истории КПСС

ՍՄԿՊ XX համագումարից հետո մեծ աշխատանք ծավալվեց պատմական գիտությունը մաքրելու համար այն կոպիտ խեղաթյուրումներից, որոնք նրա մեջ ներմուծվել էին Ստալինի անձի պաշտամունքի ժամանակաշրջանում։ Ստալինյան դիկտատը պարտիայի պատմության բնագավառում շատ բացասաբար արտահայտվեց մասնավորապես Փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո, մինչև Վ. Ի. Լենինի ժամանումն ընկած ժամանակաշրջանում պարտիական կազմակերպությունների գործունեության լուսաբանման մեջ։ Վերջին տարիների ընթացքում հրապարակվել են լենինյան մի ամբողջ շարք նոր աշխատություններ, որոնք իր ժամանակ չեն մտել Երկերի չորրորդ հրատարակության համապատասխան հատորների մեջ կամ ընդհանրապես նախկինում չեն հրապարակվել։ Հրատարակվել են 1917 թ. մարտ—ապրիլն ընկած ժամանակաշրջանի վերաբերյալ կարևոր փաստաթղթեր, դրանցից մի քանիսը լույս են տեսել առաջին անգամ՝ ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմի Բյուրոյի (1917 թ. մարտ) արձանագրություններն ու բանաձևերը[1], պարտիական աշխատողների Համամիութենական (մարտյան) խորհրդակցության արձանագրությունները[2]։

Պարտիայի գործունեության այս ժամանակաշրջանը իսկական գիտական գիրքերից է լուսաբանվում «ՍՄԿՊ պատմություն» դասագրքի երկրորդ, լրացված հրատարակության մեջ, որտեղ ժխտվում են «Համառոտ դասընթացի» սխալ կոնցեպցիաները և վերականգնվում է պատմական ճշմարտությունը։

Պարտիայի XXII համագումարից հետո, որը նոր ուժով դրեց քաղաքականության և գիտության մեջ ստալինյան կամայականության հետևանքները վերացնելու հարցերը, և իդեոլոգիական աշխատանքի հարցերի վերաբերյալ այնուհետև կայացած Համամիութենական խորհրդակցությունից հետո պատմական-

1 «Великая Октябрьская социалистическая революция. Документы и материалы». Т. 1, Изд-во АН СССР, М., 1957. Ավելի լրիվ հրապարակումը՝ «Вопросы истории КПСС». 1962, № 3. Այստեղ և սրանից հետո տարեթվերը բերվում են հին տոմարով։

2 «Великая Октябрьская социалистическая революция. Документы и материалы» Т. 1. Այս նույն հրապարակումը լրացումներով լույս տեսավ «Вопросы истории КПСС»-ում, 1962, №№ 5 և 6. 1957 թվականի հրապարակման մեջ չէին մտցվել մի շարք արձանագրություններ, այդ թվում 1917 թվականի ապրիլի 1-ի խորհրդակցության արձանագրությունը, որի մեջ շարադրվում էր մենշևիկների հետ միավորվելու համար պայքարող Ստալինի սխալ ելույթը։

պարտիական զանազան պրոբլեմներ, մասնավորապես պարտիական կազմակերպությունների 1917 թվականի մարտի—ապրիլի սկզբի գործունեությունը սկսեցին ավելի լայնորեն լուսաբանվել դիսերտացիաներում, մենագրություններում, պատմական-պարտիական պարբերական մամուլում։ Այսպես, վերջին ժամանակում այդ հարցերը ավելի կամ պակաս չափով շոշափվել են Ե. Բուգաևի, Վ. Եվգրաֆովի, Ա. Լուկաշովի, Ի. Մինցի, Ն. Ռուբանի, Ա. Սովոկինի և մի շարք այլ աշխատություններում[3]։

Հեղինակների մեծ մասը հիմնականում ճիշտ դիրքերից է ցույց տալիս պարտիայի տակտիկական դիրքորոշումների մշակումը տվյալ ժամանակաշրջանում, մի շարք աշխատություններ պարունակում են վավերական նոր նյութ։ Սակայն դեռևս հիմքեր չկան եզրակացնելու, թե հիշյալ հոդվածներում և մյուս աշխատություններում սպառիչ կերպով լուսաբանված են մեզ հետաքրքրող պատմական ժամանակաշրջանի բոլոր հիմնական հարցերը։ Ցավոք սրտի, մի շարք դեպքերում դեռևս տուրք է տրվում անցյալ կոնցեպցիաներին։ Միշտ չէ, որ համոզիչ ու օբյեկտիվ կերպով մեկնաբանվում են առանձին փաստաթղթեր և դրանց կապը իրադարձությունների ընդհանուր շղթայի հետ։ Մասնավորապես, մեր կարծիքով, չի կարելի համաձայնել որոշ գնահատականների ու հետևությունների հետ, օրինակ, առանձին աշխատություններում Ստալինի այն ժամանակվա դիրքի գնահատականների հետ։ Այս ամենը վկայում է տվյալ պրոբլեմի հետագա մշակման, մի շարք սկզբունքային հարցերի ճշգրտման անհրաժեշտության մասին, այն հաշվով, որ մինչև վերջ վերացվեն անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում կուտակված խեղաթյուրումները։

Ոչ մի չափով չհավակնելով բազմակողմանիորեն լուսաբանել պարտիայի 1917 թվականի մարտի—ապրիլի սկզբի (մինչև Վ. Ի. Լենինի վերադարձը էմիգրացիայից) գործունեության վերաբերյալ թեման, ներկա հոդվածի հեղինակը կանգ է առնում լոկ մի քանի էական հարցերի վրա, որոնք երկար ժամանակ սխալ են լուսաբանվել։

***

Փետրվարյան ռևոլյուցիայից հետո բոլշևիկյան կազմակերպություններն ընդհատակից դուրս եկան պայքարում կոփված և Լենինի ղեկավարությամբ կուտակված ռևոլյուցիոն փորձով հարստացած։ Երկրի հիմնական արդյունաբերական կենտրոններում՝ Պետրոգրադում, Մոսկվայում, Կիևում, Եկատերինոսլավում, Խարկովում, Լուգանսկում, Մակեևկայում և Գոռլովկայում, Եկատերինբուրգում, Ռիգայում, Իվանովոյում, Տվերում, Սամարայում, Սարատովում, Կազանում և այլ քաղաքներում պահպանվել էին ինքնուրույն բոլշևիկյան կազմակերպություններ։ Մարքս-լենինյան ուսմունքով զինված, պարտիան պայքարում էր ռևոլյուցիայի հետագա խորացման համար։ Լեգալ գործունեության առաջին իսկ օրերից, նոր պայմաններում, բոլշևիկները պայքար

[3] *Е. Бугаев.* Ленинский план перехода к социалистической революции. «Коммунист», 1962, № 6; *В. Е. Евграфов.* Некоторые вопросы тактики партии в марте—начале апреля 1917 года. «Вопросы истории КПСС», 1962, № 3; *А. Лукашов.* Приезд вождя. «Правда», 16 апреля 1962 г.; *И. Минц.* Вторая революция в России. «Правда», 12 марта 1962 г.; *Н. Рубан.* Великий исторический документ. «Правда», 17 апреля 1962 г.; *А. Совокин.* Установка партии на мирное развитие революции в 1917 году. М., 1962.



էին մղում մենշևիկների ու էսէռների դեմ՝ աշխատավորական մասսաների համար, մերկացնում էին պատերազմի իմպերիալիստական բնույթը և բուրժուական ժամանակավոր կառավարության հակառևոլյուցիոն էությունը։

Մեծ աշխատանք կատարվեց պարտիական շարքերի կազմակերպական ամրապնդման և համախմբման ուղղությամբ։ 1917 թվականի մարտ—ապրիլի համար բնորոշ է պարտիական կազմակերպությունների բուռն աճումը, պարտիայի թվական կազմի զգալի ավելացումը։ Այսպես, ընդհատակից դուրս գալու պահին Պետրոգրադի քաղաքային կազմակերպությունում կար պարտիայի 2 հազար, իսկ Ապրիլյան կոնֆերենցիայի մոտերքը՝ 16 հազար անդամ, Մոսկվայի կազմակերպությունում համապատասխանորեն՝ 600 և 7.000, Եկատերինոսլավի կազմակերպությունում՝ 400 և 1.500, Լուգանսկի կազմակերպությունում՝ 100 և 1.500, Խարկովի կազմակերպությունում՝ 105 և 1.200, Կիևյանում՝ 200 և 1.900, Եկատերինբուրգում՝ 40 և 1.700, Սարատովում՝ 60 և 1.600 և այլն։ Ընդհանուր առմամբ, մարտ-ապրիլ ամիսների ընթացքում պարտիայի անդամների քանակն աճեց երկու անգամ. VII (Ապրիլյան) կոնֆերենցիայի մոտերքը նրա շարքերում կար մոտ 80 հազար մարդ[4]։

Պարտիական կոմիտեները վերակազմվեցին դեմոկրատական ցենտրալիզմի հիման վրա։ Ամենուրեք անցկացան պարտիական օրգանների ընտրություններ։ «Պրավդա»-ից՝ պարտիայի Կենտրոնական և Պետերբուրգի կոմիտեների օրգանից հետո 1917 թվականի մարտին սկսեցին բոլշևիկյան թերթեր լույս տեսնել Մոսկվայում, Կիևում, Խարկովում, Եկատերինոսլավում, Ռևելում, Սարատովում, Կազանում և այլ քաղաքներում։ «Պարտիայի շրջանային կազմակերպությունները,— հաղորդում էր «Պրավդա»-ն Պետրոգրադի մասին «Ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի կազմակերպությունը» հոդվածում,— ռևոլյուցիայի օրերին աճում են ո՛չ թե օրերով, այլ ժամերով։ Կազմակերպված բանվորները չեն բավարարվում ըստ շրջանների եղած կազմակերպություններով, նրանք պարտիական բջիջներ են կազմակերպում ըստ ենթաշրջանների և նույնիսկ ըստ առանձին գործարանների։ Հարկավոր է նրանց պինդ զոդել կազմակերպման միասնությամբ, գործողության միասնությամբ»[5]։ Մոսկվայում արդեն մարտի առաջին կեսին բոլշևիկյան բջիջների լայն ցանց էր ստեղծվել արդյունաբերական ձեռնարկություններում, երկաթուղային տրանսպորտում, այդ նույն ժամանակ սկսեցին կազմակերպվել շրջանային պարտիական կազմակերպություններ[6]։ Եվ այդպես էր ամենուրեք։

Պայքարելով աշխատավոր մասսաների կազմակերպվածության ու համախմբվածության համար պարտիան հսկայական աշխատանք էր կատարում սովետներում, արհեստակցական միություններում, ֆաբրիկա-գործարանային կոմիտեներում, Կարմիր գվարդիայի ստեղծման ուղղությամբ, կանանց և երիտասարդության շրջանում, մասսայական բանվորական բոլոր կազմակերպություններում։ Այդ գործունեության լայն մասշտաբների մասին է վկայում

[4] Տե՛ս *В. В. Аникеев.* Сведения о большевистских организациях с марта по декабрь 1917 года. «Вопросы истории КПСС», 1958, № 2, стр. 131.

[5] «Պրավդա» № 1, 1917 թվականի մարտի 5։

[6] Տե՛ս *К. Т. Семенов.* Рост и укрепление большевистских партийных организаций в марте-апреле 1917 года. «Вопросы истории КПСС», 1957, № 2, стр. 144—145.

մասնավորապես այն փաստը, որ արդեն 1917 թվականի ապրիլին կար բանվորների և զինվորների դեպուտատների միայն գավառային մինչև 400 սովետ, մոտավորապես նույնքան էլ գյուղացիական դեպուտատների սովետներ կային[7]: Փետրվարյան ռևոլյուցիայից հետո առաջին իսկ օրերից բանվորները բոլշևիկների ղեկավարությամբ հայտային կարգով մտցնում էին ութժամյա աշխատանքային օր, վերացնում էին ցարական ադմինիստրացիան, ցրում ոստիկանությունը և ստեղծում միլիցիա, զբաղվում էին մատակարարման հարցերով և այլն:

Ինքնակալության տապալումից հետո պարտիան բանվորներին կոչ արեց անհապաղ ձեռնամուխ լինել արհմիությունների վերակառուցմանն ու կազմակերպմանը: Մարտի 8-ին «Պրավդա»-ն հրապարակեց հետևյալ հաղորդագրությունը. «Պետերբուրգի կոմիտեն ընկերներին կոչ է անում հայտային կարգով անհապաղ կազմակերպել արհեստակցական միություններ»: Հենց այդտեղ էլ հաղորդվում էր պարտիայի Մոսկվայի կոմիտեի համանման կոչի մասին: Ընդամին «Պրավդա»-ն ընդգծում էր բանվոր դասակարգի քաղաքական և տնտեսական պայքարի օրգանական կապի անհրաժեշտությունը: Բանվորները ակտիվորեն արձագանքեցին բոլշևիկների կոչին. արդեն 1917 թվականի ապրիլին արհմիությունները միավորում էին 250 հազար բանվորների, իսկ մայիս ամսվա մոտերքը արհմիությունների անդամների թիվը աճեց մինչև մեկ և կես միլիոն մարդու:

Կենտրոնում և տեղերում հսկայական աշխատանք էր կատարվում Կարմիր գվարդիայի՝ ռևոլյուցիայի մարտական ուժի ստեղծման ու ամրապնդման ուղղությամբ: Այսպես, 1917 թվականի մարտ—ապրիլին բոլշևիկների ղեկավարությամբ կարմիրգվարդիական ջոկատներ ստեղծվեցին խոշորագույն պրոլետարական կենտրոններում՝ Պետրոգրադում, Մոսկվայում, Խարկովում, Լուգանսկում, Նիժնի Նովգորոդում, Եկատերինոսլավում և այլ քաղաքներում[8]:

Վիթխարի աշխատանք ծավալելով մասսաների մեջ, բոլշևիկները լայնորեն պրոպագանդում էին իրենց ռևոլյուցիոն լոզունգները, մերկացնելով մենշևիկների ու էսեռների համաձայնողական քաղաքականության իսկական բնույթը:

Վ. Ի. Լենինը, որը այդ ժամանակ գտնվում էր էմիգրացիայում, հսկայական ուշադրությամբ հետևում էր Ռուսաստանի ռևոլյուցիայի մասին հաղորդագրություններին: Ն. Կ. Կրուպսկայան հիշում է, թե ինչպես էր Իլյիչը ձգտում դեպի հայրենիք. նա հասկանում էր, որ իր տեղը այնտեղ է, որտեղ վճռվում է ռևոլյուցիայի բախտը: Չնայած այն տարածությանը, որ Լենինին բաժանում էր Ռուսաստանից, նա տվեց ստեղծված քաղաքական իրադրության հանճարեղ վերլուծությունը, ճիշտ որոշելով մեր պարտիայի ստրատեգիական և տակտիկական գիծը:

Մինչև Լենինի և Կենտկոմի մյուս անդամների վերադարձը էմիգրացիայից, պարտիական աշխատանքի ընդհանուր ղեկավարությունը իրագործում էր Կենտկոմի Ռուսական բյուրոն: Ձերբակալություններից զգալիորեն թուլացած, ռևոլյուցիայի սկզբին Կենտկոմի Բյուրոյի կազմում էին Զալուցկին, Մոլոտովը

7 Տե՛ս *И. И. Минц*. Об освещении некоторых вопросов истории Великой Октябрьской социалистической революции. «Вопросы истории КПСС», 1957, № 2, стр. 23.

8 Նույն տեղը, էջ 34:



և Շլյապնիկովը. հետագա օրերին այն համալրվեց աքսորից վերադարձածներով: Մարտի կեսերի մոտերքը, դատելով ըստ փաստաթղթերի, բյուրոյի անդամների թիվը հասավ 18-ի: Հետագայում ևս, ընդհուպ մինչև Լենինի ժամանումը, նրա կազմը բազմիցս փոփոխվում էր: Այդ ժամանակաշրջանում Կենտկոմի Բյուրոյի մեջ տարբեր ժամանակ մտցվեցին Երեմեևը, Շվեդչիկովը, Կալինինը, Շուտկոն, Խախարևը, Զալեժսկին, Օլմինսկին, Մ. Ի. Ուլյանովան, Ա. Ի. Ուլյանովա-Ելիզարովան, Բոկին և ուրիշներ:

Երկիշխանության, շարունակվող իմպերիալիստական պատերազմի և ցարիզմի նկատմամբ հեշտ հաղթանակի՝ լայն մասսաներին համակած շմոլքի պայմաններում հարկավոր էր առաջին իսկ օրերից գրավել քաղաքական հստակ դիրքեր: Կենտկոմի Բյուրոն պատերազմի հարցերի վերաբերյալ մշակեց ընդհանուր առմամբ ճիշտ, ինտերնացիոնալիստական գիծ և վարեց բուրժուական ժամանակավոր կառավարության հակաժողովրդական դասակարգային էությունը մերկացնելու տակտիկա: Այսպես, տակտիկական խնդիրների մասին Բյուրոյի բանաձևում (1917 թվականի մարտի 4) նշվում էր խոշոր բուրժուազիայի և ազնվականության ներկայացուցիչներից կազմված ժամանակավոր կառավարության ըստ էության հակառևոլյուցիոն բնույթը: Հանդես գալով դրանց հետ որևէ համաձայնության դեմ, Կենտկոմի Բյուրոն առաջարկում էր պայքար ծավալել ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարության ստեղծման համար[9]:

Սակայն մինչև Լենինի ժամանումը Կենտկոմի Ռուսական բյուրոն մի շարք սկզբունքային հարցերում ցուցաբերում էր որոշ անհետևողականություն: Վ. Ի. Լենինը ընդգծում էր, որ Փետրվարյան ռևոլյուցիայից հետո Ռուսաստանը դարձել է ամենաազատ երկիրը աշխարհում[10]: Պարտիական աշխատանքին մասնակից էին դառնում նոր ուժեր և ամենից առաջ բանվորներ, որոնք քաղաքականապես աճել էին պարտիայի ղեկավարությամբ մղված պայքարում: Ռևոլյուցիայի հետագա հաջող զարգացման համար բոլշևիկյան կազմակերպություններից պահանջվում էր քաղաքական արագ կողմնորոշում, տակտիկական հստակ դիրքորոշումների ժամանակին մշակում: Այս նոր պայմաններում պարտիական որոշ կոմիտեներ սկզբնական շրջանում չկարողացան կողմնորոշվել բարդ իրադրության մեջ, իսկ պարտիայի աչքի ընկնող առանձին աշխատողներ գրավեցին սխալ, լենինյան ցուցումներին հակասող դիրք:

Պատմական-պարտիական գրականության մեջ լայն լուսաբանում է ստացել պարտիայի պայքարը ռևոլյուցիայի զարգացման լենինյան գծի համար 1917 թվականի մարտ-ապրիլին, համապատասխան պարտիական դիրքորոշումների մշակման պրոցեսը: Այս կապակցությամբ պատմաբանների ուշադրությունն էր գրավում նաև այդ ժամանակաշրջանում պարտիայի առանձին աշխատողների դերի պարզաբանումը: Մասնավորապես, բավականաչափ լրիվ լուսաբանված է Կամենևի սխալ դիրքը 1917 թվականի մարտ-ապրիլին. այդ դիրքը միանգամայն արդարացի կերպով որակվում է որպես կիսամենշևիկյան, օպորտունիստական: Սկզբունքային բնույթի լուրջ սխալներ էր թույլ տալիս նաև Ստալինը, որը այդ ժամանակ բոլոր հիմնական հարցերում պաշտպա-

9 Տե՛ս «Протоколы и резолюции Бюро ЦК РСДРП(б)». «Вопросы истории КПСС», 1962, № 3, стр. 137.

10 Տե՛ս *В. И. Ленин*. Полн. собр. соч., т. 31, стр. 103, 114.

նում էր Կամենևին։ Ինչպես հայտնի է, Ստալինը հետագայում ընդունում էր իր սխալ դիրքը։ Այդ սխալների մասին մասնավորապես խոսվում էր նաև «ՀամԿ(բ)Պ պատմության» Ե. Մ. Յարոսլավսկու խմբագրությամբ 1929 թվականին լույս տեսած չորրորդ հատորում։ Սակայն 1933 թվականին այդ աշխատության վերահրատարակման ժամանակ նրա միջից հանվել էին Ստալինի 1917 թվականի սխալների մասին հիշատակումները։ Հետագայում Ստալինի դիրքը կամ լռության էր մատնվում կամ լուսաբանվում էր ակնհայտ տենդենցիոզ կերպով[11]։ Հակառակ փաստերին, Ստալինին համառորեն ներկայացնում էին իբրև լենինյան տակտիկայի հետևողական կողմնակից, որը չի համապատասխանում իրականությանը։

Պարտիական ղեկավարների գործունեության բազմակողմանի լուսաբանումը պետք է խիստ կերպով համապատասխանի այն իսկական դերին, որ նրանք խաղացել են պատմության այս կամ այն էտապում, ինչպես նաև այն դիրքին, որ նրանք ամեն մի տվյալ պահին գրավել են պարտիայի քաղաքականության սկզբունքային հարցերում։ Այս կապակցությամբ դիմենք այն փաստերին, որոնք վերաբերում են Ստալինի 1917 թվականի մարտ-ապրիլի սկզբի գործունեությանը։

1917 թվականի մարտի 12-ին պարտիական մի շարք աշխատողների՝ աքսորից վերադառնալու կապակցությամբ Կենտկոմի Բյուրոն քննարկում էր «Նոր անձանց մասին...» հարցը։ Մուրանովին Բյուրոյի անդամների կազմի մեջ մտցրին միաձայն։ «Ստալինի վերաբերյալ,— գրված է արձանագրության մեջ,— զեկուցվեց, որ նա 1912 թվականին եղել է Կենտկոմի գործակալ ուստի և ցանկալի կլիներ Կենտկոմի Բյուրոյի կազմում, բայց նկատի ունենալով նրան հատուկ մի քանի անձնական գծերը, Կենտկոմի Բյուրոն արտահայտվեց այն իմաստով, որ նա հրավիրվի խորհրդակցական ձայնով։ Ինչ վերաբերում է Կամենևին, ապա հաշվի առնելով նրա վարքագիծը դատավարությունում և այն բանաձևերը, որ նրա վերաբերյալ բոլշևիկներն ընդունել էին ինչպես Սիբիրում, այնպես էլ Ռուսաստանում, որոշվել է նրան ընդունել «Պրավդա»-ի աշխատակիցների թվում, եթե նա առաջարկի իր ծառայությունները, բայց պահանջել նրանից բացատրելու իր վարքագիծը։ Նրա հոդվածներն ընդունել իբրև նյութ, բայց նրա ստորագրությամբ լույս չընծայել»[12]։

Արդեն այն ժամանակ պարտիայի ղեկավար շրջաններում նշվում էին Ստալինի անձնական բացասական գծերը և Կամենևի ոչ-բոլշևիկյան դիրքը Դումայի բոլշևիկյան ֆրակցիայի նկատմամբ դատական պրոցեսում նրա ունեցած վարքագծի կապակցությամբ։ Հետագա իրադարձությունները ցույց տվեցին, որ Կենտկոմի Բյուրոյի երկյուղը իզուր չէր։ Ստալինն իրեն անմիջապես հակադրեց պարտիական մնացած ղեկավարներին, հաշվի չէր առնում Կենտկոմի Բյուրոյի որոշումները։ Մասնավորապես, Ստալինը Կամենևի և Մուրանովի հետ միասին, օգտագործելով Կենտկոմի անդամի իր նախկին դիրքը, վիժեցրեց Կենտկոմի Բյուրոյի որոշումը «Պրավդա»-ի խմբագրության կազմի մասին։

Գործը հետևյալ կերպ էր։ 1917 թվականի մարտի 13-ին Կենտկոմի Բյու-

11 Տե՛ս, օրինակ, «ՀամԿ(բ)Պ պատմություն։ Համառոտ դասընթաց»։ Եր. 1938, էջ 253. «Ի. Վ. Ստալին։ Համառոտ կենսագրություն»։ Եր., 1947, էջ 60—62։

12 «Протоколы и резолюции Бюро ЦК РСДРП(б)». «Вопросы истории КПСС», 1962, № 3, стр. 143.



րոն հաստատեց «Պրավդա»-ի խմբագրությունը հետևյալ կազմով. Օլմինսկի, Ստալին, Կալինին, Երեմեև և Մ. Ի. Ուլյանովա[13]։ Սակայն արդեն մարտի 15-ին «Պրավդա»-ում հայտարարվեց, թե խմբագրության կազմի մեջ մտել են Կամենևը, Ստալինը և Մուրանովը. ընդսմին խմբագրության մյուս անդամների ազգանունները չէին հիշատակվում։

Ինչպես երևում է մարտի 15-ի արձանագրությունից, այդ փոփոխությունները կատարվել էին Կենտկոմի Բյուրոյի որոշումից անկախ և դրան հակառակ։ Ըստ երևույթին, աննորմալ իրադրության պատճառով Օլմինսկին հենց այդ նիստում էլ հայտնեց խմբագրությունում աշխատելուց իր հրաժարվելու մասին։ Հանդես բերելով անհետևողականություն, Կենտկոմի Բյուրոն ընտրեց «Պրավդա»-ի խմբագրության նոր կազմ. «Մոլոտով, Կամենև և Երեմեև, իսկ Ստալինը ժամանակավորապես, մինչև Երեմեևի վերադարձը»[14]։ Այդ հաստատման իսկական բնույթի և հանգամանքների մասին բավական պարզ խոսում է Կենտկոմի Բյուրոյի մարտի 17-ի նիստի արձանագրությունը, երբ մի շարք ընկերների պահանջով վերստին քննարկվեց «Պրավդա»-ի խմբագրության հարցը։ «Կենտկոմի և ՊԿ-ի Բյուրոն,— ասված է Օլմինսկու առաջարկած բանաձևում,— բողոքելով Կամենևին «Պրավդա»-ի խմբագրության մեջ մտցնելու գործում զավթողական կարգի դեմ, նրա վարքագծի և «Պրավդա»-ում նրա մասնակցության հարցը փոխադրում է ամենամոտակա պարտիական կոնֆերենցիան։ Թեր՝ 8, 1 ձեռնպահ»[15]։

«Պրավդա»-ի խմբագրության մեջ Կամենևի, Ստալինի և Մուրանովի կատարած կամայական փոփոխությունների մասին, Կամենևի և Ստալինի այն օրերին ունեցած առանձին, Կենտկոմի Բյուրոյի դիրքից տարբերվող վարքագծի մասին կան մի շարք պարտիական աշխատողների հիշողություններ։ Պարտիայի ավագագույն գործիչներից մեկը, այն օրերի Կենտկոմի Բյուրոյի ակտիվ աշխատող Ե. Դ. Ստասովան պատմում է, որ «երբ Կամենևը Աչինսկից եկավ Պետերբուրգ, Ի. Վ. Ստալինը առաջարկեց նրան մտցնել «Պրավդա»-ի խմբագրության մեջ։ Կենտկոմի Բյուրոյի մի շարք անդամներ այդ բանն անընդունելի էին համարում։ Սակայն Ստալինը գործում էր շատ համառորեն, և վերջ ի վերջո նրա առաջարկությունն անցավ. Կամենևը մտցվեց «Պրավդա»-ի խմբագրության մեջ։

Ստալինը և Կամենևը արագ կերպով ղեկավար դիրք գրավեցին «Պրավդա»-ի խմբագրությունում և քիչ էին հաշվի առնում Կենտկոմի Բյուրոյի կարծիքը։ Նրանց ղեկավարությամբ թերթը շուռ եկավ դեպի աջ և սկսեց հանդես գալ ժամանակավոր կառավարության պայմանական պաշտպանության օգտին։ Շվեյցարիայից ժամանելուց հետո Վ. Ի. Լենինը հարկադրված եղավ խիստ փոխել «Պրավդա»-ի գիծը, որ վարում էին Կամենևը և Ստալինը»[16]։

Կամենևի, Ստալինի և Մուրանովի ինքնագլուխ գործողությունների մասին, Կենտկոմի Բյուրոյի քաղաքական գծին նրանց համաձայն չլինելու մասին են վկայում նաև այն ժամանակաշրջանում Կենտկոմի Բյուրոյի անդամ հանդիսացած Ա. Շլյապնիկովի հիշողությունները։ Նա պատմում է, որ Սիբիրից եկած բոլշևիկների հետ տեղի ունեցած զրույցից հետո Կենտկոմի Բյուրոյի անդամ-

13 Նույն տեղը, էջ 146։

14 Նույն տեղը, էջ 148։

15 Նույն տեղը, էջ 150։

16 «Новый мир», 1956, № 11, стр. 5.

ների մեջ կասկածներ առաջացան նրանց քաղաքական գծի վերաբերյալ: Իսկ իրենք՝ եկածները, իրենց այնպես պահեցին, որ, չցանկանալով հաշվի նստել մինչև իրենց գալը ստեղծված ղեկավար կազմակերպության հետ, առաջ բերեցին պարտիական աշխատողների մի զգալի մասի վրդովմունքը: Ղեկավար պարտիական օրգանները մտցվեցին տարաձայնություններ և կազմակերպական սուր բախումներ: «Գործը միայն ներպարտիական քննադատությամբ չսահմանափակվեց: Ընկ. ընկ. Կամենևը, Ստալինը և Մուրանովը որոշեցին տիրել «Պրավդա»-ին և այն վարել «իրենց» ձևով: Ընկ. Ստալինը գործում էր Կենտկոմի անդամի իրավունքներով. ընկ. Կամենևը որպես «Կենտրոնական օրգանի անդամ», Պետ. դումայի դեպուտատ ընկ. Մուրանովի հետ համատեղ խմբագրական հեղաշրջում կատարեցին «Պրավդա»-ում, մտնելով խմբագրության կազմի մեջ, նշանակված լինելով Կենտկոմի Բյուրոյի կողմից՝ Պետերբ. կոմիտեի հետ համաձայնեցնելով: Այդ «խմբագրական հեղաշրջման» տակ ընկած էին սկզբունքային խոր տարաձայնություններ, որոնց առկայությունը եկածները թաքցնում էին, բայց որոնց բովանդակությունը մենք որսում էինք Սիբիրից եկած ընկերների հետ տեղի ունեցած զրույցներից...»[17]:

Բերենք մեկ վկայություն ևս տվյալ հարցի վերաբերյալ: 1917 թվականի մայիսի 30-ին Կալինինը, հանդես գալով Պետրոգրադի կոմիտեի նիստում, Լենինի ներկայությամբ հայտարարեց հետևյալը. «Վերցնենք «Պրավդա»-ի օրինակը: Սկզբում «Պրավդա»-ն վարում էր մեկ քաղաքականություն: Եկան ընկ. Ստալինը, Մուրանովը, Կամենևը և ղեկը շուռ տվեցին ուրիշ կողմ»[18]:

Պետք է ասել, որ ո՛չ Պետրոգրադի կոմիտեի վերոհիշյալ նիստում, ո՛չ 1925 թվականին Շլյապնիկովի գրքի լույս ընծայումից հետո ոչ ոք կասկածի չէր ենթարկում իրադարձությունների անմիջական մասնակիցների՝ մեր բերած վկայությունները: Այդ առթիվ առարկությունները երևան եկան զգալիորեն ավելի ուշ: Այսպես, 1957 թվականին Մ. Ա. Դվոյնիշնիկովը և Շ. Ի. Ձիվաձեն, հանդես գալով մեմուարային գրականության մասին հոդվածով, փորձում էին անհամաձայնություն հայտնել Ե. Դ. Ստասովայի վերևում բերված հաղորդմանը, հայտարարելով, թե Ստալինը մասնակից չէ «Պրավդա»-ի խմբագրության կազմի ինքնագլուխ փոփոխմանը[19]:

Ստալինի դիրքը Կամենևի կիսամենշևիկյան դիրքորոշումներից սահմանազատելու, հոգացողաբար առանձնացնելու ձգտում չի կարելի չտեսնել նաև Ի. Ֆ. Պետրովի մենագրությունում, որը նվիրված է Հոկտեմբերյան ռևոլյուցիայում պարտիայի գործունեությանը: Հանգամանորեն լուսաբանելով Կամենևի՝ «Պրավդա»-ի խմբագրության կազմի մեջ մտնելու, թերթում նրա գրաված սխալ դիրքի հարցը, հեղինակը անհրաժեշտ է համարել Կամենևի օպորտունիստական գծին հակադրել Ստալինի դիրքը: «Ռևոլյուցիայի նվաճումները ամեն կերպ զարգացնելու քաղաքական գիծը,— պնդում է Ի. Ֆ. Պետրովը,— «Պրավդա»-ի էջերում արտահայտվում էր Ի. Վ. Ստալինի, Մ. Ի. Կալինինի և Վ. Ի. Լենինի մյուս աշակերտների ու զինակիցների հոդվածներում»[20]:

[17] *А. Шляпников*. Семнадцатый год. Книга вторая. М.—Л., 1925, стр. 180.

[18] «Первый легальный Петербургский комитет большевиков в 1917 году». М.—Л., 1927, стр. 117.

[19] *Տե՛ս* «Вопросы истории КПСС», 1957. № 1, стр. 204—205.

[20] *И. Петров*. Стратегия и тактика партии большевиков в Октябрьской революци. М., 1957, стр. 43.



Սակայն Կենտկոմի Բյուրոյի արձանագրությունները, «Պրավդա»-ի գիծը Կամենևը և Ստալինը խմբագրության մեջ մտնելուց հետո, վերջապես, այն ժամանակվա պարտիական աշխատողների՝ վերևում բերված վկայությունները՝ այս ամենը բավական համոզիչ կերպով վկայում են, որ ընդհուպ մինչև 1917 թվականի ապրիլի կեսերը Ստալինը և Կամենևը լիակատար համաձայնությամբ վարում էին կիսամենշևիկյան տակտիկա:

Ինչպես ցույց է տալիս այն օրերի «Պրավդա»-ի հոդվածների ուսումնասիրությունը, մինչև 7-րդ համարը ներառյալ թերթում չեն եղել կիսամենշևիկյան պաշտպանողական ելույթներ պատերազմի, ժամանակավոր կառավարության և սովետների մասին: «Պրավդա»-ի խմբագրության կազմի ինքնակամ փոփոխումը Կամենևի, Ստալինի և Մուրանովի կողմից անմիջապես ազդեց թերթի դիրքի վրա: Արդեն 8-րդ համարում զետեղվել էր Կամենևի գրած խմբագրական հոդվածը, որը պարունակում էր բուրժուական ժամանակավոր կառավարությունը պաշտպանելու կոչ: Մի շարք սխալ դրույթներ կային Մուրանովի և Ստալինի՝ նույն համարում հրապարակված հոդվածներում[21]: Մարտի 15-ին «Պրավդա»-ում հրապարակվել էր Կամենևի գրած «Առանց գաղտնի դիվանագիտության» խմբագրական հոդվածը: Հիշեցնելով Անգլիայի և Ֆրանսիայի նկատմամբ Ռուսաստանի դաշնակցային պարտավորությունների մասին, հեղինակը վստահություն էր հայտնում, որ ազատ ժողովուրդը «անսասան կանգնած կմնա իր պոստում, գնդակին պատասխանելով գնդակով, և արկին արկով»: «Ոչ ռևոլյուցիոն և ռևոլյուցիոնականացվող բանակի կազմալուծումը և ոչ էլ անբովանդակ «կորչի պատերազմն» է մեր լոզունգը,— ասված էր հոդվածում:— Մեր լոզունգն է. ճնշում ժամանակավոր կառավարության վրա՝ նպատակ ունենալով ստիպել նրան բացահայտ կերպով, ամբողջ համաշխարհային դեմոկրատիայի առջև, անմիջապես հանդես գալ փորձ անելով՝ պատերազմող բոլոր երկրներին համոզելու անհապաղ բացել բանակցություններ՝ համաշխարհային պատերազմը դադարեցնելու եղանակների մասին[22] (կուրսիվը մերն է:— Ա. Ս.):

Այս հոդվածը խիստ քննադատության ենթարկվեց Կենտկոմի Բյուրոյի կողմից: Նիստի արձանագրության մեջ գրված է. «Վիճաբանություններից պարզվեց, որ «Պրավդա»-ի առաջնորդողը № 9-ում (նոր խմբագրություն) Կենտկոմի Բյուրոյի բոլոր անդամների կողմից ճանաչվում է անբավարար և նոր եկած ընկերներին առաջարկվել էր մինչև դիսկուսիան հետևել Կենտկոմի Բյուրոյի և ՊԿ-ի բանաձևերին»[23] (կուրսիվը մերն է:— Ա. Ս.):

Բայց խմբագրությունը Կենտկոմի Բյուրոյի տվյալ որոշումն էլ թողեց առանց ուշադրության: Այս ամենի մեջ երևան եկավ «Պրավդա»-ի նոր խմբագրության այն շրջադարձը դեպի պաշտպանողականություն, որը իրականացվել էր Լենինի ուղղակի ցուցումներին հակառակ: Մարտի 16-ին «Պրավդա»-ում լույս տեսավ Ստալինի հոդվածը «Պատերազմի մասին», որի մեջ հեղինակը, լիովին համերաշխվելով Կամենևի սխալ հայացքների հետ, գրում էր. «Նախ և առաջ, անկասկած է, որ «կորչի՛ պատերազմը» մերկ լոզունգը

[21] *Տե՛ս* «Պրավդա», №8, 1917 թվականի մարտի 14:

[22] «Պրավդա», № 9, 1917 թվականի մարտի 15:

[23] «Протоколы и резолюции Бюро ЦК РСДРП(б)». «Вопросы истории КПСС», 1962, № 3, стр. 148.

բոլորովին անպետք է, որպես գործնական ուղի... Ելքը ժամանակավոր կառավարության վրա ճնշում գործ դնելու ուղին է, պահանջելով, որ նա հայտնի հաշտության բանակցությունները անմիջապես սկսելու իր համաձայնությունը»[24] (կուրսիվը մերն է։— Ա. Ս.)։

Դժվար չէ նկատել, որ ռևոլյուցիայի այս վճռական հարցերում Ստալինի և Կամենևի միջև տարաձայնություններ չկային։ Այդ ժամանակաշրջանում նրանց հայացքների միասնության մասին է վկայում, մասնավորապես, նաև այն դրական գնահատականը, որ վերևում մեջ բերված հոդվածներում ստացել է Պետրոգրադի Սովետի սոցիալ-շովինիստական դիմումը «Ամբողջ աշխարհի ժողովուրդներին»։ Կամենև. «...Ջերմորեն ողջունում եմ բանվորների և զինվորների դեպուտատների Սովետի վերևում տպագրված կոչը՝ «Ամբողջ աշխարհի ժողովուրդներին», դրա մեջ մենք տեսնում ենք խաղաղության հաղթանակի և համաշխարհային արյունահեղության դադարեցման համար լայն ու վճռական կամպանիայի լոկ սկիզբը» («Պրավդա», 15 մարտի)։ Ստալին. «Չի կարելի չողջունել Պետերբուրգում բանվորների և զինվորների դեպուտատների սովետի երեկվա դիմումը ամբողջ աշխարհի ժողովուրդներին, որը կոչ է անում ստիպել սեփական կառավարություններին՝ դադարեցնել սպանդը» («Պրավդա», 16 մարտի)։

Հիշեցնենք, որ Վ. Ի. Լենինը հետևյալ կերպ է բնութագրել այդ և դրա նման կոչերը. «...Բանվորների դեպուտատների սովետի մանիֆեստներն ու կոչերը պատերազմի մասին և այլն ամենադատարկ ու կեղծ մանրբուրժուական շաղակրատանք է, որը լոկ քնեցնում է ժողովրդին...»[25]։

Ինչպես երևում է վերևում բերված արձանագրություններից, Կենտկոմի Բյուրոն չէր բաժանում Կամենևի և Ստալինի դիրքը տվյալ հարցերում, այդ առթիվ բողոքներ են եղել նաև ՊԿ-ում։ Այսպես, Պետրոգրադի կոմիտեի անդամ Վ. Զալեժսկին, քննադատելով «Պրավդա»-ի հոդվածները, ՊԿ-ի նիստում հայտարարեց (մարտի 20-ին). «Մենք մեզնից կվանեինք ռուս պրոլետարիատին, եթե մտնանշեինք ժամանակավոր կառավարությանը պաշտպանելու մասին։ Պատերազմի հարցով հարկավոր է դիմել ոչ թե ժամանակավոր կառավարությանը, այլ ժողովրդին»[26]։ Ինչպես գրում է Ա. Շլյապնիկովը, «Պետկոմիտեում, Կենտկոմի Բյուրոյում և «Պրավդա»-ի խմբագրությունում ստացվում էին հարցումներ՝ բանն ինչո՞ւմն է, ինչո՞ւ է մեր թերթը հրաժարվել բոլշևիկյան գծից և կանգնել պաշտպանողական ուղու վրա»[27]։ Վրդովմունքը այնքան մեծ էր, որ, Շլյապնիկովի խոսքերով, շրջաններում լսվում էին պահանջներ՝ «Պրավդա»-ի այդ շրջադարձի մեղավորներին պարտիայից վտարելու մասին։ Պետք է ասել, որ տվյալ հաղորդումը հաստատվում է նաև ուրիշ վկայություններով, օրինակ, այն ժամանակվա Պետրոգրադի պարտիական կազմակերպության ակտիվ աշխատողներ Ս. Ի. Պետրիկովսկու և Յա. Մ. Ռուդնիկի վկայություններով։

Ստալինի և Կամենևի դիրքը արմատապես հակասում էր լենինյան դիրքորոշումներին։ Վ. Ի. Լենինը ծաղրում էր այն հույսը, թե հավատով ու խղճմտանքով կալվածատերերին ու կապիտալիստներին ծառայող, ամուր կապերով անգլո-ֆրանսիական իմպերիալիզմի հետ կապված բուրժուական ժամանակավոր կառավարության վրա ճնշում գործադրելու միջոցով կարելի է հասնել դեմոկրատական հաշտության։ Դեռ 1917 թվականի մարտի 6-ին նա հեռագրում էր Ռուսաստան մեկնած ընկերներին. «Մեր տակտիկան. լիակատար անվստահություն, ոչ մի աջակցություն նոր կառավարությանը. Կերենսկուն առանձնապես ենք կասկածում. պրոլետարիատի սպառազինումը միակ երաշխիքն է. Պետրոգրադի դումայի անհապաղ ընտրություններ. ոչ մի մերձեցում ուրիշ պարտիաների հետ։ Հեռագրեք այս Պետրոգրադ»[28]։ Ե. Բոշը, վերադառնալով Ռուսաստան, մարտի 13-ին Կենտկոմի Բյուրոյի նիստում (որին, մասնավորապես, ներկա էր նաև Ստալինը) հաղորդեց Լենինի այդ դիրեկտիվի մասին։

24 Ի. Վ. Ստալին։ Երկեր, հատ. 3, էջ 9, 10։
25 *В. И. Ленин*, Полн. собр. соч., т. 31, стр. 124.
26 «Первый легальный Петербургский комитет большевиков в 1917 году», стр. 52.
27 *А. Шляпников*. Семнадцатый год. Книга вторая, стр. 185.



Կենտկոմի Բյուրո ուղարկված լենինյան «Նամակներ հեռվից»-ում և Պիտեր՝ Ա. Կոլլոնտային, Ա. Լունաչարսկուն, Վ. Կարպինսկուն, Ի. Արմանդին, Յա. Գանեցկուն ուղարկելու համար այդ օրերին Լենինի հղած նամակներում հստակորեն ձևակերպված էր պարտիայի քաղաքական գիծը։ Առաջին «Նամակ հեռվից»-ում (մարտի 7-ի) Լենինը ընդգծեց. «Ով ասում է, թե բանվորները պետք է աջակցեն նոր կառավարությանը՝ ցարիզմի ռեակցիայի դեմ պայքարելու համար... նա բանվորների դավաճանն է, պրոլետարիատի գործի, խաղաղության և ազատության դավաճանը։ Որովհետև իրականում հենց այդ նոր կառավարությունը արդեն ձեռքով ու ոտքով կապկպված է իմպերիալիստական կապիտալով, իմպերիալիստական ռազմական, թալանչիական քաղաքականությամբ, արդեն սկսել է գործարքները (չհարցնելո՛վ ժողովրդին) դինաստիայի հետ...»[29]։

Վ. Ի. Լենինը պարտիայի խնդիրները բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի շրջանակներով չէր սահմանափակում։ Առաջին իսկ օրերին նա առաջ քաշեց բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի՝ սոցիալիստականի վերաճելու հարցը։ «...Պրոլետարիատը,— գրում էր նա առաջին «Նամակ հեռվից»-ում,— կարող է գնալ և կգնա, օգտագործելով այժմյան անցողիկ մոմենտի առանձնահատկությունները, նախ՝ դեպի դեմոկրատական ռեսպուբլիկա և կալվածատերերի նկատմամբ գյուղացիության լիակատար հաղթանակ նվաճելը՝ գուչկով-միլյուկովյան կիսամիապետության փոխարեն, իսկ դրանից հետո՝ դեպի սոցիալիզմ, որը միակն է, որ պատերազմից տանջված ժողովուրդներին կտա խաղաղություն, հաց և ազատություն»[30]։

Ստալինի և Կամենևի սխալները չի կարելի բացատրել Լենինի դիրքը նրանց չիմանալով, իրադրության բարդությամբ և այլն։ Ինչպես վկայում են պահպանված փաստաթղթերը, և՛ Ստալինը, և՛ Կամենևը գիտեին լենինյան ցուցումները ռևոլյուցիայի կարևորագույն հարցերի վերաբերյալ։ Ավելին, նրանք, ըստ էության, փորձում էին Լենինի իսկական հայացքները թաքցնել պարտիայից։ Այսպես, 1917 թվականի մարտի 21—22-ի առաջին «Նամակ հեռվից»-ը «Պրավդա»-ում հարապարակելու ժամանակ դրանից կամայականորեն հանվել էին կարևոր դրույթներ, որոնց մեջ քննադատվում էին բուրժուա-

28 *В. И. Ленин*. Полн. собр. соч., т. 31, стр. 7.
29 Նույն տեղը, էջ 19։
30 Նույն տեղը, էջ 22։

կան ժամանակավոր կառավարությունը և էսեռների ու մենշևիկների «ռևոլյուցիոն պաշտպանողականությունը»։

Ահա Լենինի այդ դրույթները, որ «Պրավդա»-ի խմբագրությունը թաքցրել էր ընթերցողներից (այդ օրերին խմբագրության մեջ մտնում էին Մոլոտովը, Կամենևը և Ստալինը).

1. «Այդ նոր կառավարությունը, որի մեջ օկտյաբրիստները և «խաղաղանորոգիչները», Ստոլիպին—Կախողի երեկվա աջակիցները՝ Լվովը և Գուչկովը, գրավում են իսկապես կարևոր պոստեր, մարտական պոստեր, վճռական պոստեր, բանակը չինովնիկությունը,— այդ կառավարությունը, որի մեջ Միլյուկովը և մյուս կադետները նստած են ավելի շատ դեկորացիայի համար, ցուցանակի համար, քաղցրիկ պրոֆեսորական ճառերի համար, իսկ «տրուդովիկ» Կերենսկին խաղում է բալալայկայի դեր՝ բանվորներին և գյուղացիներին խաբելու համար...»[31]։

2. «Ով ասում է, թե բանվորները պետք է աջակցեն նոր կառավարությանը՝ ցարիզմի ռեակցիայի դեմ պայքարելու համար (իսկ այդ ասում են բոլոր երևույթին Պոտրեսովները, Գվոզդևները, Չխենկելիները, ինչպես նաև Չխեիձեն, չնայած նրա ամբողջ խուսափողականությանը), նա բանվորների դավաճանն է, պրոլետարիատի գործի դավաճանը, խաղաղության և ազատության դավաճանը»[32]։

3. «Չպետք է կատարենք նրանց սխալը, ովքեր պատրաստ են գովերգել այժմ, մի քանի «կազմկոմականների» կամ «մենշևիկների» նման, որոնք տատանվում են գվոզդևչչինա-պոտրեսովշչինայի և ինտերնացիոնալիզմի միջև՝ շատ հաճախ ընկնելով մանրբուրժուական պացիֆիզմի մեջ, գովերգել բանվորական պարտիայի «համաձայնությունը» կադետների հետ, առաջինի «աջակցությունը» երկրորդներին և այլն։ Այդ մարդիկ ի հաճույս իրենց սերտած (և բոլորովին ոչ-մարքսիստական) հին դոկտրինայի, քող են գցում անգլո-ֆրանսիական իմպերիալիստների՝ Գուչկովների ու Միլյուկովների հետ միասին սարքած դավադրության վրա՝ «գլխավոր զորական» Նիկոլայ Ռոմանովին հեռացնելու և նրան ավելի եռանդուն, թարմ, ավելի ընդունակ զորականներով փոխարինելու նպատակով»[33]։

4. «Ամբողջ նոր կառավարությունը միապետականներ են, քանի որ Կերենսկու բառային ռեսպուբլիկանիզմը ուղղակի լուրջ չէ, անարժան է քաղաքագետին, օբյեկտիվորեն հանդիսանում է պոլիտիկանություն։ Նոր կառավարությունը դեռ չի հասցրել ոչնչացնել ցարական միապետությունը, երբ արդեն սկսել է գործարքների մեջ մտնել Ռոմանովների կալվածատիրական դինաստիայի հետ»[34]։

5. «Ուղղակի հիմարություն կլիներ խոսել Ռուսաստանի պրոլետարիատի «աջակցության» մասին կադետա-օկտյաբրիստական, անգլիական դրամներով «սերտված» նույնքան նողկալի, ինչպես և ցարական, իմպերիալիզմի նկատմամբ»[35]։

Լենինյան կարևորագույն փաստաթղթերի նկատմամբ այսպիսի քմահաճ

31 Նույն տեղը, էջ 17—18։
32 Նույն տեղը, էջ 19։
33 Նույն տեղը, էջ 16։
34 Նույն տեղը, էջ 19։
35 Նույն տեղը, էջ 17։



վերաբերմունքը դրանով չսահմանափակվեց. Լենինի նույնիսկ հրապարակված տեքստը խմբագրությունում «խմբագրվեց» Ստալինի և Կամենևի այն ժամանակվա հայացքների ոգով։ Այդ բանը հեշտությամբ կարելի է հաստատել լենինյան նամակի իսկական տեքստը «Պրավդա»-ում հրապարակվածի հետ համեմատելով.

| Լենինը գրում է. | «Պրավդա»-ում այս ֆրազը զետեղված է հետևյալ կերպ. |
| --- | --- |
| «Օկտյաբրիստների և կադետների, Գուչկովների և Միլյուկովների կառավարությունը չի կարող,— նույնիսկ եթե նա անկեղծորեն ցանկանա այդ (Գուչկովի և Լվովի անկեղծության մասին կարող են մտածել միայն մանուկները),— չի կարող տալ ժողովրդին ո՛չ խաղաղություն, ո՛չ հաց, ո՛չ ազատություն»36: | «Օկտյաբրիստների և կադետների, Գուչկովների և Միլյուկովների կառավարությունը չի կարող— նույնիսկ եթե նրանք անկեղծորեն ցանկանան այդ—տալ ո՛չ խաղաղություն, ո՛չ հաց, ո՛չ ազատություն»37: |

Բաց թողնելով փակագծերի մեջ առնված ֆրազը, խմբագրությունը աղավաղել է լենինյան տեքստի իմաստը, հասկացնել տալով, թե իբր Լենինը ընդունում էր, որ Գուչկովը և Միլյուկովը կարող են անկեղծորեն խաղաղություն, հաց և ազատություն ցանկանալ ժողովրդի համար։ Այսպես «Պրավդա»-ի խմբագրությունը թուլացնում էր օկտյաբրիստների և կադետների կառավարության լենինյան բնութագրի քաղաքական սրությունը։ Նույն ուղղությամբ էլ կատարված են նաև մյուս կրճատումները լենինյան հոդվածից։

| Լենինը գրում է. | «Պրավդա»-ում այս ֆրազը զետեղված է հետևյալ կերպ. |
| --- | --- |
| «Միայն կապիտալիստներն ու նրանց արբանյակները, սոցիալ-հայրենասերներն ու սոցիալ-շովինիստները,— կամ, ընդհանուր քննադատական որոշումների փոխարեն ասելով ծանոթ քաղաքական անուններով Ռուսաստանում,— մի կողմից՝ միայն Գուչկովները և Լվովները, Միլյուկովները և Շինգարևները, մյուս կողմից՝ միայն Գվոզդևները, Պոտրեսովները, Չխենկելիները, Կերենսկիները և Չխեիձեները— կարող են ժխտել կամ քողարկել այդ փաստը»38։ | «Միայն կապիտալիստներն ու նրանց արբանյակները, սոցիալ-հայրենասերներն ու սոցիալ-շովինիստները կարող են ժխտել կամ քողարկել այդ փաստը»39։ |

Խմբագրությունը ջնջել է ֆրազի ամբողջ վերջը, որտեղ Լենինը ընդհանուր բնորոշումներից անցնում է բուրժուական կառավարության գործիչների ու մենշևիկների կոնկրետ քննադատությանը։ «Պրավդա»-ի խմբագրությունը այնուհետև էլ «ուղղում է» Լենինին, առարկայական, աշխատավորների համար լավ հասկանալի քննադատությունը փոխարինելով հարցի խիստ «ընդհանուր» դրվածքով։

36 Նույն տեղը, էջ 20։
37 «Պրավդա» № 15, 1917 թվականի մարտի 22։
38 В. И. Ленин. Полн. собр. соч., т. 31, стр. 13.
39 «Պրավդա» № 14, 1917 թվականի մարտի 21։

| Լենինը գրում է. | «Պրավդա-ում այս տարբերությունը զետեղված է հետևյալ կերպ. |
| --- | --- |
| «Այսպես, Գուչկովները և Միլյուկովները կվերականգնեն միապետությունը և չեն իրականացնի ոչինչ, բացարձակապես ոչինչ իրենց խոստացած «ազատություններից»։ Խոստումներով էին «կերակրում» ժողովրդին և հիմարացնում բանվորներին բոլոր բուրժուական պոլիտիկանները բոլոր բուրժուական ռևոլյուցիաների ժամանակ։ Մեր ռևոլյուցիան բուրժուական է, ուստի բանվորները պետք է պաշտպանեն բուրժուազիային,— ասում են Պոտրեսովները, Գվոզդևները, Չխեիձեները, ինչպես երեկ ասում էր Պլեխանովը»[40]։ | «Այսպես ժողովուրդը խաբված կլինի։ Խոստումները էժան են։ Խոստումները ոչինչ չարժեն։ Խոստումներով էին «կերակրում» ժողովրդին և հիմարացնում բանվորներին բոլոր բուրժուական պոլիտիկանները բոլոր բուրժուական ռևոլյուցիաների ժամանակ։ Մեր ռևոլյուցիան բուրժուական է, ուստի բանվորները պետք է պաշտպանեն բուրժուազիային,— ասում են բոլորովին անպետք քաղաքագետները լիկվիդատորների լագերից» [41]։ |

Տվյալ դեպքում էլ «ուղղումները» ամլացրել են Գուչկովների, Միլյուկովների և Չխեիձեի տիպի պաշտպանողականների լենինյան քննադատությունը։

Ավելորդ չէ նշել, որ դեռ մարտի 15-ին (թերթում Կամենևի «Առանց գաղտնի դիվանագիտության» խմբագրական հոդվածի հրապարակումից հետո) Կենտկոմի Բյուրոն, ցանկանալով բացառել հետագայում քաղաքականապես սխալ հոդվածների երևան գալը «Պրավդա»-ում, վերստին հաստատեց իր նախկին որոշումը (մարտի 4-ի) այն մասին, որ «խմբագրության որոշումներն ընդունվում են միաձայն, իսկ տարաձայնության դեպքում հոդվածը հետաձգվում է և փոխադրվում է Կենտկոմի Բյուրո քննարկման համար[42]։ Սակայն ոչ Կենտկոմի արձանագրություններից, ոչ հիշողություններից հայտնի չէ «Պրավդա»-ի այն ժամանակվա խմբագրության ներսում որևէ սկզբունքային տարաձայնության առկայության մասին։

Բերված փաստերի լույսի տակ բնորոշ է թշնամական լագերի միանգամայն բարյացակամ ռեակցիան՝ Ստալինի և Կամենևի օրով «Պրավդա»-ի ռևոլյուցիոն գծի փոփոխման նկատմամբ։ Այսպես, կադետական «Ռեչ»-ը արդեն մարտի 16-ին, նոր խմբագրության կողմից «Պրավդա»-ի երկու համարների լույսընծայումից հետո, ցիտելով թերթը, մամուլի խմբագրական տեսության մեջ գրում էր. «Որպես չափազանց ուրախալի հայտանիշ հարկավոր է նշել, որ «Պրավդա»-ն սկսում է ազատագրվել վտանգավոր շմոլքից և ըմբռնել շրջապատի իրադրությունը... Անկեղծորեն ողջունում ենք այդ պայծառացումը, որը ծառայում է որպես լավ նախանշան»[43]։ Շա՜տ ուշագրավ վկայություն։

Պետք է ասել նաև, որ Կենտկոմի Բյուրոն էլ մինչև Լենինի գալը լրիվ հստակ դիրք չէր գրավել մի շարք կարևոր հարցերում։ Նա չէր դրել ռևոլյուցիայի հաջորդ էտապին՝ սոցիալիզմի համար պայքարին անցնելու ուղղակի խնդիրը։ Բայց, ի տարբերություն Կամենևի ու Ստալինի, Կենտկոմի Բյուրոն չէր գլորվում պաշտպանողական դիրքերը, իր ոչ մի փաստաթղթում չի ըն-

---

[40] *В. И. Ленин.* Полн. собр. соч., т. 31, стр. 20.

[41] «Պրավդա» № 15, 1917 թվականի մարտի 22։

[42] «Протоколы и резолюции Бюро ЦК РСДРП(б)», «Вопросы истории КПСС», 1962, № 3, стр. 148.

[43] «Речь», 16 марта 1917 года.



դունել ժամանակավոր կառավարությանը պաշտպանելու կիսամենշևիկյան բանաձև, սովետները դիտելով իբրև ռևոլյուցիոն իշխանության սաղմեր։ Ցավոք սրտի, շատ պատճառների հետևանքով (կազմի անկայունությունը, վատ կապը Լենինի հետ) Կենտկոմի Բյուրոն մինչև Լենինի գալը չկարողացավ հասնել այն բանին, որ Կամենևը և Ստալինը հետևողականորեն կիրառեն լենինյան ցուցումներն ու իր սեփական որոշումները։ Այն ժամանակաշրջանի «Պրավդա»-ի սխալ գիծը բավական հստակ բնութագրել է Վ. Ի. Լենինը, որը ապրիլի 12-ին Գանեցկուն և Ռադեկին գրել է. «Հուսով ենք լիովին ուղղել դեպի «կաուցկիականությունը» տատանված «Պրավդա»-ի գիծը»[44]։

Ստալինի այդ ժամանակաշրջանի տատանումները բնութագրելու համար ոչ պակաս կարևոր նշանակություն ունի 1917 թվականի մարտի 27-ից մինչև ապրիլի 2-ը Պետրոգրադում կայացած՝ պարտիական աշխատողների Համառուսաստանյան (մարտյան) խորհրդակցության նյութերի ուսումնասիրությունը։ Հարկավոր է նշել, որ Ստալինի անձի պաշտամունքի ժամանակաշրջանում մարտյան պարտիական խորհրդակցության նյութերը լույս չտեսան։ Եվ դա պատահական չէ։ Կարևոր իրադարձություն հանդիսանալով պարտիայի պատմության մեջ, խորհրդակցությունը երևան հանեց տարբեր տեսակետներ և, մասնավորապես, ցույց տվեց, որ որոշ պարտիական ղեկավարներ— այդ թվում Ստալինը— այդ ժամանակաշրջանում գրավել էին սխալ, լենինյան ցուցումներին հակասող դիրք։ Այս կապակցությամբ բնորոշ է, որ խորհրդակցության արձանագրությունները սկսեցին հրապարակվել ՍՄԿՊ XX համագումարից հետո միայն։

Պետք է նկատի ունենալ, որ խորհրդակցությունը տեղի էր ունենում ոչ թե ռևոլյուցիայի առաջին օրերին, այլ մարտի վերջերին, երբ արդեն Պետրոգրադում հայտնի էին լենինյան «Նամակները հեռվից», որոնք տալիս էին իրադրության պարզ վերլուծությունը։ Ռուսաստանի ռևոլյուցիոն պրոլետարիատի կենսական խնդիրները Լենինը համարում էր. «(1) կարողանալ ամենավստահելի ճանապարհով մոտենալ ռևոլյուցիայի հետևյալ էտապին, կամ երկրորդ ռևոլյուցիային, որը (2) պետք է պետական իշխանությունը կալվածատերերի և կապիտալիստների (Գուչկովների, Լվովների, Միլյուկովների, Կերենսկիների) կառավարության ձեռքից հանձնի բանվորների և ամենաչքավոր գյուղացիների կառավարության ձեռքը»[45]։

Պետք է ասել, որ ինչպես ժամանակավոր կառավարության նկատմամբ ունենալիք վերաբերմունքի մասին Ստալինի զեկուցման մեջ, այնպես էլ մարտյան խորհրդակցությունում նրա ունեցած մյուս ելույթներում ոչ միայն հաշվի չէին առնվում լենինյան ցուցումները, այլ, ընդհակառակը, մի շարք վճռական հարցերում պարունակվում էին դրանց հակասող դրույթներ և հետևություններ։ Զարգացնելով սովետների դերի սխալ բնորոշումը («ժամանակավոր կառավարությանը վերահսկող օրգան»), ոչ ճիշտ վերաբերմունքը դեպի ժամանակավոր կառավարությունը (նրան հատկացնելով «ռևոլյուցիոն ժողովրդի նվաճումները ամրապնդողի դեր»), Ստալինը հանդես էր գալիս բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի՝ սոցիալիստականի վերաճելու՝ իրեն հայտնի լենինյան դիրքորոշման դեմ։ Այն ժամանակ, երբ Լենինը առաջ էր

---

[44] Վ. Ի. Լենին։ Երկեր, 4-րդ հրատ. հատ. 36, էջ 515։

[45] *В. И. Ленин.* Полн. собр. соч.,т. 31, стр. 55.

քաշում հստակ ու պարզ լոզունգ՝ ոչ մի աջակցություն, ոչ մի վստահություն ժամանակավոր կառավարությանը,— Ստալինը առաջարկում էր պայմանական աջակցություն[46]։ Այսպես, նա հայտարարեց, թե ոչ լրիվ կերպով է համաձայն «Ժամանակավոր կառավարության մասին» Կենտկոմի Բյուրոյի բանաձևին (1917 թվականի մարտի 22-ի)[47], և պաշտպանեց Կրասնոյարսկի սովետի՝ մի շարք սկզբունքային հարցերում սխալ բանաձևը[48]։

Խորհրդակցությունը այդ հարցը քննարկել է մի քանի նիստերում։ Զեկուցողին առարկում էին Ֆ. Գոլոշչոկինը, Վ. Միլյուտինը, Ն. Սկրիպնիկը։ Մասնավորապես, Ն. Սկրիպնիկը ասում էր. «Կառավարությանը աջակցելու մասին խոսել չի կարելի։ Ժամանակավոր կառավարության դավադրություն է տեղի ունենում ընդդեմ ժողովրդի և ռևոլյուցիայի, և դրա դեմ պայքարելու համար անհրաժեշտ է պատրաստվել»[49]։ Առարկելով բուրժուական կառավարությանը վստահություն ցույց տալու դեմ, Ֆ. Գոլոշչոկինը ընդգծում էր, որ «Ժամանակավոր կառավարությունը հակառևոլյուցիոն է և անհատական՝ և ըստ էության... Մենք մոռանում ենք, որ նա մինչև որոշ ժամանակ թաքցնում է իր ճիրանները, և ինքներս էլ ամրացնում ենք այն։ Եթե մենք ուզում ենք պայքարել հակառևոլյուցիայի դեմ, մենք պետք է ձգտենք զավթելու իշխանությունը, բայց չարագացնելով իրադարձությունները։ Ինչպե՞ս. խմբվելով բանվորների և զինվորների դեպուտատների սովետների շուրջը, որպեսզի բանվորների դեպուտատների սովետը աստիճանաբար մտնի բոլոր ֆունկցիաների մեջ, կյանքի բոլոր բնագավառները։ Հարկավոր է ժողովրդին սովորեցնել տեսնելու, որ բանվորների դեպուտատների սովետներից նա ամեն բան ստանում է»[50]։

Սակայն խորհրդակցության մասնակիցները այնուամենայնիվ չկարողացան բավականաչափ խոր ըմբռնել տվյալ հարցը։ Վերջնական ընդունված բանաձևից հանվել էր այն դրույթը, որի մեջ ասվում էր, թե սովետները հանդիսանում են ռևոլյուցիոն իշխանության սաղմերը. նրա մեջ չկա նաև կետ ժողովրդի ընդհանուր սպառազինման և Կարմիր գվարդիայի անհապաղ ստեղծման մասին։ Բանաձևում անց էր կացվում Ժամանակավոր կառավարության նկատմամբ «վերահսկողության» տեսակետը, որ դատապարտել էր Լենինը։

Մարտի 27-ին, 28-ին և 30-ին խորհրդակցությունը քննարկում էր պատերազմի հարցը։ Խորհրդակցության առթիվ այդ հարցի շուրջը պատրաստված Կենտկոմի Բյուրոյի բանաձևում տրվում էր պատերազմի իմպերիալիստական բնույթի ճիշտ գնահատականը, բայց նրա մեջ սխալ կերպով կրկնվում էր Ժամանակավոր կառավարության վրա ճնշում գործադրելու լոզունգը։ Ստալինի և Կամենևի ազդեցության տակ մարտյան խորհրդակցությունը էլ ավելի վատացրեց Կենտկոմի Բյուրոյի ձևակերպումները վճռական հարցերի մասին և ընդունեց լենինյան դիրքորոշումներին հակասող բանաձև։

46 Տես «Протоколы Всероссийского (мартовского) совещания партийных работников». «Вопросы истории КПСС», 1962, № 5, стр. 112.

47 Նույն տեղը, էջ 113։

48 Նույն տեղը, էջ 114։

49 «Протоколы Всероссийского (мартовского) совещания партийных работников». «Вопросы истории КПСС», 1962, № 6, стр. 138.

50 «Протоколы Всероссийского (мартовского) совещания партийных работников». «Вопросы истории КПСС», 1962, № 5, стр. 117.



Պատերազմի և ժամանակավոր կառավարության նկատմամբ ունենալիք վերաբերմունքի հարցում Ստալինը խորհրդակցությունում վճռական հակահարված չտվեց Վոյտինսկու խմբի պաշտպանողականների կապիտուլյանտական ելույթներին։ Այդ մասին են վկայում խորհրդակցության մի շարք մասնակիցների ելույթները։ Այսպես, Կրեստինսկին հայտարարեց. «Գործնական քայլերում Ստալինի և Վոյտինսկու միջև տարաձայնություններ չկան»[51]։ Իսկ Վոյտինսկու համախոհ Յախոնտովը վահանի վրա բարձրացրեց Ստալինի զեկուցման սխալ դրույթները, լիովին համերաշխվելով դրանց հետ. «Ընկ. Ստալինը իրավացի է, ասելով, որ Ժամանակավոր կառավարությունը ամրապնդում է ռևոլյուցիայի նվաճումները»[52]։

Որոշ հեղինակներ՝ Ա. Լուկաշովը, Ի. Պետրովը, Ն. Ռուբանը, Ա. Սովոկինը և ուրիշներ, հավանորեն, այնուամենայնիվ ինչ-որ տարբերություն տեսնում են Ստալինի և Կամենևի այդ ժամանակաշրջանի դիրքերի մեջ։ Կամենևի սխալները (պայմանական աջակցությունը Ժամանակավոր կառավարությանը, պաշտպանողականությունը, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի անավարտության մասին կոնցեպցիան) որակվում են իբրև ըստ էության մենշևիկյան կամ կիսամենշևիկյան։ Ինչ վերաբերում է Ստալինի դիրքին (ճնշում Ժամանակավոր կառավարության վրա, մենշևիկների հետ միավորվելու գիծ և այլն), ապա այն պարզապես սխալ են անվանում մի շարք կարևոր հարցերում, ընդամենը չտալով քաղաքական հստակ որակում։ Կարծում ենք, որ վերևում բերված վավերական նյութերը թույլ են տալիս Ստալինի և Կամենևի դիրքին տալու ավելի որոշակի և այդ պատճառով ավելի ճիշտ բնութագրություն իբրև կիսամենշևիկյանի։ Միաժամանակ նշենք, որ Ժամանակավոր կառավարության վրա ճնշում գործադրելու հարցում Ստալինի և Կամենևի այդ ժամանակաշրջանի դիրքերի մեջ տարբերությունների որոնումների անհիմնությունը բավական համոզիչ կերպով ցույց է տրված ակադեմիկոս Ի. Ի. Մինցի՝ «Պրավդա»-ի հոդվածում[53]։

Որոշ հետազոտողներ Կամենևի և Ստալինի դիրքերի տարբերությունն ապացուցելու համար առաջ են քաշում «ճնշման» և «վերահսկողության» լոզունգի թվացող տարբերությունը «պայմանական աջակցության» լոզունգից։ Ուստի անհրաժեշտ է համառոտակի կանգ առնել տվյալ հարցի վրա։

Արժե հիշեցնել, որ ժամանակավոր կառավարության նկատմամբ «ճնշման» և «վերահսկողության» լոզունգը 1917 թվականի մարտին առաջին անգամ առաջ էին քաշել մենշևիկները։ Այստեղից բխում էր ամեն տեսակի «կոնտակտային» հանձնաժողովների ստեղծումը, որոնք պետք է ռևոլյուցիոն մասսաներին քնեցնեին այն անհիմն հույսերով, թե ճնշումն ու վերահսկողությունը իբր կապահովեն ռևոլյուցիոն միջոցների կիրառումը բուրժուական կառավարության կողմից։ Բերենք, օրինակ, մենշևիկների պետրոգրադյան կազմակերպության ժողովի 1917 թվականի մարտի 6-ի բանաձևը. «Ընդունելով առանց անեքսիաների հաշտության համար պայքարի անհրաժեշտությունը, մենք պետք է ճնշում գործադրենք ժամանակավոր կառավարության վրա, ձգտելով այն բանին, որ նա հրապարակորեն կտրականապես հրաժարվի ամեն

51 Նույն տեղը, էջ 119։

52 «Протоколы Всероссийского (мартовского) совещания партийных работников». «Вопросы истории КПСС», 1962, № 6 стр. 138.

53 Տե՛ս «Պրավդա», 1962 թվականի մարտի 12։

մի անեքսիոնիստական պլանից և իր վրա վերցնի միջազգային մասշտաբով հաշտության բանակցությունների նախաձեռնությունը»[54]։

Հարկավոր է նկատի ունենալ նաև, որ, ըստ Ժուքյան, պայմանական աջակցության գծի և «ճնշման» միջև սկզբունքային ոչ մի տարբերություն չկա։ Տարբերությունը լոկ տերմինների մեջ է։ Լենինը դրանց միջև ոչ մի տարբերություն չէր դնում։ Իրականում, այդ երկու տերմինը, երկու լոզունգը,— ըստ Ժուքյան, միասնական գիծ է։ Ի՞նչ է նշանակում ժամանակավոր կառավարության վրա «ճնշում գործադրելու» գիծը։ Դա ենթադրում է, որ դրա կիրառմամբ իբր կարելի է սպասել, թե ժամանակավոր կառավարությունը կիրականացնի ռևոլյուցիոն պահանջները։ Իսկ այդ դեպքում, եթե բուրժուական կառավարությունը անց է կացնում մեր պահանջը, անխուսափելիորեն հետևում է նրան պաշտպանելու անհրաժեշտությունը։

Այսպիսով, «պայմանական աջակցության» լոզունգը օրգանապես կապված է «ճնշման» հետ, և, ընդհակառակը, առանց պայմանական աջակցության— հաջող ճնշման դեպքում— իմաստ չունի նաև «ճնշման» լոզունգը։ Թե մեկը թե մյուսը ենթադրում է պահպանել բուրժուական կառավարությունը, նրա հետ մտնել որոշակի կոնտակտների ու հարաբերությունների մեջ։ Այս կապակցությամբ անհիմն ու քիչ համոզիչ են թվում այդ հարցերում Ստալինի և Կամենևի դիրքերի կարծեցյալ տարբերություն գտնելու՝ դեռևս հանդիպող փորձերը։

Այսպես է Ստալինի և Կամենևի 1917 թվականի մարտի—ապրիլի սկզբի դիրքերի բնութագրման գործը, որոնք եղել են կիսամենշևիկյան և ոչնչով չեն տարբերվել մեկը մյուսից։

***

Պատմական-պարտիական գրականության մեջ իր ժամանակ քննարկման ենթարկված հարցերից մեկն էլ 1917 թվականին այսպես կոչված միավորիչ տենդենցների հարցն է։ Անհրաժեշտ է ընդունել, որ մենշևիկների հետ միավորվելու տենդենցները այն ժամանակ որոշ տարածում ունեին բոլշևիկների որոշ մասի շրջանում։ Սակայն սխալ կլիներ գերագնահատել այդ տրամադրությունների չափը. դրանք չէին արտահայտում պարտիական կազմակերպությունների ճնշող մեծամասնության, պրոլետարական հիմնական մասսայի կարծիքը, մասսա, որը դասակարգային ճիշտ հոտառությամբ նկատել էր այդ տենդենցների վտանգը[55]։

Միավորիչ տենդենցների աղբյուրներից մեկը հարկավոր է ընդունել պար-

54 «Рабочая газета» (ЦО меньшевиков) № 2. 8 марта 1917 года.

55 Ակադեմիկոս Ի. Ի. Մինցի հաշվումներով 1917 թվականին գոյություն ունեին մոտ 500 գավառային և քաղաքային պարտիական կազմակերպություն։ Դրանցից միավորված էին միայն մինչև 90 կազմակերպություն, այսինքն՝ մոտավորապես 15 տոկոսը («Вопросы истории КПСС», 1957, № 2, стр. 22)։ Մոտավորապես համանման տվյալներ (մոտ 20 տոկոս) են բերված Վ. Վ. Անիկեևի հաղորդման մեջ։ Նա տեղեկություններ է տալիս նաև բոլշևիկյան ու միավորված կազմակերպություններում պարտիայի անդամների թվի մասին։ Ապրիլյան կոնֆերենցիայի մոտերքը բոլշևիկյան կազմակերպություններում կային մոտ 80 հազար անդամ, միավորվածներում՝ մոտ 14 հազար։ Պարտիայի VI համագումարի մոտերքը այդ թվերը համապատասխանորեն կազմեցին 240 հազար և 27 հազար («Вопросы истории КПСС», 1958, № 2, стр. 127)։



տիական մի քանի աշխատողների քաղաքական և տակտիկական հայացքների որոշ խակությունը։ Այնտեղ, ուր տեսական խառնաշփոթությունը քիչ էր, միավորիչ տենդենցները հող չէին գտնում։

Վ. Ի. Լենինը համառորեն պահանջում էր վճռական պատերազմ հայտարարել ամեն մի միավորիչ տենդենցի։ Մենշևիկների հետ միավորվելու նկատմամբ բացասական վերաբերմունքը սուր և ուլտիմատիվ կերպով հնչում էր լենինյան հոդվածներում և նամակներում։ Մարտի 4-ին նա գրում էր Ա. Կոլլոնտային. «Իմ կարծիքով, այժմ գլխավորն այն է, որ մենք թույլ չտանք մեզ խճճվել սոցիալ-հայրենասերների հետ... հիմար «միավորիչ» փորձերի մեջ»[56]։ «Մեր պարտիայի ինքնուրույնություն և առանձնություն,— կարդում ենք Լենինի՝ Լունաչարսկուն գրած (մարտի 12-ից առաջ) նամակում,— **ոչ մի մերձեցում այլ պարտիաների հետ**— ինձ համար ուլտիմատիվ են։ Առանց դրան չի կարելի պրոլետարիատին օգնել **դեմոկրատական** հեղաշրջման միջոցով դեպի **կոմունա** գնալու, իսկ ուրիշ նպատակների ես չէի ծառայի»[57]։ «Ես անձամբ ոչ մի վայրկյան չեմ տատանվի հայտարարել ու հայտարարել մամուլում,— մարտի 17-ին գրում է նա Գանեցկուն,— որ **ես նույնիսկ կգերադասեմ անհապաղ պառակտումը մեր պարտիայից ում հետ էլ որ լինի**, քան զիջումներ անել Կերենսկու և Ընկ. սոցիալ-հայրենասիրությանը կամ Չխեիձեի և Ընկ. սոցիալ-պացիֆիզմին ու կաուցկիականությանը»[58] (կուրսիվը մերն է։— Ա. Ս.)։ «Վստահել **չի կարելի** ո՛չ Չխեիձեին և Ընկ., ո՛չ Սուխանովին, ո՛չ Ստեկլովին և այլն,— շարունակում էր Լենինը։— Ո՛չ մի մերձեցում մյուս պարտիաների հետ, ո՛չ մեկի հետ։ Վստահության և օժանդակության ո՛չ մի նշույլ Գուչկով—Միլյուկովի և Ընկ. կառավարությանը։ Ինտերնացիոնալիզմի ամենաանհաշտ պրոպագանդա և ռեսպուբլիկական շովինիզմի և սոցիալ-շովինիզմի դեմ պայքարելու պրոպագանդա ամենուրեք, և՛ մամուլում, և՛ բանվորական դեպուտատների Սովետի ներսում, **մեր պարտիայի կազմակերպում**— դրանումն է էությունը»[59]։

Այսպիսով, վճռական պայքարը համաձայնողականության դեմ, բոլշևիկյան պարտիայի քաղաքական և կազմակերպական ինքնուրույնության պահպանումը Լենինը համարում էր ռևոլյուցիայի զարգացման կարևորագույն պայմանը։

Ուրեմն ինչպե՞ս կարող էր պատահել, որ հակառակ Լենինի կատեգորիկ ցուցումներին, մարտյան խորհրդակցությունը արտահայտվեց մենշևիկների հետ միավորվելու օգտին։ Միավորման հարցի քննարկումը ընթանում էր ոչ առանց պայքարի։ Մարտյան խորհրդակցության ապրիլի 1-ի նիստի արձանագրության մեջ, որտեղ քննարկվում էր Ծերեթելու առաջարկությունը միավորման մասին, Ստալինը հայտարարում է. «Մենք պետք է գնանք։ Անհրաժեշտ է որոշել մեր առաջարկությունները միավորման գծի մասին։ Հնարավոր է միավորում Ցիմմերվալդի — Կինտալի գծով»[60]։ Ստալինը գտնում էր, որ «հարկ չկա առաջ վազել և կանխել տարաձայնությունները։ Առանց տարաձայ-

56 Վ. Ի. Լենին։ Երկեր, 4-րդ հրատ., հատ. 35, էջ 323։

57 Նույն տեղը, էջ 328։

58 Նույն տեղը, էջ 337։

59 Նույն տեղը, էջ 341։

60 «Протоколы Всероссийского (мартовского) совещания партийных работников». «Вопросы истории КПСС», 1962, № 6, стр. 139.

նությունների պարտիական կյանք չկա։ Պարտիայի ներսում մենք կվերացնենք մանր տարաձայնությունները»։ Նրա կարծիքով, բոլշևիկները պետք է «գնային ժողով և ոչ մի պլատֆորմ չառաջադրեին»[61]։ Ինչպես տեսնում ենք, Ստալինը ամենակոպիտ սխալ էր թույլ տալիս, գտնելով, թե բոլշևիկներին և մենշևիկներին բաժանում են լոկ երկրորդական, «մանր» տարաձայնություններ, որոնք կարելի է վերացնել միասնական պարտիայի շրջանակներում։

Խորհրդակցությունում Սկրիպնիկը, Զալուցկին և ուրիշներ հանդես էին գալիս Ստալինի սխալ առաջարկությունների դեմ, պնդելով բոլշևիկների կողմից որոշակի ինտերնացիոնալիստական սոցիալիստական պլատֆորմ առաջ քաշելու անհրաժեշտությունը, այն հաշվով, որ դա հրապարակվի ժողովում։ Ընդսմին, Ստալինին առարկող պատգամավորները մատնանշում էին, որ ինքը՝ Ծերեթելին իրեն անվանում է ցիմմերվալդական և կինտալական, ուստի և այդ հիմքի վրա միավորումը սխալ է և՛ քաղաքականապես, և՛ կազմակերպորեն։ Զալուցկին, մասնավորապես, հայտարարեց. «Միավորվելու լոկ ցանկությունից ելնել կարող է քաղքենին, այլ ոչ թե սոցիալ-դեմոկրատը։ Մեզ մոտ տարաձայնությունները հետևյալ հարցերում են. 1) պատերազմի նկատմամբ վերաբերմունքի մասին, 2) ռևոլյուցիայի մեջ կապիտալիստական ուժերի գնահատականի ու դերի մասին։ Եթե մենք դրանք կոծկենք էլ, ապա մի շաբաթ հետո միևնույն է նորից կպառակտվենք։ Ցիմմերվալդ-կինտալյան արտաքին հատկանիշով միավորվել անհնարին է»[62]։

Սակայն այս նկատառումները ուշադրության չառնվեցին։ Խորհրդակցությունը որոշեց գնալ միացյալ ժողով, այն համարելով ինֆորմացիոն։ Ընդունվեց Ստալինի առաջարկությունն այն մասին, որ բոլշևիկյան Կենտկոմը կապվի մենշևիկների ղեկավարության հետ՝ համատեղ կոնֆերենցիա հրավիրելու հարցի վերաբերյալ։ Բանակցություններ վարելու հանձնաժողովի մեջ մտան Ստալինը, Կամենևը, Թեոդորովիչը, Նոգինը։ Մենշևիկների և բոլշևիկների միացյալ ժողովում ապրիլի 4-ին զեկուցումով պետք է հանդես գար Ստալինը։ Այսպիսով, հաշտվողականների և միավորման կողմնակիցների հետ պառակտման սպառնալիքի տակ անգամ մեր պարտիայի ինքնուրույնությունը պահպանելու անհրաժեշտության մասին Լենինի կատեգորիկ ցուցումներին հակառակ, Ստալինը հանդես էր գալիս այդ ինքնուրույնության վերացման օգտին։

Ապրիլի 3-ին, դեռ մարտյան խորհրդակցության պատգամավորների՝ Պիտերից մեկնելուց առաջ, Ֆինլանդական կայարանում հազարավոր պիտերցի պրոլետարներ, Կրոնշտադտի նավաստիներ, ռևոլյուցիոն զինվորներ, պարտիական ակտիվիստներ վիթխարի խանդավառությամբ դիմավորում էին ռևոլյուցիայի առաջնորդ Լենինին։ Լենինի ժամանումը վճռական ազդեցություն գործեց ռևոլյուցիայի ամբողջ ընթացքի և բոլշևիկյան պարտիայի ռևոլյուցիոն հստակ դիրքի մշակման վրա։ Պարտիական ամբողջ ակտիվը և ամենից առաջ պիտերցիները արագորեն ըմբռնեցին ռևոլյուցիայի հետագա զարգացման լենինյան կուրսը։

Ապրիլի 4-ի առավոտյան Լենինը մարտյան խորհրդակցության մասնակից բոլշևիկների առջև շարադրեց իր Ապրիլյան թեզիսները։ Քննադատելով «Պրավդա»-ի խմբագրության դիրքը, Լենինը ասում էր. ««Պրավդա»-ն պա-

61 Նույն տեղը, էջ 140։

62 Նույն տեղը, էջ 139—140։



հանջում է կառավարությունից, որ նա հրաժարվի անեքսիաներից։ Պահանջել կապիտալիստների կառավարությունից, որ նա հրաժարվի անեքսիաներից,— անհեթեթություն է, աղաղակող ծաղրանք...»[63]։ Նշելով, որ «նույնիսկ մեր բոլշևիկները դյուրահավատություն են ցուցաբերում կառավարության նկատմամբ», Լենինը այդ բանը բացատրեց «միայն ռևոլյուցիայի շմոլքով»։ Ռևոլյուցիայի առաջնորդը խիստ սահմանազատվեց «Պրավդա»-ի և մարտյան խորհրդակցության գրաված դիրքից։ «Դուք, ընկերներ,— ասում էր նա,— դյուրահավատությամբ եք վերաբերվում կառավարությանը։ Եթե այդպես է, մեր ճանապարհները տարբեր են։ Ավելի լավ է մնամ փոքրամասնության մեջ։ Մի Լիբկնեխտ ավելի թանկ արժե Ստեկլովի և Չխեիձեի տիպի 110 պաշտպանողականներից։ Եթե դուք համակրում եք Լիբկնեխտին և թեկուզ մի մատ մեկնեք (պաշտպանողականներին),— դա կլինի դավաճանություն միջազգային սոցիալիզմին»։ Եվ ապա Լենինը հայտարարեց. «Իսկական կառավարությունը բանվորների դեպուտատների Սովետն է...—Հարկավոր է մասսաներին պարզաբանել, որ բանվորների դեպուտատների Սովետը միակ հնարավոր կառավարությունն է... Ես լսում եմ, որ Ռուսաստանում կա միավորման տենդենց, միավորում պաշտպանողականների հետ։ Դա դավաճանություն է սոցիալիզմի նկատմամբ»[64]։

Ապրիլի 6-ին «Պրավդա»-ում հրապարակվել էր հետևյալ հայտարարությունը. «Ի գիտություն ընկերների։ «Պրավդա»-ի կողմնակիցները ապրիլի 4-ի ժողովում, որը նվիրված էր ՍԴ միավորման հարցին, քվեարկությանը չեն մասնակցել։ ՌՍԴԲՊ Կենտկոմի անունից արվեց մի հայտարարություն, որ բոլշևիկները ոչ մի մասնակցություն չեն ունենում»։ Այսպես Վ. Ի. Լենինի ժամանման հետ պարտիան, համախմբված իր առաջնորդի շուրջը, վճռականորեն մերժեց մենշևիկների հետ միավորվելու պլանները։

Սակայն կային նաև այնպիսի մարդիկ, որոնք պարտիայի հետ միասին անմիջապես չկանգնեցին լենինյան պլատֆորմի վրա։ Ապրիլի 5-ին «Պրավդա»-ն հաղորդեց Վ. Ի. Լենինի ժամանման մասին։ Ուշադրություն է գրավում այն փաստը, որ Ստալինի և Կամենևի կողմից գլխավորվող խմբագրությունը չափազանց համառոտ կերպով շարադրեց Լենինի ճառը Ֆինլանդական կայարանի առջևի հրապարակում։ Բնորոշ է, որ խմբագրական հաշվետվության մեջ բաց էին թողնված ճառի այն տեղերը, որտեղ Լենինը պրոլետարիատին կոչ էր անում պայքարել սոցիալիստական ռևոլյուցիայի համար և անվստահություն հայտնում բուրժուական ժամանակավոր կառավարությանը։

Կենտկոմի Բյուրոյի ապրիլի 6-ի նիստում, երբ քննարկվում էին լենինյան թեզիսները, Ստալինը Կամենևի հետ հանդես եկավ թեզիսների դեմ։ Լենինը «կոնկրետ ցուցումներ չի տալիս, քանի որ մոմենտը գնահատում է, ինչպես 1871 թ., իսկ մենք դեռ չունենք այն, ինչ կատարվել է 1789 թ. և 1848 թ.»,— հայտարարեց Կամենևը։ Ապրիլյան թեզիսների քննարկման ժամանակ Ստալինի ելույթի մասին արձանագրության մեջ պահպանվել է այսպիսի նշում. «Արևմուտքի և Արևելքի միջև կամուրջի պատկերը գաղութների

63 Վ. Ի. Լենին։ Երկեր, 4-րդ հրատ., հատ. 36, էջ 506։

64 Նույն տեղը, էջ 505, 506, 507, 523։ Նկատենք, որ այդ սկզբունքային ելույթը, որը հրապարակվել է 1924 թվականին «Պրավդա»-ում և այնուհետև մտել Երկերի 3-րդ հրատարակության մեջ, չի մտցվել Վ. Ի. Լենինի Երկերի 4-րդ հրատարակության մեջ։ Պարտիայի XX համագումարից հետո միայն այդ աշխատությունը հրապարակվեց լրացուցիչ, 36-րդ հատորում։

ոչնչացումն է։ Սխեմա է, բայց չկան փաստեր, ուստի և չի բավարարում, չկա պատասխան փոքր ազգերի մասին»[65]։

Ապրիլի 8-ին «Պրավդա»-ում զետեղվել էր Կամենևի «Մեր տարաձայնությունները» հոդվածը, որի մեջ բացահայտորեն հայտարարվում էր Լենինի թեզիսների հետ «Պրավդա»-ի նախկին խմբագրության (և ոչ միայն Կամենևի) տարակարծության մասին։ «Մինչև Կենտկոմի որևէ նոր որոշումը և պարտիայի համառուսաստանյան կոնֆերենցիայի որոշումները,— կարդում ենք «Պրավդա»-ում,— այդ բանաձևերը (մարտյան խորհրդակցության։— Ա. Ս.) մնում են որպես մեր պլատֆորմը, որը և մենք կպաշտպանենք ինչպես «ռևոլյուցիոն պաշտպանողականության» քայքայիչ ազդեցությունից, այնպես էլ ընկ. Լենինի քննադատությունից։

Ինչ վերաբերում է ընկ. Լենինի ընդհանուր սխեմային, ապա այն մեզ անընդունելի է թվում, քանի որ նա ելնում է բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան ավարտված ճանաչելուց և նախորոշված է այդ ռևոլյուցիան անհապաղ սոցիալիստական ռևոլյուցիայի վերափոխելու համար։ Նման գնահատականից բխող տակտիկան խորապես տարբերվում է այն տակտիկայից, որ պաշտպանում էին «Պրավդա»-ի ներկայացուցիչները...»[66]։

Ինչպես երևում է, այդ ստադիայում լենինյան թեզիսների գնահատման մեջ Ստալինի և Կամենևի մոտ էական տարբերություններ չկային։ Ապրիլի 12-ին Կամենևը էլ ավելի հեռու գնաց, «Պրավդա»-ում հայտարարելով. «...Մենք պետք է անցնենք մասսաների կողմից կապիտալիստների կառավարության նկատմամբ իրենց «դյուրահավատ-անգիտակցական վերաբերմունքի վերացման ավելի կամ պակաս երկարատև շրջան»։ (Փակագծերում նկատենք, որ ուրիշ երկրներում այդ «շրջանը» շարունակվում է արդեն տասնամյակներով և մինչև այսօր չի վերջացել բուրժուական կառավարությունների տապալմամբ»)[67]։ Իսկ Ստալինը որոշ ժամանակ լռում էր։ Ապրիլի 14-ին կայացած Պետրոգրադյան քաղաքային պարտիական կոնֆերենցիայում նա հանդես չեկավ Ապրիլյան թեզիսների պաշտպանությամբ և դրանց միացավ պարտիայի համառուսաստանյան կոնֆերենցիայում միայն, այն բանից հետո, երբ Լենինի թեզիսներին հավանություն էին տվել պետրոգրադյան պարտիական կոնֆերենցիան և մի շարք այլ պարտիական կազմակերպություններ։

Սրանք են այն փաստերը, որոնք բնութագրում են Ստալինի դիրքը մեր պարտիայի պատմության ամենապատասխանատու ժամանակաշրջանում։

Լենինի վերադարձը Ռուսաստան բացեց ռևոլյուցիայի տարեգրության ամենապայծառ էջը։ Վ. Ի. Լենինը պարտիային տվեց գործողությունների պարզ ծրագիր, նշեց բոլշևիկյան ճիշտ տակտիկան։ Այն փաստը, որ պարտիան կարճ ժամանակում միահամուռ կերպով համախմբվեց Ապրիլյան թեզիսների շուրջը, հաստատում է, որ Ստալինի և այլոց սխալները հատուկ չէին պարտիայի մեծամասնությանը։ Իր բազմամյա հարուստ պատմությամբ բոլշևիկների պարտիան պատրաստվել էր լենինյան պլատֆորմի հիման վրա համախմբվելու, որպեսզի հաստատ կուրսով ընթանար դեպի Հոկտեմբեր։

---

65 «Революционное движение в России в апреле 1917 года. Апрельский кризис» М., 1958, стр. 15—16.

66 «Պրավդա» № 27, 1917 թվականի ապրիլի 8։

67 «Պրավդա» № 30, 1917 թվականի ապրիլի 12։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԿԱՐԵՎՈՐ ՄԻ ՊՐՈԲԼԵՄ

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ներկա էտապում պարտիան խնդիր է դնում՝ ապահովել գյուղատնտեսության արտադրողական ուժերի հզոր վերելքը և դրա հիման վրա ստեղծել բնակչության համար բարձրորակ սննդամթերքների և արդյունաբերության համար հումքի առատություն, ինչպես նաև ապահովել սովետական գյուղի աստիճանական անցումը կոմունիստական հասարակական հարաբերությունների։

Այդ խնդիրների լուծման գործում կարևոր դեր ունեն աշխատանքի ու արտադրության ռացիոնալ կազմակերպումը, նրանց առավել առաջադիմական ձևերի ու մեթոդների արմատավորումը գյուղատնտեսական ձեռնարկություններում։ Իսկ աշխատանքի ու արտադրության կազմակերպման բարելավման գործում մեծ նշանակություն ունի աշխատանքի նորմավորումը, որը բազում թելերով կապված է արտադրության տարբեր օղակների հետ։

Աշխատանքի տեխնիկական նորմավորման մեթոդները հիմնվում են աշխատանքի գիտական կազմակերպման լենինյան սկզբունքների վրա։ Այդ մեթոդներով հետազոտվում են արտադրական-աշխատանքային պրոցեսները, հաշվարկվում և նորմավորվում աշխատանքային պրոցեսի բաղկացուցիչ մասերն ըստ ժամանակի ու քանակի, սահմանվում աշխատանքի ծախսումների նորմանները, նշվում արտադրության մեջ դրանց ներդրման ուղիները։

Տեխնիկական նորմավորման մեթոդներով միայն հնարավոր է լինում սահմանել տեխնիկապես հիմնավորված նորմաներ, որոնք փոխարինում են ցածր, չհիմնավորված նորմաներին։

Հավասար աշխատանքի համար հավասար վարձատրության սոցիալիստա-
կան սկզբունքն անխախտ կարելի է կիրառել միայն այն դեպքում, երբ վար-
ձատրության հիմքում ընկած են տեխնիկապես հիմնավորված նորմաներ։ Եթե
արտադրական նորմաները ցածր են, չհիմնավորված և անհամաչափ, անհա-
վասարություն է ստեղծվում վարձատրման սիստեմում։ Այս դեպքում հաճախ
բարձր են վարձատրվում այն բանվորները կամ կոլտնտեսականները, որոնք
աշխատում են ցածր նորմաներով։ Իսկ այդ հանգամանքը հանգեցնում է
«ձեռնտու» և «ոչ ձեռնտու» աշխատանքների և բացասաբար է անդրադառնում
բանվորական ուժի ռացիոնալ տեղաբաշխման և օգտագործման վրա։

Տեխնիկական նորմավորումը հնարավորություն է տալիս աստիճանաբար
կարգավորելու աշխատանքի նորմավորումը տնտեսական գործունեության բո-
լոր բնագավառներում։ Իսկ այդ նշանակում է ո՛չ միայն սահմանել և ներդնել
տեխնիկապես հիմնավորված նորմաներ, այլև ճշտել աշխատանքային պրո-
ցեսների անվանումները, դասավորել դրանք ըստ ագրոմիջոցառումների հեր-

թականության, ճիշտ սահմանել ու կիրառել չափի միավորները: Տեխնիկական նորմավորումը տեխնիկապես հիմնավորված նորմաներ սահմանելիս ելնում է ագրոտեխնիկայի պահանջներից և նպաստում այդ պահանջների ճիշտ կատարմանը:

Հաճախ տնտեսությունների նորմատիվներում հանդիպում ենք այսպիսի աշխատանքային պրոցեսի՝ «պարարտացում հանքային պարարտանյութով», որի չափի միավորն է հեկտարը: Նման դեպքում չի երևում թե յուրաքանչյուր հեկտարին ինչքան պարարտանյութ է տրված, պարարտացումը ագրոկանոնների պահանջներո՞վ է կատարված, թե ոչ: Այդ բացը լրացնում է տեխնիկական նորմավորումը, որը նորման սահմանում է ըստ օգտագործված պարարտանյութի որոշակի քանակության, որի մասին նշվում է նորմատիվներում: Նման օրինակներ կարելի է շատ բերել:

Աշխատանքի տեխնիկական նորմավորումը նպաստում է ագրոմիջոցառումների ճիշտ և ժամանակին կիրառմանը, հետևապես նաև՝ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացմանը: Չնայած դրան, աշխատանքի նորմավորումը ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ մնում է թույլ ուսումնասիրված օղակներից մեկը:

1960 թվականից սկսած սովխոզներին սպասարկում է սովխոզների նախկին գլխավոր վարչության նորմատիվային-հետազոտական լաբորատորիան, որի միջոցով աշխատանքի նորմավորման կարգավորման ուղղությամբ որոշ գործ կատարվել է: Այդ լաբորատորիան օգնեց սովխոզներին՝ ճշտելու արտադրական նորմաների անվանումները, դրանք դասավորելու ըստ ագրոմիջոցառումների հերթականության, կարգավորելու կիրառվող չափի միավորները և տարիֆային կարգերը, ինչպես նաև ցածր ու չհիմնավորված շատ նորմաներ փոխարինելու տեխնիկապես հիմնավորվածներով:

Ինչպես հայտնի է, տարիֆային կարգերը հաստատվում են ՍՍՌՄ Մինիստրների սովետի աշխատանքի ու աշխատավարձի պետական կոմիտեի կողմից, և պարտադիր են երկրի բոլոր սովխոզների ու գյուղատնտեսական պետական մյուս ձեռնարկությունների համար: Բայց իրականում տարիֆային կարգերի կիրառման կոպիտ խախտումներ կան բոլոր սովխոզներում: Էջմիածնի շրջանի Բաղրամյանի անվան և Նորակերտի, Հոկտեմբերյանի շրջանի Մյասնիկյանի անվան և շատ այլ սովխոզներում խախտվել էր կիրառվող տարիֆային կարգերի մոտ 20—25 տոկոսը: Լաբորատորիայի օգնությամբ ուղղվեցին թույլ տված սխալները, որի շնորհիվ տնտեսվեց տասնյակ հազար ռուբլիների հասնող աշխատավարձ, բարելավվեցին աշխատանքի վարձատրությունն ու կազմակերպումը արտադրական շատ պրոցեսներում, հնարավոր դարձավ ճիշտ տեղաբաշխել և օգտագործել բանվորական ուժը: Սակայն այդ ուղղությամբ կատարված են միայն առաջին քայլերը. հիմնական գործը դեռևս առջևում է:

Այդ լաբորատորիայի դրական փորձի հիման վրա կազմակերպվեց ռեսպուբլիկական նորմատիվային-հետազոտական կայան, որն ընթացիկ տարվանից զբաղվում է նաև կոլտնտեսային աշխատանքների նորմավորման հարցով:

Ինչպես կոլտնտեսություններում, այնպես էլ ռեսպուբլիկայի գյուղատնտեսական պետական ձեռնարկություններում զգալի տոկոս են կազմում ցածր, տեխնիկապես չհիմնավորված արտադրական նորմաները: Մեծ անհա-



մաչափություններ կան միատեսակ բնա-արտադրական պայմաններում գտնվող տնտեսությունների նույն նորմաների միջև:

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ աշխատանքի նորմավորման կարգավորումը կարևոր և անհետաձգելի խնդիր է, որի համար կպահանջվի զգալի ժամանակ:

Հայաստանը հայտնի է իբրև ֆիզիկա-աշխարհագրական բարդ կոմպլեքսների երկիր: Նրա բնությունը հարուստ է հակադրություններով: Այստեղ, նույնիսկ ամենափոքր տարածությունների վրա, զգացվում են այնպիսի տարբերություններ, որպիսիք ՍՍՌՄ եվրոպական մասում կարելի է հանդիպել միայն հարյուրավոր կիլոմետրերի վրա: Նրա մակերևույթը ներկայացնում է ծալքավոր-բեկորային լեռնաշղթաների, խոշոր հրաբխային զանգվածների, սարավանդների ու լճային գոգավորությունների, նեղ գետահովիտների մի բարդ զուգորդություն:

Այդպիսի բարդ ռելիեֆը նույնիսկ ամենամոտիկ տարածությունների վրա տեղիք է տալիս նորմագոյացնող գործոնների բազմազանության: Այսպես, գյուղատնտեսական մեքենայացված աշխատանքների համար հիմնական նորմագոյացնող գործոնները համարվում են վարելահողերի բարձրությունը ծովի մակերևույթից, գոնների երկարությունը, քարքարոտության աստիճանը, թեքության անկյան աստիճանը, հողի տեսակարար դիմադրությունը: Եթե հարթավայրային շրջաններում այդ գործոնների որոշումը և արտադրական նորմաների սահմանումը առանձնակի բարդությունների հետ չեն կապված, ապա լեռնային շրջաններում հակառակն է: Այսպես. Մեղրիի շրջանում վարելահողերը գտնվում են ծովի մակերևույթից 550-ից մինչև 2135, Զանգեզուրում՝ 750—2200, Լոռիում՝ 640—1720 մետր բարձրության վրա և այլն: Չնայած այդպիսի տատանումներին, մեքենայացված աշխատանքների արտադրական նորմաները միևնույնն են տարբեր բարձրությունների վրա գտնված տնտեսությունների համար: Այսպես, Մեղրիի շրջանի Կարճևանի սովխոզի վարելահողերը գտնվում են 600 մետր, իսկ Լիճքի սովխոզինը՝ մոտ 2000 մետր բարձրության վրա, բայց երկու տնտեսություններում էլ ԴՏ—54 տրակտորով վարի հերթափոխային նորման 3,4 հեկտար է: Միևնույնն են նաև մեքենայացված մյուս աշխատանքների նորմաները: Այսպիսի փաստեր առկա են բոլոր այն շրջաններում, ուր կա նորմագոյացնող գործոնների բազմազանություն: Վարելահողերը խիստ կտրտված են, տարբեր մեծություն և ձև ունեն, հիմնականում կարճ է գոների երկարությունը: Իսկ քարքարոտության աստիճանը տարբեր է ոչ միայն առանձին տնտեսություններում, այլև առանձին հողակտորներում, հողի դիմադրությունը որպես բացառիկ երևույթ նույնիսկ առանձին տնտեսություններում տատանվում է 0,4—1,4 կգ/սմ²: Դեռ ավելին, վարելահողերի թեքության անկյունը հասնում է մինչև 26 աստիճանի, մինչդեռ Միության մեջ մինչև այժմ արտադրական և վառելիքի նորմաների ուղղման գործակիցներ են մշակված մինչև 7 աստիճան թեքության համար: Մեր պայմաններում անհրաժեշտ է համապատասխան ուսումնասիրություններ կատարել և ուղղման գործակիցները մշակել նաև 7 աստիճանից բարձր թեքությունների համար:

Բազմազանություն ու դժվարություններ կան նաև գյուղատնտեսության մյուս աշխատանքների նորմավորման գործում, քանի որ բնա-կլիմայական առանձնահատկությունների հետ մեկտեղ բազմազան են մշակվող կուլտուրաները, իսկ նրանց մշակությունը՝ սեզոնային է:

Այսպիսի բարդությունների հետ է կապված աշխատանքի նորմավորումը ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ, այդ պատճառով էլ ավելի տևական աշխատանք է պահանջվում նրա կարգավորման համար, առավել բարդ խնդիրներ են ծառանում տեխնիկական նորմավորման առջև։

Ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1962 թ.) պլենումում իր զեկուցման մեջ նշեց Ն. Ս. Խրուշչովը, աշխատանքի նորմավորումը միլիոնավոր մարդկանց շահերը շոշափող քաղաքական մեծ հարց է, այն կարևոր նշանակություն ունի աշխատանքի կազմակերպման գործում և չի կարելի թերագնահատել աշխատանքի այդ կարևոր բնագավառը։

Աշխատանքի նորմավորման կարգավորումը գյուղատնտեսության մեջ պետք է համարել ոչ միայն նորմավորմամբ զբաղվող կազմակերպությունների, այլև պարտիական կազմակերպությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական բոլոր վերադաս կազմակերպությունների ղեկավարների կարևոր խնդիրներից մեկը։

Աշխատանքի նորմավորումը ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ անհրաժեշտ է կարգավորել աստիճանաբար, երեք հիմնական էտապներով։ Առաջին էտապում անհրաժեշտ կլինի ձեռնարկել ընդհանուր բնույթի միջոցառումներ ու հետազոտություններ (կադրերի պատրաստում, գրականության և նորմատիվների հրատարակում, վարելահողերի պասպորտիզացիա և այլն)։ Երկրորդ էտապում տեխնիկապես հիմնավորված նորմաներ կսահմանվեն առանձին տնտեսությունների համար, իսկ երկրորդ էտապում նման նորմաներ կսահմանվեն տնտեսությունների ներսում՝ դիֆերենցված կարգով՝ ըստ բնա-արտադրական առանձնահատկությունների։ Դրա համար նախ անհրաժեշտ է բազմակողմանի ուսումնասիրել բոլոր տնտեսություններում աշխատանքի նորմավորման վիճակը և վերացնել այդ գործում եղած թերություններն ու սխալները։

Այս էտապում անհրաժեշտ է ամենից առաջ կատարել տնտեսությունների վարելահողերի և բազմամյա տնկարկների տարածությունների պասպորտիզացիա, որի ժամանակ հնարավոր կլինի բացահայտել բոլոր նորմագոյացնող գործոնները, դրանք դնել տեխնիկապես հիմնավորված նորմաների սահմանման հիմքում։ Միայն պասպորտիզացիայի տվյալները կարող են հնարավորություն տալ խմբավորելու տնտեսություններն ըստ բնա-արտադրական առանձնահատկությունների և նորմագոյացնող գործոնների ու դրա հիման վրա մշակել օրինակելի նորմաներ ըստ գոտիների։ Սակայն ռեսպուբլիկայում մինչև այժմ լրիվ չի կատարվել նշված տարածությունների պասպորտիզացիան։

Առանձին կազմակերպություններում նորմավորման համար պիտանի որոշ տվյալներ կան՝ գոների երկարությունը, հողակտորների մեծությունը, սակայն ըստ տնտեսությունների դեռևս չկան այնպիսի կարևոր գործոններ, ինչպիսիք են՝ հողերի տեսակարար դիմադրությունը, նրանց թեքության աստիճանը և այլն։ Անհրաժեշտ է ի մի բերել եղածը և շարունակել հետազոտությունը՝ մյուս գործոնները որոշելու համար։

Մեր կարծիքով անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել աշխատանքի նորմավորմամբ զբաղվող կադրերի պատրաստմանը։ Մինչև այժմ ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ աշխատանքի տեխնիկական նորմավորմանը տիրապետում են սակավաթիվ մարդիկ, որոնք աշխատում են գերատեսչություններում ու գիտահետազոտական կազմակերպություններում։ Մասնագետ-



ները դեռևս չեն տիրապետում տեխնիկական նորմավորման մեթոդներին, պարզապես չեն կարողանում նորմավորել աշխատանքը։ Իսկ ռեսպուբլիկայի գյուղատնտեսական բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում անբավարար են դասավանդում տեխնիկական նորմավորման հիմունքները, չափազանց քիչ ժամեր են հատկացվում դրան, որի հետևանքով ուսանողները չեն տիրապետում տեխնիկական նորմավորման թեորիային ու պրակտիկային, հետևաբար, հետագայում չեն կարողանում զբաղվել այդ հարցերով։

Հիշատակության արժանի է Մոսկվայի Տիմիրյազևի անվան գյուղատնտեսական ակադեմիայի փորձը, որտեղ տեխնիկական նորմավորման դասավանդումը բարձր հիմքերի վրա է դրված։ Այստեղ թեորիական պատրաստականություն ստանալուց հետո, արտադրական պրակտիկայի ժամանակ ուսանողները տեխնիկական նորմավորման մեթոդներով սահմանում են հիմնավորված նորմաներ, դրանք ներկայացնում տնտեսությունների ղեկավարների քննարկմանը, որից հետո ներդրվում են արտադրության մեջ։ Բացի այդ, ակադեմիայի ուսումնա-փորձնական տնտեսությունում ուսանողների վարձատրման հիմքում դրված են հենց նրանց կողմից սահմանված արտադրական նորմաները։ Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսական ուսումնական հաստատությունները շատ բան ունեն սովորելու նրանց փորձից։

Այս բնագավառում կադրերի պատրաստման գործը բարելավելու համար անհրաժեշտ է, բացի ուսումնական հաստատություններից, գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտահետազոտական հայկական ինստիտուտի և ռեսպուբլիկական նորմատիվային-հետազոտական կայանի միջոցով կազմակերպել կարճաժամկետ դասընթացներ։ Միաժամանակ պետք է լույս ընծայել դասագրքեր, ինչպես նաև համապատասխան գրականություն տեխնիկական նորմավորման մեթոդիկայի նշանակության և այլ հարցերի մասին, նկատի ունենալով, որ այդպիսի գրականություն մինչև այժմ հայերեն չի հրատարակվել։

Վաղուց ժամանակն է միասնական սպասարկման նորմաներ մշակելու նաև ստացիոնար մեքենաների համար։ Այժմ տնտեսություններում եղած միևնույն ստացիոնար մեքենայի (կալսիչ, քամհար, սերմազտիչ, սիլոսահատ և այլն) սպասարկման համար նշանակվում են տարբեր թվով մարդիկ։ Այսպես, օրինակ, Արտաշատի արտադրական վարչության Դվինի սովխոզում հացահատիկը քամհարով զտելու ժամանակ նույն տիպի մեքենայի վրա նշանակվում են կրկնակի թվով ավելի բանվորներ, քան Կիրովի անվան սովխոզում։ Կամ մեկ այլ օրինակ. ՎԻՄ—ՍՄ սերմազտիչ մեքենայի արտադրողականությունը մեկ հերթափոխում 16 տոննա է։ Այդ մեքենայի սպասարկման համար Ամասիայի արտադրական վարչության Ղուկասյանի և Ղազանչիի սովխոզներում նշանակում են 4 մարդ, յուրաքանչյուրի արտադրական նորման սահմանելով 4 տոննա, իսկ Ստեփանավանի կաթնաանասնապահական սովխոզում նույն մեքենայի վրա աշխատող բանվորի արտադրական նորման սահմանվել է 0,8 տոննա։ Այս նշանակում է, որ եթե այդ սովխոզներում սերմազտիչ մեքենան մեկ հեթափոխում զտի միևնույն քանակությամբ ցորեն, ապա Ստեփանավանի սովխոզում բանվորը նույն աշխատանքի համար 5 անգամ ավելի կվարձատրվի, քան մյուս սովխոզներում։ Իսկ այդ մեծ մասամբ հետևանք է այն բանի, որ տնտեսություններն իրենց ձեռքի տակ չունեն

մեքենաների սպասարկման նորմաները։ Նույնն է վիճակը նաև կցվող մեքենա-
ների ու գործիքների օգտագործման բնագավառում։ Միասնական նորմաների
մշակումը հնարավորություն կտա բարելավելու այդ գործը։

Գյուղատնտեսական մյուս աշխատանքների համեմատ անասնապահու-
թյունն իր առանձնահատկություններն ունի։ Այստեղ աշխատանքի բաժանումը
բավական երկար ժամանակամիջոցում է տեղի ունենում։ Բացի հիմնական
գործերից (կիթ, անասունների խնամք), անասնապահները կատարում են մի
շարք օժանդակ աշխատանքներ (ջրում են անասուններին, տեղափոխում կեր,
կաթ, գոմաղբ և այլն)։ Մի շարք տնտեսություններում այդ աշխատանքների
համար լրացուցիչ վարձատրում են անասնապահներին, իսկ որոշ տեղերում
հանձնարարում են ուրիշ մարդկանց։ Մինչդեռ անասնապահության մեջ տեխ-
նիկապես հիմնավորված նորմաներ սահմանելիս նշվում են յուրաքանչյուր
անասնապահի կոնկրետ պարտականությունները։ Եթե այդ պարտականու-
թյունները ճիշտ չեն սահմանվում տնտեսություններում, ապա սպասարկման
նորմաները տեխնիկապես հիմնավորված չեն կարող լինել։ Այսպիսով անաս-
նապահների պարտականությունների ճիշտ սահմանումը զգալի չափով կօգնի
անասնապահական աշխատանքների նորմավորման կատարելագործմանը։

Անհրաժեշտ է կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչություն-
ներին կից ստեղծել նորմավորման կետեր, որոնց ղեկավարներ կարելի է նշա-
նակել վարչությունների աշխատանքի և աշխատավարձի բնագավառում աշ-
խատող մասնագետներին։ Այդ անհրաժեշտությունը բխում է ո՛չ միայն տնտե-
սությունների բնաարտադրական պայմանների խիստ բազմազանությունից և
աշխատանքի նորմավորման ներկա վիճակից, այլև այն բանից, որ այդ կե-
տերը հնարավորություն կունենան ամեն տարի վերանայելու, ստուգելու և
հաստատման ներկայացնելու գյուղատնտեսական պետական ձեռնարկություն-
ների արտադրական նորմաները ու աշխատանքի վարձաչափերը։

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՌՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի 1961 թ. հու-
նիսի 15-ի որոշմամբ հիշյալ նորմաները և վարձաչափերը պետք է հաստատ-
վեն վերադաս կազմակերպությունների՝ արտադրական վարչությունների կող-
մից, մինչդեռ այդ վարչություններում, նորմավորմամբ զբաղվող մասնագետ-
ներ չկան։ Այդ կետերի ստեղծումը հնարավորություն կտա աշխատանքի նոր-
մավորման հետ միասին կարգավորել նաև աշխատանքի վարձատրությունը։
Մեր կարծիքով, գործի շահը պահանջում է աշխատանքի նորմավորման գծով
մասնագետներ ունենալ տնտեսություններում, իսկ խոշոր սովխոզներում և
կոլտնտեսություններում՝ նաև տեխնիկ նորմավորողներ։

Հետագայում հետազոտական աշխատանքներ կտարվեն արդեն առանձին
տնտեսությունների շրջանակներում, նրանց համար տեխնիկապես հիմնա-
վորված նորմաներ սահմանելու ուղղությամբ, հաշվի առնելով նրանց բնա-
արտադրական կոնկրետ պայմանները։ Դրա համար բավարար տվյալներ կհան-
դիսանան նախորդ էտապում կատարված հողերի պասպորտիզացիան և հետա-
զոտման մյուս տվյալները։ Այս դեպքում արդեն հնարավոր կդառնա տեխնի-
կապես հիմնավորված նորմաներ սահմանել նույնիսկ առանձին խումբ տնտե-
սությունների համար, որոնց բնա-արտադրական պայմանները նույնանման են։

Այդպիսի նորմաների մշակումը հնարավորություն կտա ո՛չ միայն ցածր
նորմաները փոխարինել տեխնիկապես հիմնավորված նորմաներով, այլև
զգալիորեն բարելավել աշխատանքի կազմակերպումը։ Մի խումբ տնտեսու-



թյունների համար միասնական նորմաների մշակումը նպաստում է նորմաների
միջև եղած անհամաչափությունների վերացմանը, որի շնորհիվ տեղի չի ունե-
նում բանվորական ուժի հոսունություն մի տնտեսությունից մյուսը, ստեղծ-
վում է բանվորների կայուն կազմ, որը կարևոր նշանակություն ունի աշխա-
տանքի և արտադրության կազմակերպումը բարելավելու համար։

Անհրաժեշտ կլինի նաև կոմպլեքսային նորմաներ սահմանել առանձին
աշխատանքների համար (խոտի դիզում, սածիլների աճեցում, ծխախոտի տե-
րևաքաղ, շար և այլն), որոնք բաղկացած են բազմաթիվ մանր պրոցեսներից
և դժվար է դրանց համար տեխնիկապես հիմնավորված նորմաներ մշակելն ու
կատարված աշխատանքը հաշվառման ենթարկելը։ Այսպես, օրինակ, ծխախո-
տի սածիլների աճեցման ժամանակ կատարվում են մի շարք մանր պրոցեսներ
(շրջանակների բացում և փակում, ցնցուղով ջրել, քաղհան, նոսրացում և
այլն), որոնց հաշվառումը դժվար է։ Բրիգադավարը կամ օղակավարը չեն կա-
րող հաշվել թե քանի անգամ է բանվորը բացում-փակում շրջանակները կամ
որքան ջուր է տեղափոխում։ Եթե սահմանվեն սածիլների աճեցման խոշորաց-
ված նորմաներ, ապա կվերանան այդ դժվարությունները, հավելագրումներ չեն
լինի և աշխատողները ճիշտ կվարձատրվեն։ Այսպիսի խոշորացված նորմանե-
րից շատերը կարող են օրինակելի դառնալ մյուս տնտեսությունների համար։

Մեր ռեսպուբլիկայի տնտեսությունների գերակշռող մասն ունի հողային
մեծ տարածություններ՝ միանգամայն տարբեր նորմագոյացնող գործոններով։
Բազմազան են նաև մշակվող կուլտուրաների տեսակներն ու սորտերը։ Այսպի-
սի բազմազանության հետևանքով միևնույն բանվորական պրոցեսի վրա տար-
բեր հողակտորներում և տարբեր սորտեր մշակելիս պահանջվում են միանգա-
մայն տարբեր աշխատանքային ծախսումներ։ Նկատի ունենալով այդ, անհրա-
ժեշտ է նորմաները դիֆերենցել նաև տնտեսությունների ներսում։

Դիֆերենցված նորմաների մշակումը հնարավորություն կտա ճշտությամբ
որոշելու աշխատանքային ծախսումները տնտեսությունների ներսում, հետևա-
բար՝ ճիշտ գնահատելու և վարձատրելու կատարված աշխատանքը, որն անձ-
նական շահագրգռվածության և աշխատանքի արտադրողականության բարձ-
րացման կարևոր խթան է։ Նորմավորման նպատակն է՝ ծախսվող աշխատանքի
ճիշտ չափումը, նորմավորումը և վարձատրումը, անկախ նրանից, թե որտեղ է
ծախսվում այդ աշխատանքը։ Այդ բանին կարելի է հասնել աստիճանաբար,
մտածված ու կազմակերպված աշխատանքի միջոցով։ Սակայն դա չի նշանա-
կում, թե այդ էտապներն իրարից բաժանվում են ինչ-որ անջրպետներով։
Դրանք սերտորեն շաղկապված են և շատ տնտեսություններում երկրորդ ու
երրորդ էտապները կարող են ընթանալ համատեղ. այդ պայմանավորված է
նորմավորման վիճակով և նորմավորմամբ զբաղվող մասնագետների ունակու-
թյուններով։

Աշխատանքի նորմավորման կարգավորումը ռեսպուբլիկայի գյուղատնտե-
սության զարգացման գլխավոր խնդիրներից մեկն է։ Նշված միջոցառումները
հնարավորություն կտան այդ խնդիրները ժամանակին լուծելու։

Գ. ԴԱՐԲԻՆՅԱՆ

---

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԱԿՏԻՎ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԸ

Սովետական իշխանության հաստատման օրից ի վեր Կոմունիստական պարտիայի վարած քաղաքականության շնորհիվ մեր երկրում արմատական փոփոխություններ են տեղի ունեցել կանանց քաղաքական, կուլտուրական, կրթական մակարդակի անընդհատ բարձրացման և նրանց հանրօգուտ աշխատանքի ներգրավելու ուղղությամբ։ Կնոջ քաղաքական-տնտեսական ու հասարակական դերի բարձրացման գործում պարտիան ելել է լենինյան այս հայտնի դրույթից. «Կնոջ լիակատար ազատագրության և նրան տղամարդուն իսկապես ճավասար դարձնելու ճամար ճարկավոր է, որ ճասարակական տնտեսություն լինի, և կինը մասնակցի ընդճանուր արտադրողական աշխատանքին, այն ժամանակ կինը կգրավի նույնպիսի դրություն, ինչպիսին տղամարդը»։

Սոցիալիզմը լայն հնարավորություն տվեց կնոջը՝ ակտիվ մասնակցելու երկրի տնտեսական, քաղաքական և հասարակական կյանքին։ Այսօր Սովետական Միությունում չկա արտադրության, գիտության, կուլտուրայի ու առողջապահության այնպիսի բնագավառ, ուր կանայք պատվավոր տեղ չգրավեն։ Բավական է նշել, որ 1962 թվականին Սովետական Միությունում տնտեսության տարբեր բնագավառներում աշխատում էին 47 միլիոն կանայք։

Սովետական Հայաստանում ևս կանայք մեծ դեր են խաղում ժողովրդական տնտեսության մեջ և հասարակական- քաղաքական կյանքում։

Արդյունաբերության մեջ կին առաջավորների աշխատանքի փորձը ակընբախորեն վկայում է, թե ինչպես է աճում կանանց ակտիվությունը կոմունիստական շինարարության ասպարեզում։ Այսպես, Երևանի նուրբ-բրդյա գործվածքի և մահուդի ֆաբրիկայում (1961 թ. տվյալներով) կոմունիստական աշխատանքի կոչում են ստացել 8 բրիգադա, որտեղ կանայք կազմում են աշխատողների մոտ 98 տոկոսը։ Մանրաճ ցեխի կոմունիստական աշխատանքի երեք բրիգադաներ պլանից դուրս տվել են 17378 կգ թել, իսկ զույգող-ոլորող ցեխը, որտեղ կա մեկ կոմունիստական աշխատանքային բրիգադա, պլանից դուրս տվել է 57763 կգ թել։ Արտադրության առաջավորների առջևից է ընթանում Լենինականի տեքստիլ կոմբինատի գործվածքային ֆաբրիկայի ջուլհակուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Աստղիկ Պետրոսյանը, որն աշխատանքի ճիշտ կազմակերպմամբ իսպառ վերացրեց պարապուրդները, որոնք տեղի էին ունենում մեքենաների խափանումների, հումքի պակասի և այլ պատճառներով։ Իր գործունեության ընթացքում բանվորուհին թողարկել է 4 միլիոն մետրից ավելի գործվածք։ Դա փառքի ճապավեն է, որը զարդարում է նրա անցած ուղին։

Լուսավորության և առողջապահության, գիտության ու տեխնիկայի, գրականության ու արվեստի բնագավառներում կանայք ամենուրեք մեծ խանդավառությամբ են աշխատում։ Այսպես, 1950 թվականին ամբողջ ռեսպուբլիկայում գիտության տարբեր բնագավառներում աշխատում էին 739 կին, 1961 թվականին՝ 1611, այդ թվում կին պրոֆեսորներ՝ 5, դոցենտներ՝ 89 հոգի։

Պանծալի կին գիտնական է քիմիական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Արաքսյա Բաբայանը։ Իր տքնաջան աշխատանքի և պրպտումների շնորհիվ այսօր ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունեցող մի շարք հայտնագործությունների հեղինակ է նա։ Բավական է նշել, որ ացետիլային գիկոլի ստացման բոլորովին նոր եղանակը, որին իր տեղը զիջեց աշխարհում ճանաչում գտած ու կիրառվող Յոդիչի եղանակը, հայտնի է «Ֆավորսկի—Բաբայանի եղանակ» անունով։

Առողջապահության և լուսավորության բնագավառում ևս քիչ չեն հայ պանծալի կանայք։ Ահա՛ նրանք. Երևանի 49-րդ դպրոցի անվանի ուսուցչուհի Անահիտ Բակունցը, որն իր բազմավաստակ ավանդն է մուծել մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության գործում. օրթոպեդիայի և տրավմատոլոգիայի գիտահետազոտական ինստիտուտի վիրահատ, հայրենական պատերազմի մասնակից Ռոզա Լալայանը և ուրիշներ։ Արվեստի ասպարեզում էլ հայ կինն իրեն դրսևորել է փայլուն կերպով։ Հայաստանում քիչ չեն տաղանդավոր երգչուհիներ, կին նկարիչներ, ճարտարապետներ, կոմպոզիտորներ, քանդակագործներ, որոնք իրենց տաղանդն ու շնորհքն են նվիրել հարազատ հայրենիքին։ Քանդակագործուհի Այծեմնիկ Ուրարտուն ավելի քան կես դար է, ինչ իր շնորհալի քանդակներով զարդարում է մեր գեղեցիկ քաղաքը. նկարչուհի Մարիամ Ասլամազյանի ստեղծագործությունների մասին ամենուր գովեստով են խոսում։ Աշխարհի ո՞ր մասում մարդկանց չի հուզել աշխարհահռչակ երգչուհի Գոհար Գասպարյանի հոգեզմայլ ձայնը։

Ինչպես ողջ Սովետական Միությունում, այնպես էլ Սովետական Հայաստանում ժողովրդական տնտեսության բուռն վերելքի շնորհիվ տարեցտարի աճեց կանանց տեսակարար կշիռը բանվորների, ծառայողների, գիտության ու կուլտուրայի բնագավառներում աշխատողների կազմում։ Եթե ռեսպուբլիկայում 1928 թվականին կանանց տեսակարար կշիռը բանվոր ծառայողների ընդհանուր թվաքանակում կազմում էր ընդամենը 9,9 տոկոս, ապա 1961 թվականին այն արդեն հասավ 38-ի, ընդ որում 1959 թ. մարդահամարի տվյալներով աշխատող կանանց ամբողջ թվի 76,6 տոկոսն զբաղված էր նյութական արտադրության, իսկ 20 տոկոսը ոչ նյութական արտադրության ոլորտում (այդ թվում գիտության, լուսավորության և առողջապահության բնագավառներում 16,4 տոկոսը)։

Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կանանց մասսայական ներգրավման գործում կարևոր նշանակություն ունեցան նաև կանանց արտադրական որակավորման բարձրացումը, աշխատանքային պայմանների արմատական բարելավումը, սովետական իշխանության ամենօրյա հոգատարությունը մոր և մանկան նկատմամբ, կենցաղային սպասարկման ձեռնարկությունների ցանցի ընդլայնումը (որը թեթևացրեց կանանց աշխատանքը ընտանիքում և այլն)։

Ժողովրդական տնտեսության վերականգնման ժամանակաշրջանում կանայք դեռևս զգալի չափով ետ էին մնում տղամարդկանցից՝ իրենց աշխատանքային որակավորման մակարդակով։ Այդ անցյալի ծանր հետևանք էր, որը միանգամից վերացնել հնարավոր չէր։ Կին աշխատավորների արտադրական

որակավորման բարձրացումն ուներ խոշոր սոցիալ-քաղաքական նշանակություն, քանի որ կանանց աշխատանքի արտադրողականությունը մեծ չափով կախված էր նրանց արտադրական որակավորման բարձրացումից: Արտադրական որակավորման բարձրացման գործում մեծ նշանակություն ունեցավ ֆաբրիկա-գործարանային արտադրական, տեխնիկական ուսուցումը, որը հնարավորություն տվեց կնոջը՝ նվաճելու տեխնիկի, ինժեների, արտադրության ղեկավարի դիրքերը:

Մյուս գործոնը, որը պայմանավորում է կանացի աշխատուժի ներգրավումը ժողովրդական տնտեսության, արդյունաբերության մեջ, դա Հայաստանի արդյունաբերության բուռն վերելքն է: Հայաստանում արդյունաբերությունը հատկապես սկսեց զարգանալ հետպատերազմյան շրջանում: 1961 թ. Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ ավելացավ 75 անգամ:

Արդյունաբերության զարգացմանը զուգընթաց ավելացավ նաև նրանում ընդգրկված բանվոր-ծառայողների թիվը. առ 1-ը հոկտեմբերի 1950 թ. տվյալներով, 1928 թվականի համեմատությամբ, ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ բանվոր-ծառայողների թիվն ավելացավ 5 անգամ, իսկ 1939 թվականի համեմատությամբ՝ 52,6 տոկոսով, այդ թվում՝ արդյունաբերության մեջ՝ 6 անգամ: Դրան համապատասխան աճեց նաև կանանց թիվը: 1950 թվականին ժողովրդական տնտեսության մեջ զբաղված կանանց թիվը հասավ 82700-ի, կամ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության մեջ զբաղվածների՝ 39 տոկոսը, այդ թվում արդյունաբերության մեջ՝ 22,3 հազար հոգի, կամ 36 տոկոսը:

Արդյունաբերության մեջ զարգացման բարձր տեմպերով աչքի են ընկնում ծանր ինդուստրիայի ճյուղերը՝ մեքենաշինությունը, քիմիան, շինանյութերի արդյունաբերությունը և այլն: Դրանով են բացատրվում նշված ճյուղերում կանանց թվի ավելացման բարձր տեմպերը: Այսպես, մեքենաշինության և մետաղամշակության մեջ 1959 թվականին աշխատում էին 4838 կին կամ ամբողջ աշխատողների 24,5 տոկոսը, սև մետալուրգիայում՝ 152 կամ 16,2 տոկոսը, քիմիական արդյունաբերության մեջ՝ 1598 կին կամ 24 տոկոսը: Հետագայում աշխատանքային օրվա կրճատման, արտադրության մեքենայացման ու ավտոմատացման շնորհիվ հեշտացավ աշխատանքը, ավելի բարձրացավ կանանց դերը ժողովրդական տնտեսության մեջ: Այդ են վկայում հետևյալ թվերը. 1962 թվականին մեքենաշինության և մետաղամշակության մեջ աշխատում էին 9301 կին կամ աշխատողների ընդհանուր թվի 28,2 տոկոսը, քիմիական արդյունաբերության մեջ՝ 2108, կամ 25,6 տոկոսը, սև մետալուրգիայում՝ 173, կամ 28 տոկոսը:

Հայաստանի արդյունաբերությունը հետպատերազմյան ժամանակաշրջանում աճեց ոչ միայն որակապես, այլև քանակապես, ստեղծվեցին բազմաթիվ նոր ճյուղեր: Արդյունաբերության ճյուղային կառուցվածքում տեղի ունեցած քանակական ու որակական տեղաշարժերի շնորհիվ հետպատերազմյան ժամանակաշրջանում խիստ փոխվեց կանացի աշխատուժի պրոֆեսիոնալ կազմը: Այսպես, 1939 թվականի հետ համեմատած, 1959 թվականին կին խառատների թիվն ավելացել է ավելի քան 5,5, փականագործներինը՝ 7,3, մեխանիկներինը՝ 7,1, ֆրեզերագործներինը՝ 9,3, տեքստիլ արդյունաբերության մեջ ենթավարպետներինը՝ 8,3 անգամ և այլն:



Աշխատավորների նյութական-կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը նույնպես փոփոխության ենթարկեց կանացի աշխատուժի պրոֆեսիոնալ կազմը, կանայք յուրացրին այնպիսի բարդ պրոֆեսիաներ, որոնք համարվում էին միայն տղամարդու պրոֆեսիա: Այդ է վկայում այն, որ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող կին մասնագետների թիվը 1957 թ. 30,1 հազարից 1960 թվականին հասավ 37 հազարի:

Նյութական արտադրության ոլորտում զբաղվածների նշված բացարձակ աճի պայմաններում (բացարձակ աճը 39 տոկոս), վերջիններիս թիվը հարաբերականորեն պակասում է: Այսպես, 1939 թ. 86,6 տոկոսից 1959 թ. այն իջել է 82, 4 տոկոսի: Նվազումը տեղի է ունեցել ի հաշիվ ոչ նյութական արտադրության ոլորտում զբաղվածների թվի աճի:

Այժմ մեր գործարաններում, կոմբինատներում, ամենուրեք կարելի է հանդիպել կին ինժեներների, մեխանիկների, տնտեսագետների և այլն: Տիրապետելով մի ժամանակ միայն «տղամարդուն հատուկ» այդ պրոֆեսիաներին, մտնելով արտադրություն, շատ ու շատ կանայք դարձան առաջավորներ: Ահա նրանցից մեկը՝ Կիրովի անվան գործարանի տեխնիկական բաժնի ինժեներ Էմմա Մկրտչյանը: Նա մոտ 40 ռացիոնալիզատորական առաջարկությունների հեղինակ է, որոնք հիշյալ գործարանին տարեկան տալիս են մեծ գումարի խնայողություն: Պարտիան և կառավարությունը բարձր գնահատեցին անվանի ինժեների կատարած աշխատանքը և նրան շնորհեցին վաստակավոր ռացիոնալիզատորի կոչում. Էմման առաջին կին վաստակավոր ռացիոնալիզատորն է մեր ռեսպուբլիկայում:

Հասարակության առաջընթացի և արտադրողական ուժերի զարգացման մակարդակի համեմատ աճում է ոչ նյութական ոլորտում զբաղված կանանց թիվը: Դա տեղի է ունենում գիտության, լուսավորության և առողջապահության բնագավառների ընդլայնման հաշվին: Այսպես, 1960 թ. 4,2 հազար բժիշկներից (առանց ատամնաբույժների) 3,0 հազարը կամ 70 տոկոսը կանայք են: Մեծ է նաև մանկավարժության բնագավառում աշխատող կանանց թիվը: 1960—61 ուսումնական տարում ռեսպուբլիկայի դպրոցներում աշխատող մանկավարժների 54 տոկոսը կանայք էին:

Երբեք և ոչ մի երկրում մայրը շրջապատված չէ այնպիսի հոգատարությամբ ու սիրով, ինչպես մեզ մոտ: ՍՍՌՄ-ում մեծ հոգատարություն է ցուցաբերվում մոր և մանկան նկատմամբ. հասարակական ֆոնդերի հաշվին ստեղծվում են մանկամսուրներ, մանկապարտեզներ, մանկական կոնսուլտացիաներ, գիշերօթիկ դպրոցներ, ընդլայնվում է հասարակական սննդի, պիոներական ճամբարների ցանցը: Այս միջոցառումները հնարավորություն են տալիս կնոջն ավելի ակտիվ մասնակցելու հասարակական հանրօգուտ աշխատանքին: Այժմ ՍՍՌՄ-ն ունի մանկական ձեռնարկությունների ամենալայն ցանցն աշխարհում: Միայն Հայաստանում 1961 թ. հունվարի դրությամբ գործում էին 416 մանկապարտեզ և մանկամսուր, որտեղ ընդգրկվել էին 29830 երեխա:

Կոմունիստական պարտիայի Ծրագրում նշված է. «Պետք է լրիվ վերացվեն կենցաղում կնոջ անճավասար դրության մնացորդները, ստեղծվեն սոցիալ-կենցաղային բոլոր պայմանները՝ երջանիկ մայրությունը զուգորդելու համար հասարակական աշխատանքին ու հասարակական գործունեությանը...»: Պարտիայի Ծրագրի կենսագործումը լուրջ փոփոխություններ կմտցնի կանանց կենցաղում ու կյանքում: Ամբողջովին կվերացվեն կանանց անհավասար դրու-

*թյան մնացորդները կենցաղում: Նոր հասարակարգը կվերացնի տնային տըն-տեսության մեջ կանանց ծանրաբեռնվածությունը: Այնուհետև՝* «Մանկական հիմնարկների ցանցի հետագա լայն ծավալումը պայմաններ կստեղծի, որպեսզի ավելի ու ավելի մեծ թվով ընտանիքներ, իսկ երկրորդ տասնամյակում ամեն մի ընտանիք հնարավորություն ունենա, ըստ ցանկության, երեխաներին ու դեռահասներին ձրի պահել մանկական հիմնարկներում» *(ՍՄԿՊ Ծրագիր, 1961 թ., էջ 117)*:

*Մանկական հիմնարկների ցանցի հետագա լայն ծավալումն ունի երկակի բնույթ, այն մի կողմից հնարավորություն է տալիս աշխատունակ կանանց ներգրավել հասարակական արտադրության մեջ, իսկ մյուս կողմից՝ այդ ցանցի մեջ է ընդգրկում մեծ թվով կանանց:*

*Կանանց աշխատուժի ավելի լավ օգտագործման կարևոր և հիմնական ուղղություններից մեկը տնային և անձնական օժանդակ տնտեսություններից աշխատունակների ներգրավումն է հասարակական արտադրության մեջ: Լենինը նշել է, որ* «Նույնիսկ լիակատար իրավահավասարության ժամանակ, այնուամենայնիվ մնում է կնոջ այդ փաստական ճնշվածությունը, որովհետև նրա վրա են բարդում ամբողջ տնային տնտեսությունը: Այդ տնային տնտեսությունը մեծ մասամբ հանդիսանում է ամենից անարտադրողական, ամենից վայրենի և ամենից ծանր մի աշխատանք, որ կատարում է կինը»: *Կոմունիստական պարտիան գործնական միջոցառումներ է իրագործում տնային աշխատանքը թեթևացնելու նպատակով:*

*Հասարակական սննդի ցանցի ընդարձակումը ևս հնարավորություն է տալիս հազարավոր կանանց ազատվելու տնային աշխատանքից և ընդգրկվելու հասարակական հանրօգուտ աշխատանքում: Հասարակական սննդի զարգացումը Հայաստանում մեծ թափ ստացավ միայն սովետական իշխանության օրոք: Այսպես, եթե 1928 թ. ռեսպուբլիկայի հասարակական սննդի ցանցում հաշվվում էր 65 միավոր, 1937 թ. 295, ապա 1959 թ.՝ 1050 միավոր: Հետագայում հասարակական սննդի ցանցը կընդլայնվի այն չափով, որ լրիվ բավարարվի ժողովրդի պահանջն այդ ուղղությամբ:*

*Տնային տնտեսության մեջ աշխատանքը կրճատվում է նաև այն դեպքում, երբ լայնորեն օգտագործվում են կենցաղ սպասարկման մեքենաներ՝ սառնարաններ, լվացքի մեքենաներ, փոշեծծիչ և այլն, որոնց արտադրությունը լայն ծավալ է ստացել:*

*Այժմ, երբ իրագործվում է կոմունիստական հասարակարգի կառուցման ծրագիրը, կանայք հանդես են գալիս որպես ակտիվ ուժ կոմունիստական աշխատանքի համար ծավալված համաժողովրդական շարժման մեջ: Նրանք ցույց են տալիս հասարակական պարտքի կատարման, ազնիվ աշխատանքի լավագույն օրինակներ, նոր հասարակարգի մարդու բարոյական վեհ հատկություններ: Նրանք իրենց բոլոր ջանքերը գործադրում են, որպեսզի մեր հայրենիքն ավելի հզոր լինի, կյանքը մեր երկրում դառնա ավելի առատ ու երջանիկ:*

Զ. ԱԶԻԶՅԱՆ

---

# Գիտությունը և կյանքը

## ՌԱԴԻՈԱԿՏԻՎ ԻԶՈՏՈՊՆԵՐԻ ԴԵՐԸ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում մեծ, իրենց մասշտաբներով չտեսնված վիթխարի խնդիրներ են դրված մեր արդյունաբերության առջև:

Առաջիկա 20 տարում արդյունաբերական արտադրանքի թողարկումը կաvելանա ավելի քան 6 անգամ: Այս վիթխարի խնդրի լուծումը, արտադրության խոշորացումն անիմաստ է պատկերացնել առանց աշխատանքի արտադրողականության չեշտակի բարձրացման: Քսան տարվա ընթացքում աշխատանքի արտադրողականությունը կաճի մոտ 4—4,5 անգամ: Սակայն այդպիսի բարձր տեմպեր հնարավոր է ձեռք բերել միայն տեխնիկական բազայի զարգացման հիման վրա: Տեխնիկական առաջադիմության էությունը ո՛չ միայն նոր, ավելի կատարյալ և արդյունավետ մեքենաներ, սարքավորում, սարքեր, գործիքներ, հումք և նյութեր արտադրելն է, այլ նաև նոր, բարձր արտադրողական տեխնոլոգիայի, կոմպլեքսային մեքենայացման և լայն ավտոմատացման վրա հիմնըված արտադրության կազմակերպման առաջադիմական մեթոդների մշակումը:

Տեխնիկական առաջադիմության գործում սկսել են զգալի դեր խաղալ ռադիոակտիվ իզոտոպները: Դրանք կարող են լինել ինչպես բնական, այնպես էլ արհեստական: Ներկայումս հայտնի են բոլոր քիմիական էլեմենտների ռադիոակտիվ իզոտոպները:

Իզոտոպի ռադիոակտիվությունը բնորոշվում է կիսաքայքայման ժամանակաշրջանով, ($T^{1}/_{2}$) որը որոշ իզոտոպների համար կարող է լինել մի քանի վայրկյան, իսկ մյուս իզոտոպների համար՝ տասնյակ և հարյուրավոր միլիոն տարիներ:

Բնության մեջ գոյություն ունեն մոտ 50 բնական ռադիոակտիվ իզոտոպներ: Ծանր էլեմենտների բնական ռադիոակտիվ իզոտոպները մտնում են այն ռադիոակտիվ ընտանիքների կազմի մեջ, որոնք սկիզբ են առնում թորիումի ($Th^{232}$) և ուրանի ($U^{235}$ և $U^{238}$) երկարակյաց իզոտոպներից:

Բնականներից բացի արդեն հայտնի են մոտ 1000 ռադիոակտիվ իզոտոպներ, որոնք ստացվել են արհեստական եղանակով, միջուկային ռեակցիաների օգնությամբ:

Ռադիոակտիվ իզոտոպները լայնորեն կիրառվում են գիտական և տեխնիկական հետազոտություններում, արդյունաբերության, գյուղատնտեսության, բժշկության մեջ: Ամենից ավելի լայնորեն կիրառվում են այն ռադիոակտիվ իզոտոպները, որոնց կիսաքայքայման ժամանակաշրջանն այնքան էլ փոքր չէ և որոնք անպիսի ճառագայթում ունեն, որը թույլ է տալիս հեշտությամբ գրանցել քայքայման առանձին ակտերը:

Պրակտիկայում մեծ մասամբ կիրառվում են ածխածնի ($C^{14}$), նատրիումի ($Na^{22}$), ազոտի ($N^{24}$), ֆոսֆորի ($P^{32}$), կոբալտի ($Co^{60}$), պղնձի ($Cu^{64}$), ցինկի ($Zn^{65}$), ստրոնցիումի ($Sr^{90}$), յոդի ($J^{134}$), պոլոնիումի ($Po^{210}$) և այլ էլեմենտների իզոտոպները:

Մեծ քանակությամբ ռադիոակտիվ իզոտոպներ ստանալու համար սովորաբար օգտագործում են ատոմային միջուկների բաժանման շղթայական ռեակցիան, նեյտրոնի արգելակման կամ ճետման ռեակցիաները և դեյտրոն-

ների ու $\alpha$ մասնիկների ներգործությամբ իրականացվող ռեակցիաները: Մի-
ջուկային ռեակտորները մեծ քանակությամբ ռադիոակտիվ իզոտոպներ ստա-
նալու ամենահարմար և էժան աղբյուր են, որտեղ ուրանի միջուկի բաժանման
հետևանքով գոյանում են իրար խառնված շատ էլեմենտների իզոտոպներ:
Հետագայում, ռեակտորից հեռացնելուց հետո, դրանք բաժանվում են
քիմիական ճանապարհով: Մեծ քանակությամբ և ամենաբազմազան ռադիո-
ակտիվ նյութերի առկայությունը հնարավորություն է տալիս դրանք լայնորեն
կիրառելու գիտության, տեխնիկայի, բժշկության և այլ բնագավառներում:
Ռադիոակտիվ իզոտոպների ճառագայթների թափանցունակությունն օգ-
տագործվում է ինչպես զանազան հետազոտությունների, այնպես էլ արտա-
դրական բազմազան պրոցեսների վերահսկման ու կարգավորման համար:
Տարբեր նյութերի հետ միջուկային ճառագայթումների ունեցած փոխներ-
գործության առանձնահատկությունների հիման վրա մի շարք նոր ուղղություն-
ներ են ստեղծվել չափիչ տեխնիկայի, քիմիայի, կենսաբանության և այլ բնա-
գավառներում:
Այսպես, օրինակ, չափիչ տեխնիկայում օգտագործվում է նյութի թափանց-
ման աստիճանի, ալֆա, բետա և գամմա ճառագայթումների կլանման ու ցր-
ման, նեյտրոնների դանդաղման կանխումը հետազոտվող նյութի պարամետ-
րերից (խտությունից, քիմիական բաղադրությունից, հաստությունից, ջերմաս-
տիճանից, տեղափոխման արագությունից, խոնավությունից և այլն):
Ռադիոակտիվ իզոտոպներով հարմարանքները հնարավորություն են տա-
լիս չափումներ կատարել ո՛չ միայն չափվող նյութի հետ սարքի անմիջական
կոնտակտ ստեղծելու միջոցով, այլև խողովակների, բաքերի ու զանազան տեխ-
նոլոգիական ապարատների մետաղյա հաստ պատերի միջով: Այս բոլորը լա-
վագույն ձևով համապատասխանում է մեր արդյունաբերության ժամանակակից
պահանջներին, որի համար բնորոշ են զանազան տեխնոլոգիական պրոցեսնե-
րի ընթացքի արագության, ճնշման ու ջերմաստիճանի խիստ բարձրացումը:
Երկրաչափական գործոնի, այն է՝ ճառագայթման աղբյուրի և նրա ընդու-
նիչի միջև եղած տարածության փոփոխության վրա են հիմնված լողանավոր
հավասարաչափերը, անմոմենտ տախոմետրերը, ռադիոակտիվ կշեռքները և
փոքր տեղաշարժեր ու թրթռումներ ունեցող զանազան ավիչներ:
Ճառագայթումների կլանման ու ցրման փոփոխության վրա են հիմնված
հաստաչափերը, հեղուկի ապարախյուսի խտաչափերը, հոսքում կոնվեյերի վրա
շինվածքների հաշվիչները և այլն:
Ճառագայթման իոնացման և գոյացած իոնների վերամիակցման փոփո-
խության վրա են հիմնված բացարձակ ճնշման մանոմետրերը, գազի հոսքի
արագության չափիչները և այլն:
Գամմա-ճառագայթման բարձր թափանցունակության հատկությունը
հնարավորություն է տալիս հայտաբերել շինվածքների ներքին արատները այն-
պիսի խորության վրա, որոնք անմատչելի են ռենտգենյան ճառագայթների հա-
մար:
Արտացույցի իոնիզացիոն մեթոդների կիրառումը թույլ է տվել կատարել
արտադրանքի հոսքային վերահսկողություն՝ եռակցված կարանների, մեխա-
նիզմների ճիշտ հավաքման նկատմամբ և այլն:
Տեխնոլոգիական պրոցեսների վերահսկման ու կարգավորման ժամանակ
ռադիոակտիվ իզոտոպների օգտագործումը հնարավորություն է տվել ստեղծե-
լու պարզ կառուցվածք ունեցող մի ամբողջ շարք դյուրակիր սարքեր, որոնք
կարելի է օգտագործել ցանկացած պայմաններում, գործարաններում և դաշ-
տային պայմաններում: Արտադրանքի որակին ռադիոակտիվ իզոտոպների մի-
ջոցով վերահսկելու մեթոդները չափազանց արդյունավետ և շատ դեպքերում
անփոխարինելի են:
Ռադիոակտիվ իզոտոպները և միջուկային ճառագայթումները գնալով
ավելի լայնորեն են արմատավորվում արդյունաբերության տարբեր ճյուղերում:
Դրանց կիրառումը թույլ է տալիս նվազագույն կապիտալ ծախսումներով տըն-
տեսական ավելի մեծ արդյունք ձեռք բերել: Արտադրական պրոցեսների վե-



րահսկման և կարգավորման ավտոմատացման ռադիոակտիվ միջոցների բարձր
արդյունավետությունը պայմանավորված է նրանով, որ դրանք նախնական
աննշան ծախս են պահանջում, իսկ ընթացիկ ծախսերի ժամանակ մեծ տնտե-
սում են տալիս: Դրանք ձեռք են բերվում.
— երբ մշակման արագության բարձրացմամբ և պարապուրդների վերաց-
մամբ բարձրանում է մեքենաների ու սարքավորման արտադրողականությունը.
— արտադրանքի թողարկման ավելացման՝ արտադրական ցիկլի սար-
քավորման աշխատանքի օպտիմալ ռեժիմներին անցնելու տևողության կրճատ-
ման և տեխնոլոգիական պրոցեսների բարելավման դեպքում.
— սպասարկող անձնակազմի կրճատման դեպքում.
— պատրաստի արտադրանքի և կիսաֆաբրիկատների որակի բարձրաց-
ման, արտադրական խոտանի նվազեցման դեպքում.
— արտադրանքի մեկ միավորին ընկնող հումքի և նյութերի ծախսման
նվազեցման դեպքում.
— վթարների խիստ կրճատման և դրանց պատճառած նյութական կո-
րուստների դեպքում.
— աշխատանքի պայմանների բարելավման և հեշտացման դեպքում:
Այս բոլորը նվազեցնում են արտադրանքի մեկ միավորին ընկնող հասա-
րակական աշխատանքի ծախսումները: Հասարակական աշխատանքի ծախ-
սումների նվազեցումը տեղի է ունենում ո՛չ միայն ռադիոակտիվ իզոտոպներ
և միջուկային ճառագայթումներ օգտագործող ձեռնարկություններում, այլև
դրանց արտադրանքը սպառող ձեռնարկություններում:
Տեխնիկայում ռադիոակտիվ իզոտոպների և միջուկային ճառագայթում-
ների կիրառումը ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու
այն կարևոր ուղղություններից մեկն է, որն այժմ արդեն զգալի տնտեսական
էֆեկտ է տալիս: ՍՍՌՄ ԳԱ էկոնոմիկայի ինստիտուտի տվյալների համաձայն
այդ էֆեկտը արդյունաբերության մեջ 1960 թվականին կազմել է մոտ 20 մլն.
ռուբլի, չնայած արտադրական նպատակներով ռադիոակտիվ իզոտոպներ և
միջուկային ճառագայթումներ օգտագործող ձեռնարկությունների թիվը չէր
անցնում արդյունաբերական ձեռնարկությունների ընդհանուր թվի 2 տոկոսից:
Արտադրական պրոցեսների ավտոմատացման և վերահսկման ռադիոակ-
տիվ միջոցները կիրառվում են ո՛չ միայն հատուկ պատրաստված ագրեգատա-
յին ավտոմատ հաստոցներում, այլև սովորական հաստոցներում: Այս հան-
գամանքը ժողովրդատնտեսական վիթխարի նշանակություն ունի, քանի որ գո-
յություն ունեցող հաստոցների պարկը մոդեռնացման միջոցով կարելի է դարձ-
նել ավտոմատացված: Այսպիսի մոդեռնացումը ձեռնարկությունների վերա-
կառուցման և տեխնոլոգիական ռացիոնալ ռեժիմի արմատավորման հետ մեկ-
տեղ հնարավորություն կտա ինտենսիվացնելու արտադրությունը, բարձրացնե-
լու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու արտադրանքի ինքնար-
ժեքը: Արդյունաբերության մեջ ռադիոակտիվ իզոտոպների և միջուկային ճա-
ռագայթումների արմատավորումը հնարավորություն կտա ռեսպուբլիկայի ամ-
բողջ արդյունաբերության արտադրանքի ավելացման խնդիրը լուծել զգալի չա-
փով պակաս կապիտալ ներդրումներով, քան նոր ձեռնարկությունների կա-
ռուցման դեպքում:
Սակայն այժմ ոչ բոլոր տեղերում է, որ ռադիոակտիվ իզոտոպներն ու մի-
ջուկային ճառագայթման աղբյուրներն արժանի տարածում են գտել: Որպես
արդյունաբերության մեջ իզոտոպների կիրառման մասշտաբները պարզելու
դրական փորձ պետք է նշել Լատվիական և Էստոնական ՍՍՌ ժողտնտխորհնե-
րի աշխատանքը: Լատվիայում, Էստոնիայում ստեղծվել են հատուկ հանձնա-
ժողովներ, որոնք հետազոտում են ձեռնարկությունները՝ ավտոմատացման մի-
ջոցների և ռադիոակտիվ իզոտոպների պահանջը որոշելու և դրանց արմատա-
վորման պլանները կազմելու համար: Արդյունաբերության և գիտության աշ-
խատողներից կազմված այդ հանձնաժողովները նշանակալի չափով ակտի-
վացրել են ավտոմատացման և վերահսկման նորագույն, արդյունավետ մի-
ջոցների արմատավորման աշխատանքը, գործնական մեծ օգնություն են ցույց

տվել և տալիս են արտադրության ավտոմատացման մասշտաբներն ընդարձակելու և դրա տնտեսական արդյունավետությունը պարզելու համար:

Լատվիայի և Էստոնիայի հանձնաժողովների աշխատանքի փորձը պետք է ամեն կերպ աջակցություն գտնի և տարածվի մեր ռեսպուբլիկայում ռադիոակտիվ իզոտոպների արմատավորման հեռանկարային պլանը կազմելիս:

Սակայն պետք է նշել, որ ինչպես մեզ մոտ՝ ռեսպուբլիկայում, այնպես էլ ողջ Միությունում, դեռևս թույլ է արդյունաբերության մեջ ռադիոակտիվ իզոտոպների արմատավորման աշխատանքը: Հաճախ, տնտեսական շատ ղեկավարներ չգիտեն, թե իրենք ինչպիսի օգուտներ կստանան արտադրության տարբեր բնագավառներում ռադիոակտիվ իզոտոպների և միջուկային ճառագայթումների արմատավորումից, ինչպիսին է դրա ռեալ տնտեսական արդյունավետությունը և այլն. այդ, անշուշտ խիստ ազդում է արդյունաբերության այս կամ այն բնագավառում ռադիոակտիվ իզոտոպների արմատավորման վրա:

Ինչպես միութենական, այնպես էլ ռեսպուբլիկական նախագծային կազմակերպությունները չեն նախատեսում ռադիոակտիվ իզոտոպների օգտագործումը ինչպես վերակառուցվող ձեռնարկությունների, այնպես էլ նոր արդյունաբերական ձեռնարկությունների նախագծերում:

Ներկայումս մեր ռեսպուբլիկայում ստեղծվում է ժողտնտխորհի իզոտոպների բազային լաբորատորիա, որը որոշ չափով հնարավորություն կտա վերացնելու մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ ռադիոակտիվ իզոտոպների և միջուկային ճառագայթման աղբյուրների օգտագործման ասպարեզում եղած թերությունները:

Իզոտոպների բազային լաբորատորիայի հիմնական խնդիրներն են՝ ժողտնտխորհի ձեռնարկություններում արմատավորել այնպիսի մշակված պրոցեսներ, մեթոդներ, տեղակայումներ և ապարատուրաներ, որոնք հիմնված են ռադիոակտիվ իզոտոպների և միջուկային ճառագայթումների օգտագործման վրա: Լաբորատորիան կկոորդինացնի ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում ռադիոակտիվ իզոտոպների և միջուկային ճառագայթումների կիրառման բոլոր աշխատանքները, մեթոդական ղեկավարություն ցույց կտա և կվերահսկի այդ ուղղությամբ ձեռնարկված միջոցների իրականացմանը:

Լաբորատորիան կկատարի այնպիսի կոնստրուկտորական և էքսպերիմենտալ աշխատանքներ, որոնց նպատակն է մշակել նոր պրոցեսներ ու սարքեր արդյունաբերական ձեռնարկությունների համար, ստեղծել սարքերի փորձնական նմուշներ և կազմել դրանց մոնտաժման և արդյունաբերական փորձարկման սխեմաները:

Սրանով բնավ չի ավարտվում այն աշխատանքների ցանկը, որոնցով զբաղվելու է ժողտնտխորհի իզոտոպների բազային լաբորատորիան, որը կհանդիսանա մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ ռադիոակտիվ իզոտոպների և միջուկային ճառագայթումների արմատավորման առաջատար, կարևորագույն գիտական օջախը:

Է. Մ. ՂԱԼՈՒՄՅԱՆ
Ժ. Ս. ՄԱԼԽԱՍՅԱՆ

---

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՍԵՄԻՆԱՐԱՎԱՐԸ



Համեստ ու հասարակ է ընկ. Կորյուն Խուդոյանի կենսագրությունը. 1942 թ. ավարտելով Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտը՝ նա աշխատանքի է ուղարկվում Ս. Մ. Կիրովի անվան գործարանը, որտեղ, կատարելով ինժեներական մի շարք պարտականություններ, մասնակցում է նաև իր գլխավորած ցեխի տեխնոլոգիական – կոնստրուկտորական հարցերի լուծմանը: Նա հետագայում աշխատանքի է ուղարկվում «Պոլիվինիլացետատ» գործարանը և 1958 թվականին նշանակվում է այդ գործարանի դիրեկտոր:

Այստեղ ընկ. Խուդոյանը հանդիպեց ավելի մեծ ծավալի աշխատանքների, որտեղ և առավել ցայտուն դրսևորվեցին նրա ունակությունները:

Մտքի և ժամանակի մեծ լարում է հարկավոր գործարանի առջև դրված խնդիրները լուծելու, հսկայական աշխատանքները գլխավորելու համար: Ծանրաբեռնված լինելով տնտեսական աշխատանքներով, գործարանի դիրեկտորը ժամանակ է գտնում զբաղվելու նաև պրոպագանդիստական աշխատանքով: Երրորդ տարին է, որ նա ղեկավարում է արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող 13 սեմինարից մեկը. Ընկ. Խուդոյանը պրոպագանդիստական աշխատանքը համարում է իր պարտականություններից մեկը: Դա նրան օգնում է մոտիկից ունկընդրելու սեմինարի մասնակիցների ստեղծագործական մտքին, ավելի հարստացնելու տնտեսագիտական իր գիտելիքները, այդպիսիք գործադրելով կոլեկտիվի առջև դրված խնդիրները հաջողությամբ կատարելու համար:

Պարապմունքի ժամանակ պարզ երևում է տեսական և պրակտիկ հարցերում յուրաքանչյուր ունկնդրի գիտելիքներն ի հայտ բերելու և արտադրությանը ծառայեցնելու՝ սեմինարավարի հմտությունը: Սեմինարին մասնակցում են գործարանի ցեխերի և բաժինների պետերը, ինժեներա – տեխնիկական աշխատողները՝ թվով 25 մարդ, որոնցից 14-ը կոմունիստներ են: Այստեղ չկան պարապմունքներից անհարգելի բացակայողներ: Մասնակիցներից յուրաքանչյուրն ունի իր գրառումները՝ մեծ ու փոքր կոնսպեկտներով կամ հարցադրումներով:

Պարապմունքների նկատմամբ ունկնդիրների ունեցած հետաքրքրասիրությունը բացատրվում է սեմինարների բովանդակությամբ: Նկատի ունենալով, որ նախորդ երկու տարիներին ունկընդիրներն արդեն ուսումնասիրել են արդյունաբերության էկոնոմիկայի հարցերը, նրանց ցանկությամբ ու մասնակցությամբ սեմինարավարը, ելակետ ընդունելով արդյունաբերության էկոնոմիկայի ծրագիրը, պարապմունքների համար մշակել է առանցքային մի քանի հարցեր: «Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը և գործարանի կոլեկտիվի մասնակցությունը այդ գործին» թեմայով առաջին սեմինար պարապմունքը ցույց տվեց, որ տեսական հարցերի վերաբերյալ ունկնդիրներն ունեն հարուստ գիտելիքներ: Նախագծային կոնստրուկտորական բաժնի պետ Հ. Մախլյանը, խոսելով կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում մեքենայացման և ավտոմատացման դերի մասին, այն կապել է քիմիական արդյունաբերության և, հատկապես, իրենց գործարանի արտա-

դրական պրոցեսների ավտոմատացման մի շարք խնդիրների հետ: Անելով ուշադրության արժանի առաջարկություններ՝ նույն սեմինարում ելույթ ունեցող պլանային բաժնի պետ Տ. Ռամմը, օգտագործելով մի շարք դիագրամաներ ու ցուցադրական նյութեր, խորամուխ է լինում քիմիական արդյունաբերության զարգացման և, հատկապես, գործարանի հեռանկարների մեջ: Գործարանի վերակառուցումը և ացետիլցելյուլոզի արտադրության կոմպլեքսի յուրացումը,— ասում է նա,— մեծ նշանակություն ունի ացետատային մետաքսաթելի և բարձրորակ պլաստմասսաների հումք արտադրելու համար: Անշուշտ, վերոհիշյալ կոմպլեքսը լրիվ շահագործման հանձնելու դեպքում գործարանը կարող է տարեկան արտադրել 15 հազար տոննա ացետիլցելյուլոզա, որի հումքի բազայի վրա կարող են աշխատել մետաքսաթելի հսկա կոմբինատներ:

Այնուհետև ինժեներ Ժ. Չեռնիկովան հանգամանորեն խոսել է պոլիվինիլային խեժերի, որակյալ պլաստմասսայի ստացման գործում հումքի պատրաստման համար գործարանի ապագա աշխատանքների և ունեցած հնարավորությունների մասին:

Երկու պարապմունք նվիրվել է ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի նյութերի ուսումնասիրությանը: Ունկնդիրները հիմնավոր հաշվարկումներ են արել գործարանի արտադրական ռեզերվների օգտագործման, առանձին ցեխերում արտադրանքի ինքնարժեքի իջեցման, գիտական և կոնստրուկտորական առաջարկությունների ներդրման վերաբերյալ:

Պարտիական-պետական միասնական վերահսկողություն սահմանելու մասին նոյեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան, ունկնդիր Ի. Տիշչենկոն հարց է բարձրացրել պարտիական կազմակերպության և դիրեկցիայի առջև՝ Լիսիչանսկ և Վլադիմիր քաղաքներից ստացված՝ ավելի քան 200 տոննա ցածրորակ քացախաթթուն ետ ուղարկել և այդ մասին տեղեկացնել վերոհիշյալ գործարանների պարտիական վերահսկողության կոմիտեներին աջակցող խմբերին:

Ունկնդիրներն ավելի հմուտ են դարձել տեսական ու գործնական խնդիրների կապը գտնելու, գործարանի և նույնիսկ առանձին ցեխերի տնտեսական գործունեությունը վերլուծելու ասպարեզում: Պարապմունքների ժամանակ բարձրացվում են շատ հարցեր, որոնք դրվում են գործարանի դիրեկցիայի, պարտիական կոմիտեի ու ցեխերի աշխատողների առջև: Այդ հարցերը ստանում են իրենց լուծումը, որը և մեծ օգուտ է բերում գործարանին:

Սեմինարի ունկնդիր, նատրիում ացետատի ցեխի պետ Ա. Գևորգյանը իր ելույթը նվիրելով արտադրանքի որակի բարձրացմանը, խոսել է իրենց ցեխի ցածրորակ արտադրանքի մասին, որը երկար ժամանակ չէր ընդունվում սպառողների կողմից: Այդ կապակցությամբ լուրջ խոսակցություն ծավալվեց արտադրանքի որակի բարձրացման ուղղությամբ եղած հնարավորությունների օգտագործման մասին: Այդ հարցի հետագա լուծման համար սեմինարավար Խուդոյանի խորհրդով գործին մասնակցեցին տեխնիկական բաժնի և տվյալ ցեխի աշխատողները: Նրանց ձեռնարկած կազմակերպչական տեխնիկական միջոցառումների շնորհիվ նորացվեց նատրիում-ացետատի ստացման տեխնոլոգիան, բարձրացավ արտադրանքի որակը և գործարանն ստացավ տնտեսական մեծ օգուտ: Պարապմունքներից մեկի ժամանակ սեմինարավարի պահանջով Գևորգյանը ունկնդիրներին ցուցադրեց իրենց ստացած արդեն լավորակ նատրիում ացետատը:

Սեմինարավար Խուդոյանը զգալի աշխատանք կատարեց գործարանի արտադրական, տնտեսական գործունեության վերլուծությանը նվիրված սեմինար պարապմունքի նախապատրաստության համար: Մինչև պարապմունքը առանձին ունկընդիրներ տարբեր հարցերով դիմում էին նրան. տեղի էին ունենում անհատական զրույցներ, մտքերի փոխանակություն, ճշտվում՛ էին կարծիքները: Պարապմունքի ընթացքում ունկնդիրները խոսում էին որոշակի հարցերի մասին. հստակ էին նրանց արտահայտած մտքերը, բովանդակալից:

Գործարանի արտադրական - տեխնիկական բաժնի ավագ ինժեներ Ա. Բաղալյանը, խոսելով արտադրական հզորությունների օգտագործման մասին, օրինակներ է բերում ձեռնարկությունից՝ նշելով, որ վերջին երկու տարում արտադրական հզորությունների մաքսիմալ և ռացիոնալ օգտագործման շնորհիվ գործարանն ստացավ զգալի տնտեսական օգուտ: Այսպես, վինիլացետատի ցեխի հզորությունը բարձրացնելու, պոլիվինիլքլորիդի ցեխի ապարատները մաքսիմալ օգտագործելու միջոցով վերջինիս հզորությունն ավելացավ 2 անգամ:

Վինիլացետատի ցեխում փոքր կարողության կոնտակտային ապարատը փոխարինվեց ավելի հզորով և արտադրական նույն տարածության վրա, առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների և սպասարկող անձնակազմի ավելացման, այդ ցեխի արտադրանքն ավելացավ 25 տոկոսով, որի շնորհիվ իջավ արտադրանքի ինքնարժեքը և գործարանի տարեկան օգուտները կազմեցին 70 հազար ռուբլի: Մեկ այլ ներդրումից գործարանը ստացավ 60 հազար ռուբլու օգուտ:



Տեխնիկական նման բարդ հարցերի լուծման գործին իր անմիջական մասնակցությունն ունի ընկ. Խուդոյանը:

1962 թ. ներդրվել են 400 ռացիոնալիզատորական առաջարկություն. ստացված պայմանական օգուտը կազմել է 512 հազար ռուբլի:

Գործարանում դեռևս կան արտադրանքի տեսակներ, որոնց ինքնարժեքը բարձր է պլանավորվածից: Այսպես, օրինակ, մեկ տոննա ացետալդեհիդ ստանալու համար, էթիլային սպիրտի ծախսը 1.680 կիլոգրամի փոխարեն կազմում է 1800 կիլոգրամ: Սեմինարի մասնակիցներ Դ. Մելիքյանը, Հ. Մախլյանը և սեմինարի այլ ունկնդիրներ ընկ. Խուդոյանի խորհրդով ստանձնեցին տեխնոլոգիական նոր ռեժիմ մշակելու պարտավորություն, որով նախատեսվում է մեկ տոննա ացետալդեհիդի համար էթիլային սպիրտի ծախսը հասցնել 1600 կիլոգրամի:

Վերլուծելով ձեռնարկության արտադրական ծրագրի կատարման ընթացքը՝ սեմինարի մասնակից, ինժեներ-պլանավիկ Ն. Սայադյանը խոսեց արտադրանքի նոմենկլատուրայի պլանավորման գծով ՀՍՍՌ Ժողտնտխորհի կողմից անհարկի փոփոխությունների մասին, նշելով, որ տնտեսապես հիմնավորված չէ վինիֆլեքսի արտադրության տարեսկզբին նախատեսված 600 տոննայի պլանը տարվա վերջին 500 տոննա դարձնելու և ընդհակառակը՝ պոլիվինիլացետատային էմուլսիայի արտադրությունը՝ տարվա սկզբին նախատեսված 1200 տոննայի դիմաց տարվա վերջում 1500 տոննայի հասցնելը:

Պարապմունքի ժամանակ խոսվեց քացախաթթվի արտադրության մասին. հետաքրքրական էին ունկնդիրների տնտեսագիտորեն հիմնավորված հաշվարկներն ու առաջարկությունները, որոնց կիրառումը նպաստավոր պայմաններ կստեղծի քացախաթթվի արտադրությունն ավելացնելու համար:

Պարապմունքներից մեկին սեմինարավար Խուդոյանը հրավիրեց գործարանի տրանսպորտի բաժնի պետ Մ. Դիլանյանին և ցեխի պետ Ա. Բարսեղյանին: Ունկնդիրներին նրանք պատմեցին գործարանի հասցեով ուղարկված վագոնների բեռնաթափման մասին: Վագոնների բեռնաթափումը կատարելով ցեխերից հեռու և տալով պարապուրդներ, տեղի են ունեցել նյութերի, բանվորական ուժի ավելորդ ծախսումներ, որը բացասաբար է անդրադարձել արտադրանքի ինքնարժեքի վրա:

Հաշվարկումներ անելով՝ պարապմունքի մասնակիցները Դիլանյանին և Բարսեղյանին ապացուցեցին, որ նրանց անտնտեսվարության հետևանքով գործարանը կրել է ոչ քիչ վնասներ:

Այդ գործը բարելավելու համար սեմինարավարի խորհրդով ընդունվեցին ունկնդիրների հավանությանն արժանացած տնտեսապես հիմնավորված կոնկրետ առաջարկություններ:

Բազմապիսի են հարցադրումները, սակայն շատ ավելի հետաքրքրական են առաջարկությունները ու դրանց լուծումը:

Բազմազբաղ է ընկ. Խուդոյանի օրը, նրան մենք հաճախ տեսնում ենք երիտասարդների շրջանում, նրանց հետ խորհրդակցելիս: Իր խորհուրդներով նա օգնում է երիտասարդությանը. Խուդոյանն ակտիվ մասնակցում է նաև պարտկոմիտեի գործունեությանը, որի անդամն է և ինքը:

Մարդկանց նկատմամբ հոգատար, ուշադիր վերաբերմունքը Խուդոյանի բնորոշ գծերից մեկն է: Նա այն ղեկավարներից է, որի մոտ բանվորների և աշխատանքի մյուս ընկերների խելացի առաջարկություններն իսկույն հավանության են արժանանում. նա գնում է ամեն մի ցեխ, զրուցում բանվորների հետ, մտքեր է փոխանակում, ունկնդրում նրանց: Համեստ ու քտնաջան է նրա աշխատանքային առօրյան: Նա վայելում է գործարանի աշխատողների համակրանքը: 1949 թվականից ի վեր Խուդոյանն ընտրվում է Երևանի քաղաքային սովետում: Այժմ էլ գործարանի աշխատողները նրան նորից ընտրեցին քաղսովետի դեպուտատ: Նա ՀԿԿ Կենտկոմի վերստուգիչ հանձնաժողովի անդամ է: «Չկա մեծ կամ փոքր գործ,— ասում է Խուդոյանը,— այն, ինչ ծառայում է հասարակությանը, կարևոր է և առաջնակարգ»: Իսկ երեկոները նա իր ժամանակի մի մասը նվիրում է ընթերցանությանը, կարդալով ո՛չ միայն տեխնիկական, այլ գեղարվեստական գրքեր: Նա համառորեն աշխատում է խորացնել իր տնտեսագիտական գիտելիքները:

Գործարանի արտադրական առանձին պրոցեսներում օգտագործվում են նաև ոչ հայրենական մեքենաներ, որոնց տեխնոլոգիային տիրապետելու նպատակով ընկ. Խուդոյանը ձեռնամուխ է եղել նաև ֆրանսերենի ուսումնասիրությանը: Ընկ. Խուդոյանը հոգատար հայր է, լավ քաղաքացի:

«Պոլիվինիլացետատ» գործարանի կոլեկտիվը երկրորդ տարին է ինչ պայքարում է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչմանն արժանանալու համար: Պայքարողների առաջին շարքերում է նաև գործարանի դիրեկտորը, անխոնջ պրոպագանդիստը, ազնիվ ու սկզբունքային քաղաքացին՝ Կորյուն Խուդոյանը:

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ [illegible]

# ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՄԱՄՈՒԼԻ ԱՍՊԵՏԸ

Նորից աքսոր... Դա արդեն երրորդ աքսորն էր: Ցարական ժանդարմերիային հաջողվել էր իմանալ, որ ձերբակալվածը կրկնակի դատապարտված է եղել աքսորի, բայց երկու տարի առաջ փախել է աքսորավայրից, վերադարձել Բաքու:

— Բավակա՛ն է, այս անգամ նա կդատապարտվի մի այնպիսի հեռավոր աքսորի, նրան կուղարկենք մի այնպիսի «Նարիմ», որտեղից նա երբեք չի վերադառնա,— վճռում են ցարական ժանդարմները:

Եվ դա այդպես էլ կլիներ, սակայն բախտի բերմամբ ձերբակալվածը Բայիլովի բանտում մի տարի փակված մնալով՝ ծանր հիվանդանում է և Նարիմի փոխարեն նրան աքսորում են Աստրախան: 1910 թվականին էր այդ: Վոլգայի դելտայի ափին ընկած նախկին Հաշտարխանը դեռ աքսորավայր էր, հետամնաց, կիսաասիական մի քաղաք:



Բաքվից Աստրախան աքսորված ռևոլյուցիոներ-գրաշարը բոլշևիկյան պարտիայի հնագույն ակտիվ գործիչ Աշոտ Խումարյանն էր:

Աքսորը նորություն չէր հմուտ և նվիրված ռևոլյուցիոներ մարտիկի համար: Նա իր տեղը կգտնի և Աստրախանում: Այնտեղ էլ կարող է աշխատել որպես գրաշար, այնտեղ էլ կան բանվորներ և, անշուշտ, կլինի սոցիալ-դեմոկրատական կազմակերպություն և, վերջապես, այնտեղից էլ նա կարող է աշխատակցել Թիֆլիսի և Բաքվի բոլշևիկյան թերթերին ու հանդեսներին: Նա դեռ 35 տարեկան էր, մանկությունից ասես դժվարության ու զրկանքների սովոր բանվորը կարող էր կազմակերպել իր կյանքը նաև Աստրախանի պես քաղաքում:

Նման մտորումներով Աշոտ Խումարյանը հասնում է աքսորավայր: Այդ տարիներին Աստրախանում էին աքսորված նաև Ստեփան Շահումյանը (1912—14 թթ.)՝ Խումարյանի սրտակից և ամենասիրելի ընկերը, ինչպես նաև հայտնի բոլշևիկ Շալվա Էլիավան, Ներսես Ներսիսյանը, Նարիման Նարիմանովը և ուրիշներ:

Աշոտ Խումարյանի կյանքում սկսվում է մի նոր, բեղմնավոր շրջան: Աստրախանը դառնում է նրա երկրորդ հայրենիքը: Մեծ եռանդով նա շարունակում է իր ռևոլյուցիոն ընդհատակյա գործունեությունը և, երբ 1917 թվականին բռնկվում է փետրվարյան ռևոլյուցիան, Խումարյանը Աստրախանի բանվորական սովետում միակ բոլշևիկ դեպուտատն է լինում: Նրան վիճակվում է ռևոլյուցիոն խոշոր աշխատանք կատարել Աստրախանում, հատկապես 1917—20 թվականներին:

Թերթելով այդ օրերի արխիվային էջերը, համոզվում ենք, որ Խումարյանը ո՛չ միայն Աստրախանի բոլշևիկյան ընդհատակի աչքի ընկնող մասնակիցն է եղել, այլև Աստրախանի բոլշևիկյան կազմակերպության հիմնադիրներից մեկը: Աստրախանի ՌՍԴԲՊ-ի բոլշևիկյան կոմիտեի կազմում առաջին անունների թվում մենք կարդում ենք Խումարյանի անունը:

Խումարյանի հեղինակությունը տեղի բանվորության շարքերում այնքան բարձր է եղել, որ 1918 թվականին, Աստրախան երկրամասում սովետական իշխանության հաստատումից հետո, նա ընտրվել է այդ երկրամասի Ժողովրդական կոմի-



սարների սովետի նախագահ, ներքին գործերի կոմիսար: Այդ օրերին նա Լենինգրադում էր, պարտիայի կենտկոմի կարգադրությամբ ուղարկվել էր «Պրավդայի» խմբագրությունում աշխատելու, բայց Աստրախանի բոլշևիկները խնդրում են նրան վերադառնալ. այստեղ նրա ներկայությունն ավելի անհրաժեշտ էր: Եվ նա վերադառնում է ու մասնակցում երկրամասում ծավալված քաղաքացիական մարտերին, որոնք պսակվեցին սովետական իշխանության վերջնական հաղթանակով:

***

Աշոտ Խումարյանի հետ ես ծանոթացա 1918 թվականի նոյեմբերին, երբ Մոսկվայից գործուղվել էի Աստրախան:

Թե որքան ծանր էր դրությունն այդ օրերին ռազմաճակատներում և, մասնավորապես, Աստրախանում, հայտնի է ամենքիս:

Այդ օրերին էլ, երբ Աստրախանը արյունահեղ մարտերի սեղմող օղակում հերոսական ջանքեր էր թափում իր գոյությունը պահպանելու համար, ես ծանոթացա Աստրախանի նահանգային գործադիր կոմիտեի նախագահի տեղակալ և ներքին գործերի կոմիսար Աշոտ Խումարյանի հետ:

Առաջին իսկ հանդիպումից կզգացի, որ նա ընդհանուր դրությանը տեղյակ, փորձառու և կազմակերպված ընկեր է. լուրջ էր, կսպված շարժուձևերով: Մեծ մասամբ մռայլադեմ էր նա: Կլորերես, քիչ ուռուցիկ կոպերով, վերև ծգված թավ հոնքերով, խիտ մազերով, բեղ ու մորուքով, միջահասակ, լիք-լիք, ամրակազմ տղամարդ էր նա, մի խոսքով մինչռևոլյուցիոն շրջանի տիպիկ հայ մտավորականի, կամ, ինչպես կասեինք այն ժամանակ, «իդեալիստի» ազդու դեմք — այդպիսին է մնացել հիշողությանս մեջ Խումարյանը քաղաքացիական կռիվների տարիներից: Եթե չլիներ նրա դեմքի նկատելի մռայլությունը (ինչպես երևում է, ինքն էլ է իրեն մռայլ համարել. այդ մասին է վկայում նրա «Ա. Մռայլյան» պսևդոնիմը), կարելի էր նրան գեղեցիկ համարել, համենայն դեպս այն ուշագրավ էր և տպավորիչ: Կարող եմ ասել, որ հետագայում ևս, տարիներ անց, նա նույն Աստրախանի Խումարյանն էր, առույգ, ամրակազմ, միայն մորուքի և մազերի մեջ արծաթե թելեր էին ավելացել:

Խումարյանի հետ ունեցածս հանդիպումների ընթացքում համոզվեցի, որ նրա «մռայլությունը» միայն արտաքին էր. շատ մարդասեր, մատչելի ընկեր էր նա, թեպետ նրա խոսելաձևը թողնում էր այն տպավորությունը, կարծես թե միշտ հուզված էր ու բարկացած. խոսում էր արագ, բառերի կեսը, ինչպես ասում են «կուլ տալով», և այդ պատճառով էլ երբեմն դժվարությամբ էր հասկացվում նրա ասածը: Աշխատանքում շատ խստապահանջ էր, հարկ եղած դեպքում խիստ, կրքոտ ու շուտ բռնկվող:

Նույն եռանդուն, անխոնջ աշխատողն էր նա նաև Թիֆլիսում, երբ սովետների կարմիր դրոշը պարզվեց այնտեղ: 1921 թվականին Խումարյանը վերադարձավ իր ծննդավայրը՝ Թիֆլիս ու, որպես Անդրկովկասի երկրային օրգանների ղեկավար աշխատող, մնաց այնտեղ մինչև իր մահը՝ 1937 թվականի վերջերը, դառնալով անձի պաշտամունքի զոհ:

Աշոտ (Ալեքսանդր) Քրիստափորի (Խաչատուրի) Խումարյանը ծնվել է 1875 թ., Թիֆլիսում, արհեստավորի ընտանիքում: Հայ իրականության մեջ նա առաջին բանվոր-ռևոլյուցիոներներից մեկն է եղել և, կարելի է ասել, բանվորական հայ մամուլի առաջին խմբագիրը:

***

Դեռ իննսունական թվականներից, նույնիսկ ավելի շուտ, երբ նա Ներսիսյան դպրոցի երրորդ դասարանի աշակերտ էր, նրա պատանեկան սիրտն այրում էր մի պայծառ փափագ, այն է՝ պայքարել սուլթանի և ռուս ցարի դեմ հանուն հայ ժողովրդի ազատագրման և, որպեսզի այդ պայքարը հաղթանակի, մի խումբ կազմակերպել, իսկ հետո էլ գուցե հաջողվի, օ՜, նվիրական իղձ, մի թերթ հրատարակել ու «խմբագիր» դառնալ:

Աղքատ արհեստավորի, Հավլաբարի կողմերում չուստ կարող խեչոյի տղան, միևնույն է, չէր կարող Ներսիսյան դպրոցում աշակերտել մինչև վերջ, ուստի նա բարվոք է համարում թողնել դպրոցը և գնալ բանվորություն անելու մեխանիկական մի որևէ արհեստանոցում և այդ միջոցով հնարավորություն ձեռք բերել իր իղձը կատարելու:

3—4 տարի մեխանիկական արհեստանոցում որպես բանվոր աշխատելուց հետո նրան թվում է, որ ժամանակն է արդեն իր նման արհեստավոր-բանվորների հետ մի խմբակ կազմակերպել և «գործի» անցնել, հետևելով, մոտավորապես, Ռուսաստանում գործող «Նարոդնայա Վոլյա» գաղտնի պարտիայի օրինակին: Պետք է այդ պարտիայի օրինակով նաև թերթ ունենալ: Բայց ինչպե՞ս... գրաշարություն սովորել և սեփական ուժերով հրատարակել այն:

Վճռված է: Խումարյանը թողնում է մեխանիկական արհեստանոցը (ինքը կարող էր արդեն նույնիսկ տառեր ձուլել) և գնում Թիֆլիսի տպարաններից մեկում գրաշարություն սովորելու:

Մի օր էլ, 1892 թվականին, երբ նա պատահում է իր նախկին դասընկերոջը՝ Ներսիսյան դպրոցի աշակերտ Սերգո Խանոյանին, իր նման այն օրերի ազգային շարժման և, ընդհանրապես,

էր հիշում իր բովանդակալից ընդհատակյա գործունեությունը, կարծես անհարմար էր զգում խոսել այդ մասին, և եթե պատրաստվում էր գրել իր հիշողությունները, ապա միայն «մեր պարտիական օրգանների պահանջով»: Համեստ էր Խումարյանը, վերծ ամեն տեսակ բյուրոկրատական մեծամըտությունից, բոլորի հետ հավասար, բոլորին մատչելի, թեպետև անժպիտ, ոչ մի ավելորդ խոստում չանող և տված խոստմանը միշտ հավատարիմ:

Չի կարելի չհիշել Խումարյանի ջերմ հոդվածները նվիրված Ստեփան Շահումյանի, Սուրեն Սպանդարյանի և մի շարք այլ ականավոր գործիչների հիշատակին:

Անսահման մեծ է Խումարյանի տածած հարգանքը և սերը դեպի Ստեփան Շահումյանը: Ինչպիսի՜ խոր վշտալից տողեր է գրել Աշոտ Խումարյանը Շահումյանի ողբերգական մահվան առթիվ, Աստրախանի «Կարմիր բանվորում»: Ահա մի փոքրիկ հատված նրա «Անմոռաց դեմք» հոդվածից, գրված Շահումյանի մահվան 7-րդ տարեդարձին.

«Նրա հողաթումբը միշտ էլ թարմ է, նրա հիշատակը միշտ էլ վառ՝ նրա հին պինակիցների համար: ...Մեկ՝ հին բոլշևիկներիս համար պարզ է. որ Ստեփանի տեղը մեր պատմության մեջ բաց է մնացած: Նրա դերն ու գործը պրոլետարական հեղափոխության մեջ ոչ մի հայ ընկեր չի կատարի: Հազարավոր նոր ընկերներ են եկել, հազարավոր կրկին գալու են, սակայն Ստեփանը եզակի է» (ընդգծումը մերն է—Ա. Վ.):

***

Խումարյանն իր ռևոլյուցիոն գործունեությամբ անխզելիորեն շաղկապված է մեր պարտիայի հեռոսական պայքարի պատմությանը, Անդրկովկասի, հետևապես և համառուսաստանյան բոլշևիկյան մամուլի պատմությանը: Այդ պատմության ոչ շրջանն էլ վերցնենք, կհանդիպենք Աշոտ Խումարյանին:

Նրա ձայնը լսելի է եղել, որպես սկզբունքային և ազնիվ հրապարակախոսի ձայն: Մրրկաբեր—Մարս—Ա. Մռայլյան—Ա. Մենավոր — ահա Ա. Խումարյանի ստորագրությունները, որ դրված են նրա բազմաթիվ հոդվածների տակ:

Բազմավաստակ, բոլոր դեպքերում սկզբունքորեն անհաշտ և աննկուն, պայքարում միշտ խիզախ — այդպիսին է եղել Խումարյանը՝ բոլշեվիկյան ընդհատակյա կոհորտայի ցայտուն վետերաններից մեկը, ռևոլյուցիոն անլեգալ մամուլի աննկուն ասպետը:

**ԱԴ. ՎԱՐԴԱՆՅԱՆ**

---

### ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԾԱՆՐ ՎԻՃԱԿԸ ԼԱՏԻՆԱԿԱՆ ԱՄԵՐԻԿԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

«Նյու-Յորք Հերալդ տրիբյուն» թերթի վկայությամբ, Լատինական Ամերիկայի երկրների միջին բնակիչն իր ամբողջ կյանքում դպրոց է հաճախում 27 ամսից էլ պակաս. 15 տարեկանից բարձր տասը մարդուց 4-ը կարդալ չգիտե: Կոլումբիայում, Գվատեմալայում, Նիկարագուայում, Գայիրիում անգրագետների թիվը կազմում է այդ երկրների բնակչության կեսից ավելին: Լատինական Ամերիկայի երկրներում դպրոցների ուսուցիչների 40 տոկոսը չունեն անհրաժեշտ դիպլոմ: Ցածր դպրոցական տարիքի (7—14 տարեկան) 38 միլիոն երեխաներից դպրոցներում գրանցված են միայն 26 միլիոնը: «Վիսիոն» ժուռնալի տըվյալներով տարրական դպրոցն ավարտում են միայն ընդունվածների 11,5 տոկոսը:

---

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԵՐԿՈՒ ՊԱՏՄԱՎԵՊԻ ՄԱՍԻՆ

Հայաստանի աշխատավորությունը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պայքարի ու հաղթանակների փառապանծ ուղի է անցել: Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար մղվող մարտերում իր ակտիվ մասնակցությունն է ունեցել նաև երիտասարդությունը: Մեզանում որոշակի աշխատանք է կատարվել Հայաստանի լենինյան կոմերիտմիության պատմությունը գիտականորեն շարադրելու ասպարեզում: Բայց այդ ուղղությամբ դեռևս քիչ բան է արել գեղարվեստական գրականությունը: Լիստի խրախուսանքի է արժանի Ռաֆայել Աթայանի՝ մոտ չորս տարի առաջ հրատարակված «Զարթոնք» պատմավեպը: Վեպում ընդգրկված հարցերը վերաբերում են 1915—1917 թվականների բարդ, ներքին հակասություններով լի, ողբերգական և, միաժամանակ, իրոք որ հայ ժողովրդի զարթոնքը խորհրդանշող դարաշրջանին: «Զարթոնքի» իսկական հերոսներն են Հայաստանի կոմերիտմիության կազմակերպիչները՝ Ղուկաս Ղուկասյանը, Արմենակ Բուդաղյանը, կուսակցական ապագա խոշոր գործիչ Աղասի Խանջյանը և ուրիշներ: Վեպում իբրև գործող անձինք հանդես են գալիս հայ աշխատավորության և մտավորականության տարբեր հոսանքների հիշատակելի և պատմության մեջ հիշատակելի մի շարք անձնավորություններ: Նրանց ապրումների, մտքերի, համոզումների բախումը տրվում է պատմական ֆոնի վրա: Հեղինակը ջանք չի խնայում տպավորիչ պատկերելու դեռևս նոր ձևավորվող և գիտական աշխարհայացք ձեռք բերելու ճանապարհին գտնվող պատանի հերոսների ներքնաշխարհը, նրանց առնականացման դիալեկտիկան, յուրաքանչյուրի ապրելակերպի, գործելակերպի և խառնվածքի առանձնահատկությունները:

«Զարթոնք»-ը Ռ. Աթայանի առաջին մեծ կըտավի գեղարվեստական երկն էր: Մեր գրական և երիտասարդական մամուլը, մեզ համար անհասկանալի պատճառով, այդ վեպը լուրջ ուշադրության չի արժանացրել: Ավելին, եղան քըննադատներ, որոնք զանազան առիթներով, ընդհանրապես սահուն լեզվով գրված այդ պատմավեպի մի քանի լեզվական թերություններ և ոչ այնքան հաջող առանձին միջադեպեր օրինակ բերելով, ստվերի տակ թողին «Զարթոնք»-ի քաղաքական և դաստիարակչական անհերքելի արժանիքները:

Պետք է ասենք, որ հեղինակին քիչ բանով օգնող, ֆրագմենտային բնույթի այդ դիտողությունները նրան չհուսալքեցին: Հեղինակը համառորեն շարունակեց իր կարևոր և շնորհակալ գործը և մի քանի տարի անց լույս տեսավ նրա «Սպարտակ» վեպը, որն ավելի տքնաջան ստեղծագործական աշխատանքի արդյունք է:

Աթայանի այս նոր վեպը՝ «Սպարտակ»-ը, նշանակալի չափով զերծ է «Զարթոնք»-ում տեղ գտած թերություններից, որոնցից են՝ առանձին գլուխների ակնարկային բնույթը, հոգեբանական մի քանի անհամոզիչ վերլուծությունները, սյուժեի մասնակի ցրվածությունը, հռետորայնության և նատուրալիզմի տարրերը, առանձին, թեպետև կարևոր միջադեպերի՝ սյուժեի հետ քիչ առնչելը և այլն:

«Սպարտակ» պատմավեպը հիմնականում նըվիրված է այն հերոսների կյանքին ու գործունեությանը, որոնք «Զարթոնք»-ից արդեն ծանոթ են ընթերցողին:

«Զարթոնք»-ում տրված են գլխավոր հերոսների գաղափարական խմորումը, նրանց հեղափոխական աշխարհայացքի մարմնավորումն ու նախնական ձևավորումը: «Սպարտակ»-ում պատկերված է նույն հերոսների կոմունիստական գաղափարների վերջնական կազմավորման հետաքրքրական պրոցեսը: Այստեղ հանդիպում ենք Հայաստանի առաջին կոմերիտականներ Ղուկաս Ղուկասյանի, Արմենակ Բուդաղյանի, Աղասի Խանջյանի, Աղավնի Բուդումյանի և գաղափարապես արդեն հասունացած ու քաղաքական պայքարի թեժ մարտերում իրենց ակտիվ ու անձնազոհ մասնակցությամբ աչքի ընկած ուրիշ հերոսների: Ռ. Աթայանի վեպի այդ գործող անձինք կոնկրետ անձնավորություններ են իրենց մարդկային բոլոր կողմերով ու առանձնահատ-

հատականությանը, իր աշխարհայացքով քիչ է տարբերվում Ռուշանյաններից և Մսերյաններից։ Դեռ ավելին, գուցե և, անկախ իր կամքից, այն ժամանակվա Տիրացյանին Ռ. Աթայանը օժտել է Դոն Քիշոտյան առանձին գծերով։

«Զարթոնք»-ի հեղինակի նվաճումը պետք է համարել այն, որ իր վերոհիշյալ և նրանց կարգին պատկանող հերոսներին չի թողնում ստատիկ վիճակում։ Հենց սկզբից ընթերցողը նկատում է նրանց մեջ այնպիսի՝ իրենց խիստ սակավ դրսևորող գծեր, որոնք դեպքերի հետագա ընթացքում աճելով ու որակ կազմելով պետք է պայմանավորեին աշխարհայացքի այն արմատական բեկումը, որ ապրեցին նրանցից ոմանք սովետական իշխանության տարիներին։

Հեղինակի հաջողված կերպարներից է Արշամ Շահպարոնյանը։ Նա ունի գեղեցիկ արտաքին, հաճելի ձայն, դերասանական նկատելի ձիրք։ Շահպարոնյանը կենսուրախ է, նրբազգաց, որոշ իմաստով ֆրանտ է և առհասարակ հաճելի շատ հատկություններով օժտված։ Նրա տարերքը թատերական արվեստն է, ներծծված բոհեմական բոլոր հատկություններով։ Եվ ահա այդ մարդը բախտի բերմամբ Հայաստանի ազատագրմանը նախորդող խառը ժամանակաշրջանում դարձել է Երևան քաղաքի ռազմական պարետ։ Նա ինքն էլ է հասկանում իր դրության խեղկատակային լինելը, բայց պաշտոնը և, մանավանդ, սպայական համազգեստը միանալով նրա դերասանական ձիրքին, ապահովում են նրա հաջողությունները «բարձր» դասի և, մանավանդ, քնքուշ սեռի ներկայացուցիչների մոտ։ Շահպարոնյանի կերպարին մենք հաճախակի հանդիպում ենք երկու պատմավեպերում էլ։ Զանազան հանգամանքներում ու իրադարձություններում ներկայացնելով այդ դերասան-կոմենդանտ,— կոմեդիանտին, Ռաֆայել Աթայանը կարողանում է ավելի վառ պատկերացում տալ դաշնակցական կառավարական ապարատի ողորմելիության, նրա գաղափարների սին ու հակասական լինելու մասին։

Բայց հեղինակի երբեմն խայթող, իսկ երբեմն էլ բարեհոգի ծաղրը, նրա ժպիտը բոլորի վրա չէ, որ տարածվում է։ Այն դեպքերում, երբ խոսքը վերաբերում է հայ ժողովրդի մոլի թշնամի դաշնակցական պարտիայի ներկայացուցիչներին, հեղինակի գրիչը դառնում է անողոք, անխնա, ոչնչացնող։ Նա իր ներկապնակից կարողանում է գտնել համապատասխան գույներ։ Կարևորը նաև այն է, որ Աթայանի նկարագրած դաշնակցական գործիչներից շատերը մանեկեններ չեն, նրանք որոշ դեպքերում խորամանկ դիվանագետ, քինոտ, ստեղծված իրադրությունները հաջող կերպով իրենց գործին ծառայեցնող անձնավորություններ են։ Դրանով իսկ հեղինակն ընթերցողներին օգնում է լավ ըմբռնելու, թե որքան դժվարին էր Ղուկասյանի, Խանջյանի, Բուդաղյանի և մյուսների, Հայաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մղվող ազատագրական պայքարը։ Յուրահատուկ «գաղափարական» գործիչների կողքին հեղինակը տալիս է ավանտյուրիստների, բախտախնդիրների, մաուզերի և թալանի հերոսների նողկանք առաջացնող նկարագրեր։ Նա գովելի աշխատանք է կատարում նաև իրենց «գաղափարական» հորջորջող գործիչներին դիմակազերծ անելու, նրանց գործերի ավանտյուրիստական էությունը ընթերցողի համար ավելի ռելիեֆ դարձնելու համար։ Պատմավեպի այն էջերը, որոնք նվիրված են դաշնակցական կառավարությանն ու նրա գործիչներին, գրված են խիստ բանիմացությամբ ու գեղարվեստական շնչով։ Միշտ պահելով չափի զգացումը, հեղինակն այնպիսի իրադրություններ է նկարագրում, որտեղ բացահայտվում են այդ տխրահռչակ կառավարության անզորությունը, ողորմելիությունը, նրա ծախվածությունը ամերիկյան և այլ իմպերիալիստներին, նրա քաղաքականության վնասակարությունը և համոզիչ կերպով ցույց է տրվում, որ այդ կառավարությունը չի կարող հարատևել և դատապարտված է կործանման։

Ռ. Աթայանի երկու վեպերն էլ հագեցած են ինտերնացիոնալ գաղափարախոսությամբ։ Թե՛ երիտասարդ և թե տարիքավոր կոմունիստները ժողովուրդների բարեկամության ջատագովներ ու մարտիկներ են։ Նրանց մոտ Հայաստանի վերածնման հարցերը միշտ քննարկվում են հարևան ժողովուրդների ազատագրության խնդիրների հետ սերտորեն կապված։ Ղուկասի Թբիլիսի և Բաքու քաղաքներում անցկացրած օրերը նրա իսկական հեղափոխական մկրտության օրերն էին։ Վեպում անցկացված է այն ճշմարիտ միտքը, որ հայերը բնավ չսխալվեցին, իրենց փրկությունը կապելով հյուսիսի հետ, մեծ Լենինի ստեղծած պարտիայի հետ։

Եթե «Զարթոնք»-ում նոր կյանք մտնող պատանիները պայքարի են ելնում ցարական չինովնիկության ու ռեակցիոն մանկավարժների դեմ, ապա «Սպարտակ»-ում երիտասարդ հերոսների գլխավոր թշնամին դաշնակցական «պետականությունն» է։

Մենք տեսնում ենք խորամանկ դիվանագետ Խատիսովին, որից ավելի վստահելի հավատարմատար իմպերիալիստական գաղութարարները հազիվ թե կարող էին ցանկալ։ Վեպում նրան դիպուկ բնութագրում են գնդապետ Հասկելի գալստյան հետ առնչվող դեպքերը և Խատիսովի զրույցը իտալական կոսմոպոլիտ լրագրող Սեզարինիի հետ։

Դաշնակցական «մտավորականության» տիպիկ ներկայացուցիչն է Սոկրատ Տյուրոսյանը՝ սկզբում դպրոցի ուսուցիչ, հետո մինիստրի օգնական։ Ճղճիմ մի կարիերիստ է սա, որի բնավորության գծերի մեջ թերևս ամենից ավելի ցայտուն դրսևորվում է փարիսեցիությունը։ Նա չի խորշում նաև ստոր որոգայթներ լարելուց իրեն մրցակից պաշտոնյաներին շնորհազուրկ անելու, ասպարեզից հանելու համար։

Վեպում պատկերված է մաուզերիզմը՝ դաշնակցության պետական մեխանիզմի գլխավոր լծակը։ Փոնչի Խաչոն և խմբապետ Զարզանդն են այն ռեալ ուժը, որի վրա հենվում են Խատիսովներն ու Տյուրոսյանները իրենց իշխանությունը պահելու համար։ Տպավորիչ է ժողովրդի դատաստանը Փոնչի Խաչոյի հետ։

Յուրօրինակ տիպ է դաշնակցական երիտասարդության պարագլուխ Հրանտ Սանթուրյանը։ Կատաղի մի շովինիստ, նիցշեական մի մարդատյաց, նա մոլեգնության է հասնում իր եսասիրության ու անհատապաշտության մեջ։ «Զարթոնք»-ում և մանավանդ «Սպարտակ»-ում կարևոր տեղ են գրավում այն պատկերները, որտեղ արտացոլվում է Ղուկասի և Սանթուրյանի գաղափարական անհաշտ թշնամությունը։ Մի ընդհարման միջոցին Ղուկասի՝ իր նախկին դասընկերոջն ուղղած խոսքերը հնչում են իբրև սպանիչ դատավճիռ ո՛չ միայն Սանթուրյանի, այլև նրա մտայնության, տիրող պարտիայի քաղաքական վարքագծի դեմ։

Սրանք բոլորը՝ Տյուրոսյաններն ու Սանթուրյանները, Շահպարոնյաններն ու Խատիսովները անդեմ խրտվիլակներ չեն կամ թե բնավորության ինչ-որ առանձին մի հատկանիշ մարմնացնող «գաղափարատիպեր», ինչպես ներկայացնում են բացասական տիպերին որոշ վեպերում, դրանով իսկ թուլացնելով ու նսեմացնելով նաև նրանց հետ հակամարտության մեջ գտնվող դրական հերոսներին։ Սրանցից ամեն մեկը իր միջավայրի, իր շրջապատի ծնունդն է, իր վիպական կենսագրությամբ և բնավորության ուրույն գծերով օժտված մի անհատ, արտահայտվելու իրեն հատուկ եղանակով ու իր բառապաշարով։ Ընթերցողը հավատում է նրանց ճշմարտացիությանը։

Ահա թե ինչու, ոչ միայն պատմական իրադարձությունների գիտականորեն հիմնավոր բնութագրումով, այլև այս բոլոր գեղարվեստորեն համոզիչ կերպարներով «Սպարտակ» վեպը բարոյապես ու քաղաքականապես մերկացնում է դաշնակցությանն ու նրա «գործիչներին», ցույց տալիս նրանց կատարյալ սնանկությունն իրենց կարճատև տիրապետության շրջանում։

Ռ. Աթայանը չի թաքցնում իր հակակրանքն ու համակրանքը պատմավեպերում հանդես եկող հերոսների նկատմամբ։ Այդ հատկապես վերաբերում է այն մարդկանց, որոնց կյանքի ու գործի մասին հեղինակի հիշողության մեջ պահպանվել են անձնական հանդիպումներից ստացած տպավորությունները։ Այդպիսի անձանց հեղինակը նկարագրում է մեծ ոգևորությամբ։ Փոխվում է սովորաբար հանդարտ, էպիկական ընթացք ունեցող և ավելի պատմողականությանը հարող ոճը, ավելի պայծառ ու կարող է դառնում ստեղծագործական երևակայությունը, իսկ մտքերի ընթացքն՝ ավելի արագ ու սլացիկ։ Ահա, օրինակ, իր դեմոկրատական վերաբերմունքով սիրելի, մեծ ու փոքրին հարազատ դարձած «Ճարտարապետի» (աշխատավոր ժողովրդին նա հայտնի էր Ճարտարապետ կոչումով այն պատճառով, որ շատերը նրա անուն-ազգանունը չգիտեին) Թորոս Թորամանյանի՝ վեպում միայն մի անգամ հանդես եկող կերպարը։ Այն անշուշտ, Ռ. Աթայանի գլուխգործոցներից է։ Միայն երկու-երեք էջ կարդալով ընթերցողը ո՛չ միայն կարողանում է հասկանալ, խոր համակրանք տածել Թորամանյանի, այդ խիստ ինքնատիպ և մտքով ու գործով, զգացմունքներով հարուստ անձնավորության նկատմամբ, այլև պատկերացնել նրան իբրև կենդանի, շոշափելիության աստիճանի կոնկրետ մի անհատի։

Ընթերցողներին իր ցանկացած տրամադրությամբ համակելու համար հեղինակը երբեմն դիմում է լիրիկայի։ Իսկական լիրիկական շնչով է տրված անմոռաց Ստեփան Շահումյանի պատկերը։

Շահումյանը Ռ. Աթայանի պատմավեպում քիչ է հանդես գալիս, բայց ընթերցողը շարունակ զգում է նրա ներկայությունը, նրա ոգևորող, թևավորող, կազմակերպող շունչը, բոլոր այն լավ գործերում, որ կատարում են «Զարթոնք»-ի և «Սպարտակ»-ի պատանի հերոսները։

Վեպում Ռ. Աթայանին զբաղեցրել է այն ժամանակների հայ սովորող պատանեկության ու երիտասարդության մեծ մասի կուռքը հանդիսացող բանաստեղծ Վահան Տերյանի անձնավորությունը՝ տերյանականության պրոբլեմն ընդհանրապես վերցրած։ Կարևորը նաև այն է, որ նա ամեն կերպ ձգտել է մի ներդաշնակ միասնության մեջ ներկայացնել Տերյան անձնավորությունը և Տերյան բանաստեղծին (այստեղ մենք նկատի ունենք հայ մեծ քնարերգուի ստեղծագործական վաստակը)։ Այս մոմենտը շատ ուրախալի է որովհետև «տերյանականության» պրոբլեմի, և ժամանակի երիտասարդության գիտակցության և զգացմունքների վրա նրա ունեցած ազդեցության պատճառները շատ քիչ են ուսումնասիրված։ Նույնը վերաբերում է ներքին հակասություններով լի, ըստ էության շատ բարդ անձնավորության ու զարգացման ուժեղ բեկում ապրած Վ. Տերյանի մարդկային կերպարին։ Սա

# ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ԽՈՍՔԸ

## ԲԱՐՁՐ ՊԱՀԵԼ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԴՐՈՇԸ

ՀԿՊ Կենտկոմի տեսական-քաղաքական՝ «Լենինյան ուղիով» ամսագիրը անցել է երկար և մարտական ուղի: Նա ունի իր ուրույն տեղը մեր հանդեսների շարքում:

Ես կուզեի տեսնել «Լենինյան ուղիով»-ը ավելի նոր և բազմազան բովանդակությամբ, պահելով նրա հիմնական բնույթը որպես քաղաքական-տեսական ամսագրի:

Խուսափելով ծավալուն, հաճախ դժվարամարս լեզվով շարադրված ընդհանուր բնույթի հոդվածներից, խմբագրությունը պետք է ամենայն ուշադրությամբ հետևի մեր կյանքի բոլոր կարևոր երևույթներին, մեկնաբանելով այդ ամենը լենինյան պարտիականության ու գաղափարայնության բարձր մակարդակով:

Ես կցանկանայի, որ «Լենինյան ուղիով» ամսագրում լուսաբանվեն ո՛չ միայն սոցիալ-քաղաքական, այլև գիտության, արվեստի ու գրականության հարցերը:

Ցանկանում եմ, որ մեր հանդեսն ունենա գրախոսության ավելի լայն բաժին, որտեղ գրախոսվեն, բեկուզ և համառոտակի, ո՛չ միայն գիտական-քաղաքական աշխատությունները, այլև գեղարվեստական այն գործերը, որոնք արժանի են մեր ակտիվի ուշադրությանը:

Եվս մի ցանկություն. հարկավոր է ավելի շատ և ավելի լուրջ հոդվածներ տպագրել ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների լենինյան եղբայրության մասին:

Թող մեր հանդեսը դառնա ավելի բովանդակալից, իդեոլոգիական պայքարի ավելի առաջատար և անհաշտ մարտիկը:

*ԱՂ. ՎԱՐԴԱՆՅԱՆ*

*ՍՄԿՊ-ի անդամ 1917 թ.*

## ԼԱՅՆ ՏԵՂ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԻՆ

Կկամենայի «Լենինյան ուղիով» ամսագրում որքան հնարավոր է շատ նյութեր տպագրվեն տեսական հարցերի, հատկապես ՍՄԿՊ պատմության, մարքսիստական փիլիսոփայության, դաստիարակության հարցերի վերաբերյալ: Հարկավոր է նրա էջերում մեծ տեղ հատկացնել միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հարցերին, միջազգային կյանքի կարևոր իրադարձություններին, սիստեմատիկաբար տպագրել տեղեկատու նյութեր:

Պրոպագանդիստական աշխատանքի լավագույն փորձի մասին ամսագրում եղած հոդվածները հաճախ իրար շատ են նման, քիչ բան է ասվում պրոպագանդիստական աշխատանքում գործադրվող նոր ձևերի ու մեթոդների, գաղափարական հանձնաժողովների, մեթոդական խորհուրդների գործունեության մասին: Պրոպագանդիստներին օգնելու նպատակով անհրաժեշտ է պարբերաբար տպագրել մեթոդական նյութեր, ինչպես և փորձի փոխանակման կարգով լուսաբանել, օրինակ, թե ինչպես է պրոպագանդիստը նախապատրաստվում պարապմունքին, ինչպես է հաղորդում նյութը, ցույց տալ, թե պրոպագանդիստը, հատկապես, սեմինարավարը ինչպես են օգնում ունկնդիրներին բեման ինքնուրույն յուրացնելու գործում:

«Լենինյան ուղիով»-ի էջերում հազվադեպ են պարտիական կոմիտեների, քաղլուսկաբինետների գործունեությանը վերաբերող նյութերը. լավ կլինի, որ խմբագրությունը պատշաճ տեղ հատկացնի նրանց աշխատանքին, տարածի լավագույն կաբինետների դրական փորձը:



Եվ վերջապես, ցանկալի է, որ ամսագրի էջերում հաճախ հանդես գան սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարները, պարտիական կոմիտեների հրահանգիչները, տնտես-պարտկազմակերպիչները, պրոպագանդիստները:

*Թ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*

*Աշտարակի քաղլուս կաբինետի վարիչ*

## ԻՄ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Արդեն մի քանի տարի է, ինչ ստանում և կարդում եմ «Լենինյան ուղիով» ամսագիրը: Պետք է ասեմ, որ հատկապես վերջին երկու տարիներին ավելի հետաքրքրական ու բովանդակալից է դարձել այն: Ինձ հետաքրքրում են հատկապես այնտեղ տպագրված պարտիական էթիկային վերաբերող նյութերը: Ամսագրի միջոցով ես շատ բաներ եմ ուսումնասիրել: Դա ինձ օգնել է ավելի խոր ուսումնասիրելու ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, ՍՄԿՊ Ծրագիրը:

Հետաքրքրական են ամսագրում տպագրվող կոլտնտեսային շինարարությանը վերաբերող հոդվածները: Լուսաբանելով առաջավոր կոլտնտեսությունների փորձը, դրանով իսկ ամսագիրը մեծ օգնություն է ցույց տալիս կոլտնտեսային արտադրության բոլոր աշխատողներին:

Ես, որպես ընթերցող, կցանկանայի, որ ամսագրում ավելի հաճախ տպագրվեին այդպիսի հոդվածներ: Լավ կլիներ, որ այնտեղ նյութեր զետեղվեին կոմունիստ ֆերմայի վարիչների, բրիգադավարների և մյուսների աշխատանքի առաջավոր փորձի մասին: Առաջավոր փորձի խոր ու բազմակողմանի լուսաբանումով ամսագիրը կօգնի ետ մնացող տնտեսություններն առաջավորներին հասցնելու, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործին:

Ցանկալի է նաև, որ ամսագրի յուրաքանչյուր համարում մենք ծանոթանանք մեր օրերի հերոսների, տարբեր բնագավառներում աշխատող անվանի մարդկանց հետ:

Լավ կլինի, որ ամսագիրը հետագայում ավելի մեծ տեղ տա միջազգային բանվորական շարժման, եղբայրական կոմունիստական պարտիաների գործունեության և մեր երկրի ներքին ու արտաքին քաղաքականության հարցերի լուսաբանմանը:

Ս. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

*Արտաշատի շրջանի Այգեզարդի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի վարիչ:*

## ՕԳՆԵԼ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ

Ես միշտ կարդում եմ «Լենինյան ուղիով» ամսագիրը, որտեղ տպագրվում են հետաքրքիր նյութեր, հոդվածներ պարտիայի պատմության, նրա ընթացիկ քաղաքականության, մեր երկրում կոմունիզմի կառուցման, միջազգային կյանքի և շատ այլ հարցերի շուրջ: Իբրև պրոպագանդիստ ես շատ նյութեր եմ քաղում հատկապես պարտիայի պատմության, տնտեսագիտության, միջազգային դրության հարցերի վերաբերյալ: Սակայն ցանկանում եմ, որ ամսագիրն ավելի լայն պարզաբանի միջազգային կարևոր իրադարձությունները, հատկապես Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի երկրների աշխատավորների ռևոլյուցիոն պայքարի, ազատագրական շարժումների հետ առնչվող հարցերը, առանձին երկրների կոմպարտիաների գործունեությունը, նրանց աշխատանքի կազմակերպական ձևերը:

Կուզեի, որ ամսագիրը լուսաբաներ նաև մեր երկրի առաջավոր քաղաքների՝ Լենինգրադի, Մոսկվայի, Կիևի, ինչպես նաև մեր ռեսպուբլիկայի խոշոր պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձը, մի բան, որին մինչև օրս ամսագրի էջերում պատշաճ տեղ չի հատկացված:

*Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

*Երևանի կաբելի գործարանի պարտբյուրոյի իդեոլոգիական հանձնաժողովի անդամ*

ԳԻՆԸ 25Կ.

ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՎՏՈՄԵՔԵՆԱՆ ՏԱՆՈՒՄ Է 65 ՏՈՆՆԱ

*65 տոննա բեռնատարողություն ունե-
ցող ավտոգնացքը պատրաստել է Բելոռու-
սիայի ավտոգործարանը։ Այն կազմված
է «ԲԵԼԱԶ—548» քարշից և կիսակցիչից։
«Գնացքի» երկարությունը 12,5 մետր է,
բարձրությունը 4 մետր։ Բեռնավորված
ավտոգնացքի ընդհանուր քաշը 100 տոն-
նա է։ Շարժիչի կարողությունը՝ 525 ձիա-
ուժ է, առավելագույն արագությունը՝ ժա-
մում 40 կիլոմետր։*

## ՆՈՐ ՀԱՍՏՈՑ

*Հունգարական մեքենաշինարարներն
ստեղծել են նոր, ունիվերսալ կլորաղոր-
կիչ հաստոց։ Այն նախատեսված է գլա-
նաձև մակերեսների ներսն ու դուրսը մը-
շակելու, երկար՝ կիսաթեք և կարճ՝ զա-
ռիթափ գոգավոր մակերեսները փայլե-
ցնելու և ողորկելու համար։ Հաստոցը
հատուկ սնուցիչ սարքով հագեցնելու
դեպքում այն կարելի է վերածել ավտո-
մատի և միացնել հաստոցային ավտո-
մատ գծին։*

## «ՈՒՂՏԸ» ԱՆԻՎՆԵՐԻ ՎՐԱ

*Հայտնի է, որ ուղտի սապատները սնըն-
դանյութի յուրատեսակ պահեստներ են։
Ժամանակակից ավտոբուսների համար
ուղտասապատների դերը կատարում են
գազանման վառելիքի բալոնները, որոնք
ամրացված են մեքենաների տանիքների
վրա։ Պահեստային թեթև բալոնները ավ-
տոբուսներին հնարավորություն են տա-
լիս հաղթահարելու մեծ տարածություն-
ներ։*

## ՆՈՐ ԳՐԱՄԵՔԵՆԱ

*ԱՄՆ-ում ստեղծված է նոր տեսակի
գրամեքենա։ Ստեղների և շարժվող լծակ-
ների վրա ամրացված տառերի փոխարեն
մեքենան ունի տառագլխիկ՝ կիտրոնի մե-
ծության գնդիկ, որի վրա տեղավորված է
տպագրական 88 նիշ։ Ստեղներից յուրա-
քանչյուրը սեղմելիս գնդիկը այնպես է
պտտվում, որ ժապավենը թղթի վրա սեղ-
մում է համապատասխան տառով։ Դա
տեղի է ունենում հաղորդման մի ամբողջ
սիստեմի միջոցով, բայց, անկախ սարքի
բարդությունից, գլխիկը պտտվում է շատ
արագ՝ 0,06 վայրկյանում։ Դրա շնորհիվ
էլեկտրականությամբ գործի դրված մե-
քենայով կարելի է աշխատել ապշեցուցիչ
արագությամբ, մեկ րոպեում տպագրելով
մինչև 186 բառ։*

*Սովորական գրամեքենայով արագ աշ-
խատելիս, տառեր ունեցող լծակները
խառնվում են իրար, ստիպված անջատում
են մատիտով։ Նոր մեքենայի վրա գլխի-
կը հերթական տառը պահում է այնքան
ժամանակ մինչև մյուսի աշխատելը։ Տա-
ռանիշները մեքենագրելուն համընթաց
գլխիկը շարժվում է ձախից աջ։ Հասնելով
աջ եզրին՝ այն վերադառնում է ձախ
եզրը և մեկ՝ տող ցած։ Նոր գրամեքենայի
առավելություններից մեկն այն է, որ
հարկ չի լինում թուղթը ձեռքով շարժել։*

## ՉԱՐՄԱՆԱԼԻ ԱՎՏՈՄԵՔԵՆԱ

*Մեքենան սլանում է Լենինգրադի փո-
ղոցներով։ Արտաքինով այն չի տարբեր-
վում մյուսներից, բայց սլանում է շատ
արագ։ Բայց դուք ավելի կզարմանաք, երբ
բացեք մեքենայի շարժիչի կափարիչը և
այնտեղ չգտնեք գազարարարը* (карбю-
ратор)*։*

*Ինչպե՞ս է սնվում մեքենան։*

*Մեքենան աշխատում է կիսահաղորդիչ
էլեմենտներից և ռադիոդետալներից պատ-
րաստած գործիքի միջոցով, որի խնդիրն
է՝ մեկ ակնթարթում որոշել, թե տվյալ
պայմաններում ինչպիսին պետք է լինի
բենզինի լավագույն մատակարարումը մո-
տորին և ավտոմատ կերպով կարգավորել
այն։ Ճիշտ հաշվառված և ժամանակին
մատակարարված համապատասխան չա-
փի վառելիքը ավելացնում է շարժիչի կա-
րողությունը։*